Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7
ՀՈՒԼԻՍ
1990

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

## Բովանդակություն



ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԿՐՈՆԸ ԵՎ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ



## ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ԸՆԹԵՐՑՈՒՄՆԵՐ



## ԱՂԵՏԻ ԳՈՏԻ. ԳՈՐԾԵՐ ԵՎ ՀՈԳՍԵՐ



## ԺԱՄԱՆԱԿ ԵՎ ՄԱՐԴԻԿ





**Խմբագրության հասցեն՝**
**375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2**

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝**

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1990 թվականի հունիսի 29-ին կայացավ Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումի քննարկմանն էին դրված ԽՄԿԿ առաջիկա XXVIII համագումարի հարցերը:

Պլենումում զեկուցումով հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումում ելույթ ունեցան կուսակցության Չիտայի մարզկոմի առաջին քարտուղար Ն. Ի. Մալկովը, կուսակցության Իրկուտսկի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Պոտապովը, ԽՍՀՄ անտառային արդյունաբերության մինիստր Վ. Ի. Մելնիկովը, Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունում ԽՍՀՄ արտակարգ և լիազոր դեսպան Վ. Ի. Սիտնիկովը, ԽՍՀՄ հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեի նախագահ Մ. Ֆ. Նենաշևը, ԽՄԿԿ Կենտկոմի անդամ, անհատական թոշակառու Յա. Պ. Ռյաբովը, կուսակցության Մարիական մարզկոմի առաջին քարտուղար Գ. Ա. Պոսիբեևը, ԽՍՀՄ ներքին գործերի մինիստր Վ. Վ. Բակատինը, ՀԱՄԿԼԽ-ի նախագահ Գ. Ի. Յանաևը:

Պլենումը հավանություն տվեց «ԽՄԿԿ XXVIII համագումարին ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քաղաքական հաշվետվությունն ու կուսակցության խնդիրները» զեկուցման հիմնական դրույթներին և Կենտկոմի քաղբյուրոյին հանձնարարեց վերջնամշակել այն, հաշվի առնելով տեղի ունեցած քննարկումը: Պլենումը համագումարում զեկուցումով հանդես գալ հանձնարարեց ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովին:

Պլենումը հիմնականում հավանություն տվեց ԽՄԿԿ XXVIII համագումարի «Դեպի մարդասիրական, դեմոկրատական սոցիալիզմ» ծրագրային հայտարարության ու ԽՄԿԿ կանոնադրության նախագծերին և որոշում ընդունեց այդ փաստաթղթերը ներկայացնել համագումարի քննարկմանը:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Սրանով ԽՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1990 թվականի հունիսի 28-ին աշխատանքն սկսեց Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումի աշխատանքին մասնակցում են կուսակցության քաղկոմների ու շրջկոմների առաջին քարտուղարներ, խոշոր սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարներ, ժողովրդական դեպուտատների քաղաքային ու շրջանային խորհուրդների գործկոմների նախագահներ, ՀԿԿ Կենտկոմի բաժինների վարիչներ, մինիստրներ և Հայկական ԽՍՀ պետական կոմիտեների նախագահներ, որոնք չեն մտնում ՀԿԿ Կենտկոմի կազմի մեջ: Պլենումի էին հրավիրված նաև ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակների ընտրությունների անցկացման հանրապետական ընտրական հանձնաժողովի անդամները, Հայաստանի կոմկուսից ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակները, Հայաստանի կոմկուսի ծրագրի նախագծի մշակման հանձնաժողովի անդամները, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղարները, գիտնականներ, մասսայական ինֆորմացիայի միջոցների ներկայացուցիչներ:

Պլենումը քննարկեց «Հայաստանի կոմունիստական կուսակցության XXIX համագումարի առթիվ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլատֆորմի նախագծի մասին» հարցը: Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Մ. Մովսիսյանը:

Պլենումի մասնակիցները առաջարկեցին զեկուցումը հրապարակել աշխատավորական կոլեկտիվներում ու կուսակցական կազմակերպություններում լայն քննարկման համար, ընդհատել պլենումի աշխատանքը և այն շարունակել ԽՄԿԿ XXVIII համագումարից հետո: Կազմվեց հանրապետության կոմկուսի համագումարի առթիվ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլատֆորմի նախագծի վերջնամշակման աշխատանքային խումբ:

Լեռնային Ղարաբաղում իրադրությունը սրվելու կապակցությամբ պլենումը որոշում ընդունեց դիմել ԽՄԿԿ XXVIII համագումարին:

Պլենումում հանդես եկան ՀԿԿ Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար Ռ. Ա. Ալեքսանյանը, ժողովրդական դեպուտատների Երևանի քաղխորհրդի գործկոմի նախագահի պաշտոնակատար Ա. Մ. Գեղամյանը, Հայկական ԽՍՀ-ում «Լիտերատուրնայա գազետա» թերթի սեփական թղթակից Զ. Հ. Բալայանը, ՀԿԿ Երևանի Սպանդարյանի շրջկոմի առաջին քարտուղար Վ. Գ. Պետրոսյանը, սփյուռքահայության հետ մշակութային կապի կոմիտեի նախագահ Կ. Լ. Դալլաքյանը:

Պլենումն ի գիտություն ընդունեց Հայաստանի կոմկուսից ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակների ընտրությունների արդյունքների մասին ինֆորմացիան, որով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար, Հանրապետական ընտրական հանձնաժողովի նախագահ Թ. Ս. Դիլանյանը: Հայաստանի կոմկուսից ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակների ցուցակը հրապարակվել է:

ԽՄԿԿ XXVIII համագումարից հետո Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը կշարունակի աշխատանքը:

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԱՏՖՈՐՄԻ ՆԱԽԱԳԾԻ ՄԱՍԻՆ

## ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Մ. ՄՈՎՍԻՍՅԱՆԻ զեկուցումը ՀԿԿ Կենտկոմի պլենումում, 1990 թ. հունիսի 28-ին

Ընկերներ:

Ձեր քննարկմանն է ներկայացվում Հայաստանի կոմկուսի պլատֆորմի նախագիծը: Կարծում ենք, որ քննարկումը կանցնի երկու փուլով: Նախ, մտքերի ակտիվ փոխանակման պայմաններում անհրաժեշտ է որոշել, թե XXVIII համագումարի՝ Հայաստանից ընտրված պատգամավորները սկզբունքային ինչ դիրքորոշում պետք է ունենան: Եվ ապա, հաշվի առնելով ԽՄԿԿ համագումարի արդյունքները, պլատֆորմի նախագիծը լրամշակել, հարստացնել գործնական դրույթներով և ընդունել որպես Հայաստանի կոմկուսի գործունեության հիմնարար փաստաթուղթ: Պլատֆորմի սկզբունքային հարցադրումները հետագայում բնականաբար իրենց արտացոլումը կգտնեն Հայաստանի կոմկուսի ծրագրի նախագծում, որի կազմելուն ձեռնամուխ է եղել մեր նախորդ պլենումում ընտրված հանձնաժողովը:

Պլենումի քննարկմանը ներկայացված պլատֆորմի նախագծի նախապատրաստմանը մասնակցել են Կենտկոմի հանձնաժողովները, սկզբնական խոշոր կուսկազմակերպությունների քարտուղարների մի մեծ խումբ, կուսակցական, խորհրդային աշխատողներ, առանձին կոմունիստներ: Հաշվի են առնվել Կենտրոնական կոմիտեում ստացվող և մամուլում հրապարակվող դիտողություններն ու առաջարկությունները: Սակայն պետք է նշեմ, որ փաստաթուղթը լրջորեն պետք է վերամշակվի:

Որոշում ընդունելով պլատֆորմի նախագծի մշակման մասին, մենք հաշվի ենք առել ոչ միայն երկրում և կուսակցության մեջ տիրող ընդհանուր մթնոլորտը, այլև, առաջին հերթին, հանրապետության քաղաքական կյանքի արմատական տեղաշարժերը: Այն թելադրված է նաև մեզանում ստեղծված ճգնաժամային իրավիճակով, որն ընդգրկել է մեր կյանքի բոլոր կողմերը:

Վերաիմաստավորելով անցյալը, սթափ մտածելով մեր հայրենիքի ճակատագրի, նրա վաղվա օրվա մասին, մարդիկ սուր են ընկալում ռեգիոնում տիրող իրադրության անկայունությունը, հայրենակիցների վիճակը Լեռնային Ղարաբաղում, ապարտեիդի ու արտաքսման քաղաքականությունը հարևան հանրապետությունում, էկոնոմիկայի ու էկոլոգիայի ասպարեզում տիրող ճգնաժամը, ավերիչ երկրաշարժի հետևանքների վերացման հուսահատեցնող տեմպերը, փախստականների պրոբլեմների լուծման ձգձգումը:

Հանրապետական կոմունիստական կուսակցությունը սկզբունքային նշանակություն է տալիս ընթացիկ մոմենտի շիտակ ու ճշմարտացի գնահատմանը, ստեղծված դրամատիկ իրավիճակից դուրս գալու մեխանիզմների մշակմանը:

Ելակետային նշանակություն ունի այն իրողության գիտակցումը, որ առանց կուսակցության ու կուսակցական կյանքի խոր և արմատական ռեֆորմի վաղվա խնդիրների լուծումն անհնարին է: Ցավոք, ՀԿԿ Կենտկոմը, նրա բյուրոն, մեր կուսակցական կազմակերպությունները շատ են ուշացել: Մարդիկ հոգնել են շարունակաբար տրվող խոստումներից, անպտուղ ճառերից, չիրականացվող սոցիալական սպասելիքներից, անկայուն իրավիճակից, անիշխանության դրսևորումներից, կաշառքի անհիմն վճիռներից, հաճախ նաև օրենքի և օրինականության խախտումներից: Դա այլևս հանդուրժել չի կարելի:

Իրողությունների ու պրոցեսների վերլուծությունը վկայում է, որ երկրում տեղի ունեցող դեմոկրատական վերափոխումների հակասական ընթացքն ավելի սուր ու դրամատիկ դրսևորումներ ունի մեզանում: Դրա պատճառները խիստ տարբեր են ու մեզ հայտնի: Դրանց շարքում պակաս ժխտական դեր չի խաղում այն հանգամանքը, որ կուսակցական ու պետական ղեկավարման գրեթե բոլոր մակարդակներում խոր արմատներ են ձգել պահպանողականությունն ու բյուրոկրատիզմը: Ամենուր հապաղելը, երեկվա չափանիշներով վճիռներ կայացնելը, կիսատ-պռատ լուծումները, անհամարձակությունն ու ծրագրային արմատական մոտեցումների բացակայությունը տիրապետող են դարձել կառավարման բոլոր օղակներում, կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ: Անհրաժեշտ է վերջնականապես սթափվել, դուրս գալ այդ իրավիճակից, այլապես կկորցնենք հանրապետական կուսակցական կազմակերպության միասնականությունը պահպանելու, նրա խաթարված հեղինակությունը վերականգնելու հնարավորությունը:

Իհարկե, պլատֆորմի նախագիծը մշակելիս մենք չպետք է կուրորեն պատճենենք այն կոնցեպցիաներն ու լուծումները, որոնք շարադրված են ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծում կամ էլ ընդունված են այլ ռեգիոններում: Ընդհակառակը, խստագույն կշռադատվածությամբ, հաշվի առնելով մեր դարավոր անցյալի և արդիականության դասերը, անհրաժեշտ է հստակ պատասխան տալ պատմության այս վճռորոշ շրջափուլում հայ ժողովրդի առջև ծառացած հարցերին, մշակել այսօրվա և ապագա գործունեության կայուն կողմնորոշիչներ:

Ամենից առաջ անհրաժեշտ է հստակ կողմնորոշվել, թե ինչպիսին պետք է լինի կուսակցության տեղն ու դերը մեր հանրապետության հասարակական-քաղաքական կյանքում: Ո՞րն է լինելու նրա քաղաքական գործունեության ծրագրային նպատակը: Ինչպիսի՞ տեսական հիմքի վրա է խարսխվելու կուսակցության հետագա գործունեությունը, ինչպե՞ս պետք է ներդաշնակվեն՝ համամարդկային ու ազգային շահերը: Ի՞նչ ճանապարհով պետք է իրականացվի կուսակցական ու պետական կառուցվածքների տարանջատումը: Որո՞նք են ներկուսակցական դեմոկրատիայի խորացման հիմնական սկզբունքները, ուղղություններն ու ձևերը:

Այս հարցադրումների նկատմամբ մոտեցումները խիստ տարբեր են ու հաճախ նաև իրարամերժ: Մի կողմից դրսևորվում է պահպանողական-դոգմատիկ վերաբերմունք տեղի ունեցող հասարակական-քաղաքական պրոցեսների նկատմամբ և արմատական վերափոխումների կուրսը դիտվում է որպես հրաժարում սոցիալիզմի հիմնարար արժեքներից, փորձ է արվում ամեն գնով վերակենդանացնել իր դարն ապրած տոտալիտարիզմը և քաղաքական ներազդման մենաշնորհը: Մյուս կողմից՝ ակտիվանում են կուսակցությունը ապամոնտաժելու-վերացնելու միտումները, առաջադրվում են ընդհանրապես սոցիալիզմի ժխտման ու մերժման կարգախոսներ, փորձեր են արվում պատմության արխիվը նետել կոմունիստական գաղափարախոսությունը:

Երկու դեպքում էլ ակնհայտ է ծայրահեղությունը, մեր հասարակարգի զարգացման օբյեկտիվ առանձնահատկությունների, ռեալ իրավիճակի, մարդկանց քաղաքական, ազգային, սոցիալական սպասելիքների ու ձգտումների համակողմանի և անկողմնակալ գնահատման բացակայությունը:

Կոմունիստների գերակշռող մեծամասնությունը, արտահայտելով լայն զանգվածների շահերը, կողմնակից է մեր հասարակական կյանքի, այդ թվում նաև հենց կուսակցության ակտիվ դեմոկրատական վերափոխումներին, հույժ անհրաժեշտ է համարում գործնական բազմակարծության պայմաններում ծնված սոցիալ-քաղաքական կենսունակ ուժերի նպատակամղումը մեր կյանքի բոլոր կողմերն ընդգրկած խոր ճգնաժամային երևույթների հաղթահարմանը:

Երկընտրանքն այլևս անհնարին է: Կուսակցությունը կամ պետք է բռնի գործուն վերափոխումների ուղին՝ նայելով վաղվա օրվան, կամ հեռանա պատմության թատերաբեմից: Այսօր, նոր իրավիճակում, կուսակցությունը ոչ միայն պետք է ամեն կերպ նպաստի մեր կյանքի արմատական վերափոխմանը, այլև լինի պատմականորեն բախտորոշ այդ պրոցեսի գործուն կրողն ու իրականացնող գլխավոր քաղաքական ուժը:

Մենք այն կարծիքին ենք, որ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը պետք է դառնա ինքնուրույն կուսակցություն՝ իր ծրագրով ու կանոնադրությամբ, գործի հանրապետության սահմանադրության շրջանակներում, հրաժարվի քաղաքական մենաշնորհից, կառավարման իրեն ոչ բնորոշ ֆունկցիաներից, իր քաղաքա-



կան նպատակների իրականացմանը ձգտի բազմակուսակցականության պայմաններում, ամենագործուն կերպով դիմի ներկուսակցական կյանքի խոր դեմոկրատացմանը:

Ոչ միայն կոմունիստական կուսակցության, այլև երկրի բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի համար վճռորոշ նշանակություն ունի Խորհրդային Միության իրավական հիմքը կազմող նոր դաշնակցային պայմանագրի կազմումն ու ընդունումը: Խորհրդային Հայաստանը պետք է ստորագրի այնպիսի պայմանագիր, որն ապահովի իր լիարժեք սուվերենությունն ու անկախությունը:

Մեր սկզբունքային ելակետը պետք է լինի սուվերենության շրջանակներում հանրապետության շահերի առաջնայնության ապահովումը: Հարցը դրվում է այսպես. ոչ թե Միությունը պետք է հանրապետություններին անկախության իրավունք տա, այլ ինքնուրույն և անկախ պետականություն հանդիսացող հանրապետությունները դաշնակցային փոխհամաձայնությամբ որոշ իրավունքներ կամովին հանձնեն Միությանը՝ իրենց ընդհանուր շահերից ելնելով: Ուստի միայն այդ ֆունկցիաներն իրականացնելիս գերապատվություն կարող են ունենալ կենտրոնի ընդունած ընդհանուր միութենական օրենքները: Մնացած բոլոր պարագաներում հանրապետության օրենքները պետք է գերակայելի ու անբեկանելի լինեն, իսկ ԽՍՀՄ օրենքներն ընդունելի՝ միայն Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի վավերացնելուց հետո:

Նման իրավիճակում Հայաստանի կոմունիստական կուսակցության և Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության ու նրա կենտրոնական մարմինների փոխհարաբերությունները նույնպես պետք է ձևավորվեն սկզբունքորեն նոր հիմքի վրա: Հայաստանի կոմկուսն այլևս չի կարող դիտվել իբրև սոսկ հանրապետական կուսակցական կազմակերպություն՝ մարզային կազմակերպության իրավունքներով, ինչպիսին որ գործնականում եղել է:

Անհնարին է վերացնել տոտալիտար կառավարման ամբողջ կառույցը, առանց այն արմատախիլ անելու կուսակցությունից: Կուսակցությունը, նրա կազմակերպական սկզբունքները ավելի մեծ անհրաժեշտություն ունեն արմատական դեմոկրատական վերափոխումների՝ հաշվի առնելով երկրում պետական-քաղաքական, սոցիալ-տնտեսական, ազգային, հասարակական իրավիճակների փոփոխության միտումները:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը լինելու է ոչ թե ԽՄԿԿ-ի ներկայացուցիչը հանրապետությունում, այլ Հայաստանի աշխատավոր ժողովրդի իղձերի ու ձգտումների արտահայտիչը: Այն, իբրև Խորհրդային Հայաստանի քաղաքական կուսակցություն, այնքանով պարտավորված կլինի կատարել ԽՄԿԿ օրինական ղեկավար մարմինների որոշումները, որքանով դրանք կհամապատասխանեն հայ ժողովրդի արմատական շահերին ու նրա սուվերեն իրավունքներին:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը անկախ ու ինքնուրույն քաղաքականություն է վարելու սփյուռքի քաղաքական կուսակցությունների ու հոսանքների հետ, իր մոտեցումներն է մշակելու երկրի ու այլ հանրապետությունների տարբեր կուսակցությունների ու քաղաքական հոսանքների հետ փոխհարաբերություններում՝ հաշվի առնելով մեր ազգային շահերը, խորհրդային երկրի ժողովուրդների ինտերնացիոնալ ու մարդասիրական ավանդույթները:

Կրկնում եմ, մեր նպատակը պետք է լինի ստեղծել ինքնուրույն ծրագիր ու կանոնադրություն ունեցող, գործուն քաղաքական դիրքորոշմամբ Հայաստանի կոմունիստական միաձույլ կուսակցություն, որն ի զորու լինի վճռական դեր խաղալու հանրապետության վերածնման խնդիրների լուծման գործում:

Կյանքի օբյեկտիվ թելադրանքն այն է, որպեսզի Հայաստանի կոմկուսը դառնա ժամանակակից, կարող, ռեալ հասարակական հեղինակություն ունեցող կուսակցություն, սոցիալական առաջընթացի ու ակտիվ վերափոխումների կուսակցություն: Մեր կուսակցությունը, արտահայտելով հայ ժողովրդի արմատական շահերը, պայքարելով նրա նպատակների կենսագործման համար, պետք է հենվի համամարդկային արժեքների և համաշխարհային քաղաքակրթության նվաճումների վրա՝ համաժողովրդական արժեքներն ու շահերը վեր դասելով դասակարգային արժեքներից ու շահերից: Նրան խորթ են ազգայնամոլությունը, շովինիզմը, ռասիզմը, հետադիմական գաղափարախոսության այլ դրսևորումները:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը՝ իբրև հանրապետության կամավոր միավորված քաղաքացիների ինքնուրույն քաղաքական կազմակերպություն, իր առջև նպատակ է դնում մարդասիրական, դեմոկրատական հասարակության կա-

ռուցումը՝ ապահովելով մարդու, ազգի, ժողովրդի անբռնադատելի, միջազգային նորմերով ճանաչված իրավունքները:

Կոմկուսը հաստատակամորեն կվարի հանրապետությունում և սփյուռքում մեր ժողովրդի իրական վերածնունդն ապահովող բոլոր առողջ ուժերի համախմբման քաղաքականություն՝ պաշտպանելով նրա շահերը, պատիվն ու արժանապատվությունը: Մենք այդ համագործակցության մեջ ենք տեսնում հայ ժողովրդի քաղաքական, սոցիալ-տնտեսական, ազգային-մշակութային անհետաձգելի և հեռանկարային պրոբլեմների լուծման, նրա արմատական շահերի պաշտպանության արդյունավետ ուղին:

Իր նպատակների իրականացման ճանապարհին Հայաստանի կոմկուսը կձգտի տիրապետել քաղաքական ղեկավարման ժամանակակից ձևերին՝ անդառնալիորեն հրաժարվելով հրամայական-բյուրոկրատական, վարչարարական աշխատաոճից: Վճռականապես պետք է հրաժարվել քաղաքական մենաշնորհից, պետական ու տընտեսական մարմինների ֆունկցիաները կրելուց, կադրային քաղաքականության մենաշնորհից ու ձևական-նոմենկլատուրային պրակտիկայից: Հարկավոր է այնպես վերակառուցել ներկուսակցական հարաբերությունները, որ կոմունիստները, սկզբնական կազմակերպությունները հնարավորություն ստանան ոչ թե խոսքով, այլ գործով ազդելու ինչպես քաղաքականության ձևավորման, այնպես էլ կուսակցական ղեկավար մարմինների ընտրության վրա: Կուսակցությունը մշտապես կձգտի, որ խորհուրդները դառնան լիիրավ ժողովրդավարական մարմիններ, կարողանան ստանձնել հասարակության կառավարման նոր ֆունկցիաները: Սահմանադրության հիման վրա, ծրագրային խնդիրների իրականացման միջոցով նա կպայքարի դեպուտատական ամեն մի մանդատի համար:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը ղեկավար մարմինների և սկզբնական կազմակերպությունների փոխհարաբերություններում եղած ձևախեղումների հաղթահարման նպատակով կհրաժարվի դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի այնպիսի բացասական կողմերից, ինչպիսիք են ծայրահեղ կանոնակարգվածությունը, աստիճանավորումը, ներփակվածությունը, միահեծան որոշումներ ընդունելը, կոմունիստների օտարումը որոշումների ընդունման ու դրանց վերահսկողության գործընթացից: Կոնկրետ քայլեր կարվեն, հստակ մեխանիզմներ կմշակվեն կուսակցության ստրատեգիայի և քաղաքականության մշակման գործում ներգրավելու կուսակցական և աշխատավորական լայն զանգվածներին: Ընդ որում, կապահովվեն որոշումների ընդունման հրապարակայնությունը, այլընտրականությունը, կճանաչվեն փոքրամասնության իրավունքները:

Պայքարելով կուսակցական կյանքի լայն դեմոկրատացման համար, Հայաստանի կոմկուսը միաժամանակ անհրաժեշտ է համարում, մի կողմից, իր շարքերի անդարտությունն ու միասնականությունը, հրաժարումը ամեն տեսակ արտոնությունից, կուսակցական կարգապահության ամրապնդումը, մյուս կողմից՝ կուսակցական ընկերականության հաստատումը:

Հանրապետության կոմկուսի համար այսօր ամենավտանգավորը նրա շարքերի խարխլումն է, տարանջատման միտումների խորացումը: Առանձին ընկերներ, սկզբնական կուսակցական կազմակերպություններ իրավացիորեն գտնում են, որ մեզանում դեմոկրատացման պրոցեսները դանդաղ են ընթանում, կուսակցությունը, Կենտրոնական կոմիտեն, նրա բյուրոն համարձակ ու գործնական քայլերի չեն դիմում ճգնաժամից դուրս գալու համար: Իրոք, հապաղումն ու անվճռականությունը առկա են, դրանք ունեն իրենց պատմությունն ու պատճառները: Սակայն դա չի նշանակում, որ հանրապետության ու մեր ժողովրդի համար այս բախտորոշ իրավիճակում տուրք պետք է տալ անջատողականությանը, ջլատել ուժերը, առաջնորդվել սեփական ամբիցիաներով: Այդ բարդությունները համատեղ ուժերով պետք է հաղթահարել:

Ավելին, այսօր առավել կարևոր է սկզբունքային դիրքերի վրա քաղաքացիական ու ազգային համաձայնության խնդիրը, քան միջկուսակցական ու ներկուսակցական անտեղի բանավեճերը, որոնք ավելի են սրում իրավիճակը, հեռացնում հիմնական խնդիրների լուծումից: Հակասությունների խորացումը և առճակատումը ունակ են հանգեցնելու միայն մեկ բանի, դիկտատուրան ծլարձակում է հենց այդ հողի մեջ:

Այժմ չափազանց կարևոր է պահպանել կուսակցության միասնությունը, թույլ չտալ նրա պառակտումը: Բայց չի կարելի թույլ տալ նաև, որ միասնության քողի



տակ պահպանողականությունը, տոտալիտարիզմն ու կամայականությունը նորից շարունակեն գոյատևել:

Վերակառուցումը, հասարակական-քաղաքական կյանքի ակտիվացումը էականորեն փոխել են հանրապետության կոմկուսի, ամբողջ հասարակության դեմքը: Պարզորոշ նկատվում է, որ մեզանում առկա են իրարամերժ հայացքներ և դիրքորոշումներ: Մեր խնդիրն է ապահովել քաղաքական հաշվեկշիռը, գտնել ոչ միայն մեր կուսակցական շարքերի, այլև հասարակության բոլոր առողջ ուժերի համախմբման, նրանց ջանքերի միավորման քաղաքական լծակներ: Սա է այսօր Հայաստանի կոմկուսի պատմական առաքելությունը, որը նրա վրա է դրել մեր բարդ, հակասական, բախտորոշ ժամանակը:

Արդեն իրողություն դարձած բազմակուսակցականության պայմաններում ապագան կպատկանի այն կուսակցությանը, որը ոչ միայն կարգախոսներով, այլև սոցիալ-տնտեսական զարգացման խորապես հիմնավորված ծրագրով, իր քաղաքականությամբ, գործերով ու համոզմունքներով միշտ ժողովրդի հետ է, նվիրված ծառայում է նրան, արտահայտում է նրա կամքն ու շահերը: Մենք համարձակորեն պետք է դատապարտենք կոմկուսի անցած տասնամյակների սխալները, զանգվածային բռնություններն ու անօրինականությունները, որոնք խոր դժգոհություն են առաջ բերել աշխատավորության լայն շրջաններում: Մենք գործով պետք է հավաստենք, որ հետադարձ չի կարող տեղի ունենալ, որ վճռականորեն կպայքարենք անօրինականության բոլոր դրսևորումների դեմ և սատար կկանգնենք ժողովրդի շահերին: Հայաստանի կոմկուսը միայն այս ճանապարհով կարող է հավաստել քաղաքական կուսակցության իր դերը և կապակցող օղակ դառնալ ազգային-քաղաքական բոլոր ուժերի ու հոսանքների համախմբման համար: Կոմկուսը եռանդուն կերպով և օրգանապես պետք է ընդգրկվի ժողովրդի քաղաքականացման գործընթացին և ազգային շարժման ղեկավարմանն ու զարգացմանը: Ներկա քաղաքական պայմաններում այլ ուղի և մոտեցումներ գոյություն չունեն, բացի առողջ ուժերի լուրջ, արդյունավետ համագործակցությունից:

Հայաստանի կոմկուսը պետք է դառնա իրոք դեմոկրատական կուսակցություն, հենվի աշխատավորական ու կուսակցական զանգվածների, կուսակցական ընկերականության ու գիտակցական կարգապահության վրա: Միաժամանակ, սեփական կարծիքը հետապնդելու փոքրամասնության իրավունքի կանոնադրական ապահովման հետ մեկտեղ, անընդունելի է քաղաքական տարբեր ֆրակցիաների գոյությունը մեր կուսակցության ներսում, որը բազմակուսակցականության պայմաններում միայն կխարխլի կուսակցությունը, կհասցնի նրա պառակտմանը: Բայց մենք տրամաբանական ենք համարում տարբեր պլատֆորմների և մոտեցումների հարցալից քննարկումն ու, ինչո՞ւ չէ, դրանց ճշմարիտ դրույթներով մեր մոտեցումների սրբագրումը:

Ընկերնե՛ր:

Այսօր առանցքային խնդիր է հանրապետության կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական գործունեության նոր համադրույթի մշակումն ու կենսագործումը: Արմատական բարեփոխումների համար հարկավոր է հեղափոխական-դեմոկրատական, հնացած դոգմաներից ու կարծրացած սխեմաներից, իրական կյանքի երևույթների միակողմանի, սխոլաստիկ ու հայեցողական մեկնաբանություններից զերծ գաղափարախոսություն, որը հենվելով համամարդկային արժեքների, մարդկային հասարակության և մասնավորապես մեր երկրի զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների ճանաչման վրա, ներկայիս բազմակարծության պայմաններում հնարավորություն տա դիմելու լայն երկխոսության հասարակական տարբեր ուժերի հետ, իր մարդասիրությամբ ու ճշմարտացիությամբ համախմբի հասարակության անդամներին:

Մարքսիզմ-լենինիզմը դոգմաների ժողովածու չէ, ինչպես համարվել է տարիներ շարունակ: Ժամանակը թարմացված տեսափիլիսոփայական ընդհանրացում ու մոտեցումներ է պահանջում: Այսօր խիստ անհրաժեշտ է սոցիալիզմի և կոմունիստական հեռանկարի ժամանակակից կոնցեպցիայի մշակումը: Հայաստանի կոմկուսը պետք է ակտիվորեն արձագանքի կյանքի դինամիկ պրոցեսներին, միակ ու հավետ ճշմարտացի տեսության տնօրինման հավակնությունը չունենա: Մարդկանց հարկավոր է հաց, տուն, աշխատանք, ապահով կյանք և ոչ թե «երջանիկ ապագայի» հերթական ծրագիր: Մարդկանց հարկավոր է ազգային ազատ գոյավիճակ և ոչ թե վարդագույն ճառեր՝ ժողովուրդների եղբայրության մասին:

Բռնելով դեմոկրատական վերափոխումների ուղին, Հայաստանի կոմկուսը իր գաղափարախոսությամբ առաջին հերթին պետք է արտահայտի մեր համազգային շահերը՝ ընդգրկելով հայ ժողովրդի հոգևոր կյանքի բոլոր կողմերը, համամարդկայինի հետ բնականորեն միահյուսված նրա բարոյական արժեքները: Մեր կուսակցությունը պետք է ունենա իր ազգային հստակ նկարագիրը և դառնա ազգային վերածնության գաղափարների կրողը:

Իհարկե, մեր ապրած ժամանակն ինքնին հակասական է: Զորանոցային սոցիալիզմի կապանքներն արձակելուն ձեռնամուխ եղած երկիրն ապրնանում է տասնամյակների նիրհից, ժողովուրդն աստիճանաբար ուղղում է կորացած մեջքը՝ հայացքը հառած համամարդկային արժեքներին: Բայց այդ պրոցեսը երբեմն հիվանդագին դրսևորումներ է ստանում, մի իրողություն, որը հատուկ է բոլոր հեղափոխություններին:

Ամբողջ երկրին բնորոշ սոցիալ-քաղաքական խմորումները, բեկվելով մեր հանրապետության առավել բարդ «ներքին» հոգսերին ու ցավերին, ստեղծել են խնդիրների մի խճճված կծիկ, որը քանդելու համար վիթխարի ջանքեր են հարկավոր: Վերջին տարիներս յուրաքանչյուր հայ մարդու մտքում և սրտում փոխնեիփոխ գոյատևեցին ազգային զարթոնքն ու հուսախաբությունը, ժողովրդական ոգու թռիչքն ու հիասթափությունը, լավատեսությունն ու հոռետեսությունը: Վայրիվերումների այդ շղթան շարունակվում է մինչև օրս:

Ամենացավագիններից է շարունակում մնալ ազգային հարցը: Հայաստանի կոմկուսի Կենտկոմը անհետաձգելի խնդիր է համարում կուսակցության ազգային քաղաքականության գործնական նորացումը, ազգերի և ազգությունների ազատ ինքնորոշման իրավունքի իրացման մեխանիզմի կատարելագործումն ու կենսագործումը: Դրա մեջ ենք տեսնում նաև արցախյան խնդրի լուծման բանալին:

Կասկած լինել չի կարող, որ Հայաստանի կոմկուսը, մեր ամբողջ ժողովուրդը, մերժելով Արցախի պրոբլեմի կամայական ամեն մի մեկնաբանություն և չարամիտ խեղաթյուրում, մինչև վերջ կպաշտպանեն արցախահայության ազգային ինքնորոշման արդարացի իրավունքը:

Նորից ու նորից փորձ է արվում խեղաթյուրել արցախյան պրոբլեմի բուն էությունը, այն հանգեցնել տարածքային կամ էթնիկական վեճի: Թե կենտրոնում և թե հարևան հանրապետությունում տարածում գտած նման մեկնաբանությունները հարցի լուծումը տանում են փակուղի: Մենք խորապես համոզված ենք, որ ռեգիոնում իրավիճակի կայունացման միակ ուղին ղարաբաղյան խնդրի արդարացի լուծումն է, մարդու իրավունքների հարգումն ու պաշտպանումը: Դա պետք է հասկանան բոլոր մակարդակներում և այն անհրաժեշտ է ոչ միայն ռեգիոնի, այլև ամբողջ երկրի համար:

Ցավոք, դեպքերի զարգացումը այլ ընթացք և տրամաբանություն է ստացել:

Մեր ժողովուրդը տեսնում է, որ ազգերի ազատ ինքնորոշման իրավունքը, որը մարդկության փորձով նվաճված արժեք է, դադարում է այդպիսին լինել, երբ խոսքը վերաբերում է արցախահայության արդար ձգտումներին: Մենք ականատես եղանք, թե ինչպես խորհրդային երկրում, նրա գոյության ութերորդ տասնամյակում, մարդկանց կարելի է անպատիժ խոշտանգել, ոչնչացնել ըստ ազգային պատկանելության, բռնագաղթի ենթարկել, շրջափակել մի ամբողջ հանրապետություն և ինքնավար մարզ, քանդել սրբազան համարվող ԽՍՀՄ պետական սահմանը և այդ ամենով հանդերձ մնալ անպատիժ, չստանալ համարժեք գնահատական և խթանել կանխամտածված գործողությունները, ընդհուպ վիրավորելով մեր ժողովրդի ազգային արժանապատվությունը:

Մարդու իրավունքները բացարձակ ոտնահարելու առումով այսօր Ղարաբաղում ավելի վատ վիճակ է ստեղծվել, քան մինչև 1988 թվականի փետրվարը: Ծրագրված և բացեիբաց ամեն գնով վարվում է մարզի քաղաքական ու տնտեսական մեկուսացման, ինքնավարության վերացման և բնիկ ժողովրդի բռնագաղթի քաղաքականություն: Դրա հավաստումն են մարզի շրջափակումը և ժողովրդագրական փոփոխությունները, ադրբեջանական գյուղերում լայն թափով ծավալվող շինարարական և վերակառուցողական աշխատանքները, վարչատարածքային փոփոխությունները և մի շարք ուրիշ հակասահմանադրական գործողություններ:

Ադրբեջանի և կենտրոնական լրատվության մի շարք միջոցների ջանքերով անհիմն ձևով հասարակական թյուր կարծիք է ստեղծվում մեր ժողովրդի շուրջ, շարունակվում է պիտակներ կպցնելու քաղաքականությունը: Ցավոք, մեր համապատասխան ստորաբաժանումները անհամեմատ վատ են աշխատում երկրի ու դրսի հանրությանը օբյեկտիվ իրավիճակը լրիվ ու ճշմարտացի ներկայացնելու ուղղությամբ:

Մենք դատապարտում ենք Ադրբեջանի կոմկուսի օրերս տեղի ունեցած համագումարում Կենտկոմի հաշվետվության մեջ մեր ժողովրդի հասցեին արված սանձարձակ հայտարարությունները և ռեգիոնում ստեղծված իրադրության պատճառների գլխիվայր շուռ տրված մեկնաբանությունները և հայտարարում, որ թույլ չենք տա, որպեսզի ոտնահարվեն հայ ժողովրդի բարի անունը, պատիվն ու արժանապատվությունը՝ ում կողմից էլ որ այդ փորձերն արվեն:

Ռեգիոնում ստեղծված իրավիճակը չէր կարող խոր հետք չթողնել հասարակական գիտակցության մեջ: Սասանվեց Խորհրդային Միության գլխավոր ձեռքբերումներից մեկը՝ ժողովուրդների վստահությունը իրենց անվտանգության և կյանքի ապահովության նկատմամբ:

Այսօր ծավալվող լարվածության ալիքը մեծապես պայմանավորված է նրանով, որ փաստորեն խեղաթյուրվեց ու նենգափոխվեց ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 1989 թվականի նոյեմբերի 28-ի առանց այն էլ անսկզբունքային ու կիսատ-պռատ որոշումը: Մարզի կուսակցական և խորհրդային ղեկավար մարմինների վերականգնման փոխարեն ստեղծվեց հանրապետական կազմկոմիտե, որը հենվելով զինվորականների բացահայտ աջակցության վրա, զբաղված է միանգամայն անօրինական գործունեությամբ:

Բանը հասել է նրան, որ խորհրդային իշխանությունների վերացման քաղաքականությունը արդեն հասել է շրջանային օղակ: Օրերս կամայականորեն դադարեցվել է Հադրութի կուսշրջկոմի և շրջխորհրդի գործունեությունը:

Հանրապետության կոմունիստները և աշխատավորությունը երկրի ղեկավարությունից պահանջում են անհապաղ վերականգնել խորհրդային իշխանությունը մարզում, պատասխանատվության ենթարկել ապօրինի գործողությունների հեղինակներին: Երկրի քաղաքական նման իրավիճակում, երբ տարբեր տեղեր փորձեր են արվում ԽՍՀՄ կազմից դուրս գալու, Լեռնային Ղարաբաղում խորհրդային իշխանության հաստատման նկատմամբ նման վերաբերմունքը առնվազն տարօրինակ է, ունի միանգամայն մ[illegible]ունիավոր բնույթ ու հղի է հեռուն տանող հետևանքներով:

Ըստ էության անգործության է մատնվել միութենական վերահսկիչ-դիտորդ հանձնաժողովը, որը գործիք է դարձել հանրապետական կազմկոմիտեի ձեռքում:

Ադրբեջանական կողմը այժմ գործում է ուժի դիրքերից, նույնիսկ թվացյալ փոխվիջումային քաղաքականությունից անցել է ուլտիմատումի քաղաքականության:

Արցախն այսօր, առավել քան երբևէ, մայր հայրենիքի հոգևոր, տնտեսական և բարոյական աջակցության կարիքն ունի: ԼՂԻՄ-ի ներկայացուցիչների հետ ունեցած վերջին հանդիպումների ժամանակ մենք համակողմանիորեն քննարկել ենք ներկայումս մեր հայրենակիցներին հուզող հարցերը: Նրանք գլխավորապես առաջադրում են մարզխորհրդի ճանաչման, մարզի կարգավիճակի բարձրացման, շրջափակման վերացման պահանջները:

Վերջին շրջանում մարզում տեղի ունեցած անցանկալի միջադեպերի գլխավոր պատճառներից մեկը զինվորական ստորաբաժանումների առկայությունն է: Մենք գտնում ենք, որ դրանք պետք է տեղաբաշխվեն ոչ թե զուտ հայաբնակ քաղաքներում ու շրջաններում, այլ միայն սահմանակից և խառը բնակչություն ունեցող վայրերում: Այդ դեպքում, իհարկե, կկանխվեն բախումներն ու ընդհարումները, կբացառվեն զինվորականների կամայականությունները:

Այժմ կոնկրետ քայլեր են արվում նշված և մի շարք այլ հարցերի լուծման ուղղությամբ, այդ թվում՝ բանակցությունների միջոցով: Մենք պասիվ դիտորդի դերում չենք: Արցախում ստեղծված իրավիճակի վերաբերյալ օրերս մեր սկզբունքային գնահատականն ու պահանջներն ենք առաջադրել երկրի ղեկավարությանը, անձամբ պրեզիդենտին, պահանջել կտրուկ միջամտություն և անօրինականությունների կանխում: Մեր դիրքորոշումը պարզ է ու միանշանակ. Արցախի ժողովրդի սահմանադրական իրավունքը պետք է հարգվի մարդու իրավունքների պաշտպանության միջազգային նորմերին համապատասխան:

Իրավիճակի վատթարացումը մեր հանրապետությունում պայմանավորված է նաև մի շարք ներքին գործոններով: Ժողովրդական շարժումը գնալով մասնատվեց, ծնունդ տալով տարանջատված ուժերի, որոնք երբեմն անհանդուրժողական դիրք են բռնում: Աններելի է «միացում» գոչելով, ամեն գնով իշխանության ձգտելով, մարդ-

կանց մղել ուժերի ջլատման ու տարանջատման: Ազգի և ժողովրդի բախտի ու ճակատագրի հետ առնչվող հարցերը եսասիրական կամ փառամոլական նկատառումներով շահարկելը առնվազն անբարոյականություն է:

Ցավալի է նաև, որ բազմակարծության, ժողովրդավարության լայն ծավալման արդի պայմաններում մեզանում ստեղծվել է յուրօրինակ քաղաքական քաոս, ի հայտ են եկել տարբեր, նույնիսկ հերհակ հոսանքներ, որոնցից յուրաքանչյուրը ստեղծված իրավիճակը մեկնաբանում է իր նեղ տեսանկյունով, ծառայեցնում իր շահերին: Փաստը մնում է փաստ, որ ինքնագործ շարժումների և կազմակերպությունների մի մասը չառաջարկելով հանրապետությունը տնտեսական և քաղաքական ճգնաժամից հանելու ոչ մի կոնստրուկտիվ ծրագիր, հիմնականում զբաղված է անառողջ կրքեր բորբոքելով:

Նման իրավիճակը հետևանք է նաև ՀԿԿ Կենտկոմի, հանրապետության Գերագույն խորհրդի և կառավարության անվճռական ու վախվորած գործունեության, սկզբից ևեթ ժողովրդական շարժումը ազգային միասնության հունով տանելու անկարողության, մինչև այսօր շարունակվող անթույլատրելի պասիվության: Ամեն գնով պետք է կանխել միասնական ժողովրդական շարժման հետագա պառակտումը, որը կործանարար հետևանքներ կարող է ունենալ:

Չմտածված ինքնագործունեությունը, անխոհեմ արարքները պարարտ հող են ամեն տեսակ սադրանքների ու չարամտությունների համար: Մայիսի 27-ին Երևանում տեղի ունեցած ողբերգությունը ցնցեց մեզանից յուրաքանչյուրին: Այդ արյունալի միջադեպը տարերային աղետ չէր և կարող էր կանխվել:

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն նույն օրերին քննության առավ այդ միջադեպը, կտրուկ միջոցներ ձեռնարկեց հետագա արյունահեղությունը կանխելու ուղղությամբ:

Բյուրոն նշեց, որ պատահածը հետևանք էր առանձին շարժումների, խմբերի ու անձանց հանցավոր անպատասխանատվության, նրանց հրահրիչ գործողությունների ու հեռուն գնացող քաղաքական նպատակների: Դրան նպաստեցին նաև հասարակական կարգը պահպանելու, հանցավոր խմբերից զենքը առգրավելու ուղղությամբ հանրապետական իրավապահ մարմինների պասիվ, անվճռական, երբեմն, անսկզբունք գործողությունները:

Այդ կոպիտ քաղաքական սադրանքն ուղղված էր հանրապետությունում իրավիճակի հետագա անկայունացմանը, խորհրդային բանակի դեմ թշնամական տրամադրությունների բորբոքմանը: Հանրապետության դատախազությունը ձեռնամուխ է եղել հետաքննությանը: Ժողովուրդը կարող է վստահ լինել՝ մեղավորները շուտով կբացահայտվեն և կստանան իրենց արժանի պատիժը:

Մենք կտրականապես մերժում ենք այն ստահոդ հերյուրանքները, թե իբր այդ միջադեպի հարցում մեղավոր է հանրապետության ղեկավարությունը: Դա հերթական անգամ Հայոց համազգային շարժում կազմակերպության որոշ լիդերների կողմից հասարակական կարծիքը ապակողմնորոշելու, պատասխանատվությունը ուրիշների վրա դնելու անմաքուր փորձ է:

Ստեղծված իրավիճակը թելադրում է անհապաղ կանխել ամեն գնով զինվելու, ամեն ձևով զինված ջոկատներ ստեղծելու անզուսպ մոլուցքը: Տարբեր խմբերի ձեռքում հայտնվել է զգալի քանակությամբ զենք ու զինամթերք, որը, ինչպես վկայում են վերջին ամիսների իրադարձությունները, ոմանք ազատորեն օգտագործում են հանցավոր նպատակներով, որի հանդեպ հանրապետության իրավապահ մարմինները, մենք ինքներս համապատասխան և վճռական վերաբերմունք չենք ցուցաբերել: Ժողովուրդն իրավացիորեն մեզնից պահանջում է կարգուկանոն հաստատել, իրեն զերծ պահել հանցագործ հարձակումներից, սահմանագիծ դնել ինքնապաշտպանական նպատակով ոտքի ելած հայրենասերների և այդ քողի տակ գործող հանցագործների միջև:

Ճիշտ է Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, հանրապետության Գերագույն խորհրդի նախագահությունը և Մինիստրների խորհուրդը քանիցս զենքը վերադարձնելու կոչ են արել, հորդորել, ժամկետ սահմանել: Վերջին ամիսներին ձեռնարկված միջոցառումների շնորհիվ վերադարձվել է բռնագրավված զենքի 32 տոկոսը: Չարագործ տարրերի ձեռքին ընդհանրապես զենք չպետք է թողնվի: Նման իրավիճակն այլևս հանդուրժել չի կարելի: Մենք պետք է դիմենք կտրուկ քայլերի:

Անհրաժեշտ է արագացնել նաև Գերագույն խորհրդի՝ պաշտպանության խորհուրդ ստեղծելու որոշման իրականացումը, հասարակական կարգի պաշտպանության ջոկատների ստեղծումը: Ներկա իրավիճակում հապաղելը անթույլատրելի է:



Այսօրվա ճգնաժամը պայմանավորված է նաև նրանով, որ հանրապետության կուսակցական, պետական մարմինները չկարողացան ժամանակին ճիշտ կողմնորոշվել ստեղծված իրադրության մեջ: Երկխոսություն սկսելու միտումը վերածվեց ամենաթողության: Կուսակցական կադրերը ընդունակ չեղան գնահատելու ժողովրդի արթնացող քաղաքական ինքնագիտակցության ամբողջ պոտենցիալը և այն ուղղելու հանրապետության հոգևոր ու տնտեսական վերածննդին նպաստող հունով: Նրանք անկարող գտնվեցին նաև երկխոսությամբ ինքնագործ շարժումները քաղաքական և ազգային համաձայնության ուղիով տանելու գործում, մի խնդիր, որ այսօր կենսականորեն անհրաժեշտ է հայ ժողովրդին: Նաև դրա մասին չե՞ն խոսում արդյոք մի շարք շրջաններում, հատկապես Երևան քաղաքում, ՀԽՍՀ ժողովրդական դեպուտատների ընտրության արդյունքները:

Հանրապետությունում բարոյաքաղաքական առողջ մթնոլորտ ստեղծելու հարցում իրենց ծանրակշիռ խոսքը չկարողացան ասել մեր շատ մտավորականներ: Ծավալվող ժողովրդավարության, բացախոսության և բազմակարծության պայմաններում նրանցից ոմանք անսպասելիորեն ցուցաբերեցին երկչոտություն՝ ասպարեզը զիջելով զանազան «տնաբույս» քաղաքագետների և տեսաբանների, «ինքնուս» պատմաբանների, որոնց կողմից պատմության ու ներկա իրադարձություններին տրված կամայական, զգացմունքային գնահատականները, դրանց էժանագին, պոպուլիստական շահարկումը ոչ մի կերպ չէին կարող նպաստել մեր ժողովրդի ստրատեգիական կողմնորոշիչներին, նրա քաղաքական հավատամքի կայունացմանը, նոր մտածելակերպի ձևավորմանը:

Հասկանալի է, որ այս պայմաններում հասարակական կարծիքի ձևավորումը ենթարկվում է տարերային, իրարամերժ գործոնների ազդեցության, կորցնում հստակ սահմանագծերը, առաջացնում բարոյահոգեբանական գերլարված իրադրություն: Փաստորեն ժողովրդավարությունը փոխարկվում է ամբոխավարության:

Մենք չենք կարող շրջանցել մի կարևոր հարց ևս. ինչպե՞ս եղավ, որ ընդամենը երկուսուկես տարի առաջ սկսված միասնական շարժումն աստիճանաբար կորցրեց իր ազգային-քաղաքական, սոցիալ-բարոյական հնչեղությունը և նկատելիորեն կերպարանափոխվեց: Ինչպե՞ս եղավ, որ հարյուրամյակներ ի վեր իր ազգային ինքնությունը և փրկությունը Ռուսաստանի հետ կապող մեր ժողովրդի որոշ ներկայացուցիչներ այսօր տեղիք են տալիս հակառուսական տրամադրությունների: Եվ այստեղ, բնավ չանտեսելով մեր շփոթահար վարքագիծը՝ պետք է արձանագրենք, որ մեղքի իր պատկառելի բաժինն ունի Կենտրոնը: Նախ. ճիշտ չգնահատելով ռեգիոնում ծավալվող առճակատման հնարավոր հետևանքները, երկրի ղեկավարությունը Արցախի հարցում չկարողացավ մշակել սկզբունքային դիրքորոշում և հասնել խնդրի քաղաքական, սահմանադրական լուծման:

Մյուս կարևոր հանգամանքը. մենք չենք կարողանում պատասխանել ժողովրդին, թե ինչո՞ւ մինչև այժմ անպատասխան է մնացել օսմանյան Թուրքիայի կողմից 1915 թվականի հայերի ցեղասպանությունը դատապարտելու վերաբերյալ Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի դիմումը երկրի գերագույն իշխանությանը: ԽՍՀՄ Գերագույն խորհուրդը նույնիսկ հարկ չհամարեց սույն հանրապետության պառլամենտի պահանջը քննարկման առարկա դարձնել: Ավելին, Կենտրոնի կողմից անտարբերության արժանացան նաև հայերի դեմ գործադրված նոր բարբարոսությունները Սումգայիթում, Գանձակում, Բաքվում, ադրբեջանական մյուս բնակավայրերում, ինչպես նաև դրանց վերաբերյալ հանրապետության Գերագույն խորհրդի որոշումները, որոնցով երկրի պետական իշխանության բարձրագույն մարմնից պահանջվում էր քաղաքական գնահատական տալ այդ վայրագություններին և պատժել մեղավորներին:

Այս ամենի հետևանքով խարխլվեց հայ ժողովրդի հավատը կենտրոնական իշխանությունների նկատմամբ, իսկ ոչ քիչ թվով մարդկանց մեջ նաև ձևավորվեցին հակակուսակցական տրամադրություններ: Ժամանակը դեռևս կտա իր անաչառ գնահատականը:

Այսուհանդերձ, մենք իրավունք չունենք նորից սխալվելու, հանձնվելու տարերքին, հուզականությանը: Նկատի ունենալով հանրապետությունում առկա քաղաքական **եսակենտրոնության**, առճակատման մթնոլորտը, մենք պետք է երկխոսության ձգտենք հասարակական միավորումների և կազմակերպությունների, ժողովրդի բոլոր առողջ ուժերի հետ, նպատակ ունենալով հասնել ազգային համաձայնության և համախմբվածության: Ներքին հակամարտությունը և առճակատումը ներկա համազ-

գային ճգնաժամի պայմաններում ուղղակի դավաճանություն է մեր ժողովրդի իրական շահերին, անհարիր՝ մեր ազգային ըղձերին: Մենք բոլորս, հայ ժողովրդի բոլոր առողջ ուժերը, լինի հանրապետությունում թե ներքին և արտաքին սփյուռքում, հասարակական բոլոր կազմակերպությունները պետք է գործենք համատեղ ուժերով, միասնաբար, գտնենք հանրապետությունը այս ճգնաժամից դուրս բերելու ուղիներ, միահամուռ պայքարենք մեր ժողովրդի գոյատևման, նրա ազգային առաջընթացի համար:

Խնդիրը կարծեք թե պարզ է և ընդունելի բոլորի համար: Բայց ահա կան մարդիկ, որ խոսքով դեմ չլինելով մեր ժողովրդի միաբանությանը, գործնականում իրենց անհավասարակշիռ քայլերով մեծապես վտանգում են այն: Անխոհեմ քայլեր են թույլ տրվում այնպիսի հարցերում, որոնք լրջմիտ ու հաճախ նաև դիվանագիտական հավասարակշռված մոտեցումներ են պահանջում:

Մեր պայքարը մեր ժողովրդի բարեողջության և ոչ թե նրան արնաքամ անելու համար է: Այն չպետք է շեղվի իր ճշմարիտ ուղուց: Պետք է դատապարտվեն ատելություն և անհանդուրժողականություն սերմանելու միտումները, որոնք բնութագրական են նաև մեր ներքին կյանքին:

Այսօր համակողմանի վերլուծության անհրաժեշտություն ունեն մեր կյանքի բոլոր բնագավառները, ճշմարիտ գնահատության կարիք՝ անցյալի ու ներկայի բոլոր սխալները ու սայթաքումները: Սակայն կարևոր է թոթափել ծայրահեղական մոտեցումները, հողին չհավասարեցնել մեզ համար կենսական և նշանակալի արժեքները: Թերևս այդպիսի կեցվածք է նկատվում բոլոր այլախոհների մոտ, մասնավորապես կոմունիստների նկատմամբ, երբ ոմանք միտինգներում թե մամուլում նրանց փորձում են ներկայացնել մինչև իսկ թշնամու կերպարանքով...

... Պիտակներ, կոչեր, որոնք ցավալիորեն հիշեցնում են անցյալի մռայլ ու գորշ ժամանակները:

Ընկերնե՛ր:

Ներկայիս ազգային զարթոնքը, ազգային արժանապատվության և ինքնագիտակցության վերելքը անհրաժեշտ է դնել գործնական, իրական շարժընթացի մեջ, նպատակաուղղելով այն մեր հոգևոր և մշակութային արժեքները համամարդկային նվաճումների հետ ժողովրդի սեփականությունը դարձնելուն: Մեր գերագույն խնդիրը պետք է լինի ստեղծել բոլոր պայմանները ազգային մեր հարստության՝ հայոց լեզվի պետական գոյավիճակի, մեր գիտության ու մշակույթի ծաղկման և արժանի ճանաչման համար: Հանրապետության գիտական պոտենցիալը առավելագույնս պետք է ծառայի մեր խնդիրների լուծմանը:

Բարձր գնահատելով հայ առաքելական եկեղեցու դերը մեր ժողովրդի պատմության մեջ, մենք պետք է ամեն կերպ նպաստենք եկեղեցու ազգանվեր գործունեությանը:

Հայրենիք—սփյուռք սերտաճումը իրական հիմքի վրա դնելու համար անհրաժեշտ է ունենալ գործնական ծրագիր, որի կիրառությունը կհեշտացներ, թերևս, Հայաստանի հանրապետության քաղաքացիության մասին օրենքի ընդունումը:

Մեր ապրած ժամանակահատվածի դասերը վերստին հիշեցնում են, թե հասարակական կարծիքի ձևավորման գործում ինչ հսկայական դեր են խաղում մամուլը, հեռուստատեսությունը: Քիչ չեն դեպքերը, երբ մեր հանրապետության քաղաքական իրադրությունը մեկեն սրվել է մամուլի այս կամ այն անխոհեմ հրապարակման պատճառով:

Ասվածն ավելի է կարևորվում այժմ, երբ պաշտոնական և ոչ պաշտոնական կազմակերպությունների մի զգալի մասն արդեն ունի իր տպագիր օրգանները: Դրանք, ինչպես և պետք էր սպասել, թիրախ են դարձրել կոմկուսը, տենդագին ձևով քննադատում են հանրապետության ղեկավարությանը: Քննադատությունից, եթե այն արդարացի ու կոնստրուկտիվ է, մենք չենք վախենում: Սակայն երբեմն ոչ պաշտոնական մամուլը հասնում է ծայրահեղության, լուտանքներ թափում կուսակցության գլխին, կոմունիստների այսօրվա սերնդին մեղադրում գործած և չգործած մեղքերի համար կամ պարզապես թյուրիմացության մեջ գցում ընթերցողին: Իսկ ի՞նչ է անում մեր կուսակցական մամուլը: Ամոթխած լռում է, չլսելու կամ չնկատելու է տալիս: Ստեղծվել է այնպիսի վիճակ, երբ ժողովրդի շահերից բխող և երևույթների խոր վերլուծության վրա խարսխված տեսակետները, դժնի ժամանակների տխրահռչակ տրամաբանությամբ, գնահատվում են իբրև «այլախոհություն» և չեն կարողանում ճանապարհ հարթել դեպի մամուլի էջեր:



Մեր մամուլի շատ օրգանների ու հեռուստահաղորդումների պակասում է հեռուն միտող քաղաքական մտածելակերպը, եթե կուզեք՝ ինչ-որ տեղ նաև դիվանագիտությունը: Թշնամի շահելը դժվար գործ չէ, շատ ավելի դժվար է բարեկամներին պահելը ու նոր բարեկամ շահելը:

Եվ ապա: Հայ մամուլը երբեք էլ սովոր չի եղել սեթևեթել ժողովրդի հետ, գերադասել է ճշմարտությունը՝ որքան էլ այն դառը լինի: Իսկ ի՞նչ իրավիճակ է այսօր. տպագիր օրգանները, ռադիոն և հեռուստատեսությունը ասես մրցում են միմյանց հետ, թե ով ավելի շատ կգովերգի սեփական ժողովրդին, կշոյի նրա արժանապատվությունը, կշեշտի նրա վաղուց ի վեր հայտնի բարեմասնությունները:

Գերհագեցած այս երկու-երեք տարվա ընթացքում մենք ականատես եղանք աններևակայելի փաստերի. դրանք մեզ պետք է համապատասխան եզրակացությունների հանգեցնեն: Դրան պետք է օգնի հասարակական կարծիքը, մեր մտավորականության սթափ և առողջ ձայնը, որը լիարժեք չի հնչում, չի լսվում հասկանալի և անհասկանալի պատճառներով: Իսկապես բարդ ու դժվարին է ժողովրդին դեպի վաղվա օրը առաջնորդելը, նրան փորձությունների միջով տանելը: Բայց դա է մեր կուսակցությանը բաժին ընկած կյանքի և գործունեության իմաստը:

Հանրապետությունն այս վիճակից դուրս բերելու հարցում ժողովուրդը մեծ հույսեր է կապում նորընտիր պառլամենտի գործունեության հետ: Օրինականության հաստատումը մենք պետք է սկսենք իրավիճակի կարգավորմանն ուղղված նոր օրենքների արագ մշակումից ու ընդունումից: Անհետաձգելի է այսօր հանրապետության սուվերենության, տնտեսական ինքնուրույնության, բազմակուսակցականության, քաղաքացիության, հողային ռեֆորմի, լեզվի մասին և բազմաթիվ այլ օրենսդրական ակտերի ընդունումը: Դրանք քննարկման առարկա պետք է դառնան Գերագույն խորհրդի հենց առաջին նստաշրջանում:

Ընկերնե՛ր:

Ձեր քննարկմանը ներկայացված պլատֆորմի առանցքը մեր ժողովրդի առջև ծառացած մերձակա և ստրատեգիական խնդիրներն են, որոնք կարող են լուծվել մարդկանց քաղաքական ու սոցիալ-տնտեսական իրավունքները հարգելու ու պաշտպանելու, անձի ազատության երաշխիքներ ու նախադրյալներ ստեղծելու ճանապարհով:

Խիստ մտահոգիչ է հանրապետությունում ստեղծված սոցիալական իրավիճակը:

Հայաստանի կոմկուսի գործունեության առաջնահերթ, արմատական խնդիրն են լինելու բնակչությանը պարենամթերքով ապահովելու, բնակարանային շինարարության, առողջապահության, սպասարկման, առևտրի ոլորտներում գործերի վիճակը վճռականորեն բարելավելու հարցերը, սպառողական շուկայի նորմալացումը, նրա հագեցումը՝ էկոնոմիկայի սոցիալական կողմնորոշումն ուժեղացնելու ճանապարհով:

Մեր չթուլացող հոգածության առարկան կլինեն մատաղ սերնդի դաստիարակությունը, կրթության, մշակույթի ու գիտության զարգացումը: Մենք պարտավոր ենք ստեղծել այնպիսի մթնոլորտ, երբ բարձր պրոֆեսիոնալիզմը և կրթվածությունը դառնան ազգային մտածելակերպի ու գործելակերպի առանցքն ու բովանդակությունը:

Հանրապետությունում պետք է կշռադատված ժողովրդագրական քաղաքականություն վարել, անհրաժեշտ նախադրյալներ ստեղծել բնականոն հունի մեջ դնելու բնակչության վերարտադրությունը, աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման խելամիտ ծրագիր իրականացնել:

Հատուկ ուշադրության խնդիր է առաջնահերթ օգնության և աջակցության կարիք ունեցող բռնագաղթվածների հետ կապված հարցերի հրատապ կոմպլեքսային լուծումը և մյուս սոցիալական խմբերի՝ հաշմանդամների, որբ երեխաների, տարեց մարդկանց, միայնակ կանանց, բազմազավակ և երիտասարդ ընտանիքների, պատերազմի ու աշխատանքի վետերանների սոցիալական պահանջմունքների բավարարումը:

Այս բոլորի համար առաջին հերթին պահանջվում է ստեղծել անհրաժեշտ տնտեսական նախադրյալներ, որի մասին մեզանում բազմիցս ասվում է, բայց կոնկրետ գործ չի արվում:

Տագնապալի վիճակ է ստեղծվել հանրապետության էկոնոմիկայում: Եթե ամբողջ երկրում տնտեսական վերափոխումները ուղղված են ընդհանուր ճգնաժամային երևույթների արգելակմանը, ապա մեզանում միաժամանակ պետք է լուծել նաև բնական արհավիրքի հետևանքով անդամալույծ դարձած տնտեսական օրգանիզմի

վերականգնման գերբարդ խնդիրը, կանխել ընդհանուր սոցիալական լարվածության հետագա խորացումը:

Այսօր ՀԿԿ Կենտկոմի և կառավարության պահպանողական, անվճռական, կիսատ-պռատ մոտեցումները բացահայտ անհարիր են ստեղծված իրավիճակին: Անհրաժեշտ են ծրագրային, կոնցեպտուալ նոր մոտեցումներ: Վաղուց ժամանակն է ոչ միայն խնդիր առաջադրել, այլև պատասխան տալ այն հարցին, թե ինչպես դա իրականացնել: Ինչպե՞ս արտադրողներին տնտեսապես՝ անկախ դարձնել, ինչպե՞ս խթանել ազատ ձեռներեցությունը, տնտեսական գործունեությունը նպատակամղել պահանջմունքների բավարարմանը՝ ներդաշնակելով արտադրություն-սպառում կապը: Ինչպե՞ս ակտիվացնել շուկայական հարաբերությունների ծավալումը՝ միաժամանակ մարդկանց սոցիալական պաշտպանվածության կայուն երաշխիքներ ընտեղծել: Ինչպե՞ս վերափոխել հասարակական-տնտեսական կառավարման ամբողջ համակարգը, էկոնոմիկայի կառուցվածքին նոր որակ ու բնույթ հաղորդել վերաիմաստավորել կապերն ու փոխհարաբերությունները՝ հնարավոր չափով մեղմելով անցման շրջանի հիվանդագին դրսևորումները:

Այս բոլոր խնդիրների լուծման համար ելակետային է հանրապետության սուվերենության հաստատումը և, դրան համապատասխան, արմատական շրջադարձը էկոնոմիկայում՝ Հայաստանի տնտեսական ինքնուրույնության հաստատման ճանապարհով: Սակայն դա չի ենթադրում, թե տնտեսական կառավարման իրեն վարկաբեկած միութենական վարչահրամայական համակարգը պետք է փոխարինվի հանրապետականով: Նոր տնտեսական հարաբերություններին անցնելու առանցքային խնդիրը ամենից առաջ արտադրական հարաբերությունների և սեփականության ձևերի հիմնովին վերանայումն է, արտադրողների տնտեսական ազատության նախադրյալների ստեղծումը:

Պրոբլեմի ամբողջ բարդությունն այն է, թե ինչպես անցնել այդպիսի հարաբերությունների՝ խորությամբ հաշվի առնելով մեր առանձնահատկությունները, մեզանում ստեղծված իրավիճակը: Բանն այն է, որ դեֆորմացված տնտեսական կապերով, ձևախեղված կառուցվածքով, անհամամասնությունների խիտ ցանցով, ապակայունացված դրամաշրջանառությամբ ու ծանր ֆինանսական բեռով մեր էկոնոմիկան ի վիճակի չէ գործելու նոր պայմաններում, աշխատելու արդյունավետ և ունենալու արտադրանքի իրացման կայուն շուկա: Ուստի հանրապետությունը տնտեսական ճգնաժամից դուրս բերելու և արտադրական նոր հարաբերությունների անցնելու հստակ, իրատես ու իրագործելի ծրագրի մշակումը մենք համարում ենք այսօրվա տնտեսական քաղաքականության արմատական հարցը:

Նման ծրագրում անհրաժեշտ է խելամտորեն սահմանազատել տնտեսական վերափոխման փուլերը:

Մեզ համար բախտորոշ նշանակություն կունենա 1990 թվականը: Նախ, լուրջ բեկում պետք է մտցնել երկրաշարժի հետևանքների հաղթահարման գործում: Պետք է հստակեցվեն միութենական հանրապետությունների և ներգրավված մյուս կազմակերպությունների հետ մեր փոխհարաբերությունները՝ նախատեսված ծրագրերի ամբողջական կատարման ուղղությամբ: Արդեն ութ հանրապետություն հրաժարվում են հետագա աշխատանքներից: Լրիվ ձախողվում է միութենական մարմինների կողմից ընդունված որոշումների կատարումը: Միութենական կառավարությունը կամ կոնկրետ միջոցներ պետք է ձեռնարկի վիճակը շտկելու ուղղությամբ, կամ անհրաժեշտ կապիտալ ներդրումների լիմիտները, համապատասխան նյութատեխնիկական ռեսուրսները հատկացնի հանրապետությանը՝ սեփական ուժերով շինարարական ու վերականգնողական աշխատանքները կատարելու համար: Այստեղ սկզբունքային նշանակություն ունի նաև մեր ներքին պոտենցիալի առավելագույն կողմնորոշումը երկրաշարժի գոտու աշխատանքների տեմպերի կտրուկ բարձրացմանը: Այս աշխատանքներն արդեն ընթացքի մեջ են:

Այսօրվա անհետաձգելի խնդիրներից է ժողովրդական տնտեսության մեջ տիրող վիճակի արմատական բարելավումը: Անասելիորեն ընկել են աշխատանքային կարգապահությունը, պատասխանատվությունը: Շատերը իրենց գործը ձախողելով, ուրիշներին քննադատելու և հաճախ նաև վատաբանելու ինքնակամ իրավունք են ստանձնել: Ընդունելի չէ նաև ամեն ինչ միայն շրջափակումներով բացատրելը: Մի՞թե միայն դա էր պատճառը, որ լրիվ ձախողվել են գործերը շինանյութերի արտադրության գործում և կապիտալ շինարարությունում: Արդյունաբերության մեջ, հատկապես միութենական ենթակայության ձեռնարկություններում, արդեն հարյուրավոր



միլիոնների է հասնում թերամատակարարումների ծավալը: Մենք կորցնում ենք հուսալի գործընկերոջ համբավը, որը լուրջ հետևանքներ կարող է ունենալ: Էկոնոմիկայի զարգացման քանակական ու որակական ցուցանիշները խիստ վատացել են գրեթե բոլոր ճյուղերում: Վիճակի աստիճանական ու դինամիկ շտկման ժամանակը արդեն ձեռքից բաց է թողնվել: Այժմ անհրաժեշտ է միայն արագ ու արմատական միջոցառումներ իրականացնել, քանի որ էկոնոմիկայի կառավարման այսօրվա կառուցվածքներն ու գործադրվող մեթոդները ամենևին չեն ներդաշնակվում նոր խնդիրների լուծմանը ներկայացվող պահանջներին:

Հասկանալի է, որ մեզանում ստեղծված իրավիճակն այնպիսին է, երբ ընթացիկ հոգսերն ու ցավերը դեռ երկար ժամանակ առաջին պլանում կլինեն, այսպես կոչված, առաջնության իրավունք կունենան ժողովրդատնտեսական մոտեցումների նկատմամբ: Բայց դա մեզ իրավունք չի տալիս հապաղել, հետ մնալ երկրում ընթացող պրոցեսներից: Հանրապետության կառավարությունը, մեր մինիստրություններն ու գերատեսչությունները վերջապես պետք է դուրս գան տնական նիրհից և ձեռնամուխ լինեն տնտեսական կյանքի ակտիվ վերափոխման խնդիրների լուծմանը:

1990—91 թվականները հանրապետության էկոնոմիկայի համար կդառնան արմատական շրջադարձի տարիներ՝ դրա բոլոր առանձնահատկություններով: Հիմնական, բնորոշ գիծը կլինի շուկայական հարաբերությունների աստիճանական ձևավորումը՝ հանրապետության տնտեսական ինքնուրույնության հաստատման, սեփականության զգալի չափով ապապետականացման, ակտիվ ձեռներեցության ծավալման, նորամուծությունների խթանման, արմատական հողային ռեֆորմի իրականացման, կառավարման նոր կառուցվածքների արմատավորման, ֆինանսավարկային հարաբերությունների վերափոխման, հարկային նոր քաղաքականության վարման, անհատի սոցիալական պաշտպանվածության երաշխիքների ստեղծման ճանապարհով: Սակայն այս ուղղությամբ աշխատանքները աններելիորեն դանդաղում են:

Սկզբունքային նշանակություն ունի այնպիսի միջավայրի ստեղծումը, երբ արտադրողներն իրենք որոշեն գործունեության եղանակները, սեփականության ձևը, կառավարման կառուցվածքներն ու կապերի բնույթը: Խիստ կարևոր է սեփականության տարբեր ձևերի գոյության հավասար նախապայմանների ստեղծումը, կոլեկտիվ, խմբային, բաժնետիրական, մասնավոր սեփականության ձևերի ակտիվ զարգացումը:

Արմատապես պետք է փոխվի վերաբերմունքը մասնավոր սեփականության նկատմամբ, որն այսօր ազատ ձեռներեցության ծավալման, արտադրության ու սպառման հաշվեկշռման կարևոր ազդակ կարող է դառնալ: Սեփականության այս ձևը պետք է լայն ասպարեզ գտնի հատկապես սպասարկման ոլորտում, սպառման առարկաների արտադրության մեջ, գյուղատնտեսության բնագավառում:

Տնտեսական վերափոխման այս փուլում անհրաժեշտ է անհապաղ անցում կատարել արտադրության կազմակերպման ու կառավարման նոր ձևերի՝ բաժնետիրական ընկերությունների, ասոցիացիաների, կոնցեռնների, կոնսորցիումների, անհատական ու խմբային շահերի անկաշկանդ իրացման վրա խարսխված տարբեր տիպի միությունների ու միավորումների: Անհրաժեշտ է ըստ ամենայնի խթանել մեծ հեռանկարներ ունեցող, էկոլոգիապես մաքուր փոքր ու միջին ձեռնարկությունների զարգացումը:

Լուրջ խնդիր է կադրերի հոգեբանական ու մասնագիտական վերափոխման ու վերապատրաստման նոր համակարգի ձևավորումը, համատարած տնտեսագիտական անգրագիտության հաղթահարումը, նոր տնտեսական հարաբերությունների այբուբենի արագ յուրացումը: Այս հարցերին առանձնահատուկ ուշադրություն պետք է դարձնեն Կենտկոմի գաղափարախոսական և սոցիալ-տնտեսագիտական հարցերով զբաղվող հանձնաժողովները:

Այսօր առաջնահերթ կարևորության խնդիր է անցման շրջանի հարաբերությունների կարգավորման ու նոր տնտեսական իրավիճակին անցնելու անհրաժեշտ նորմատիվային փաստաթղթերի ու օրենսդրական ակտերի նախապատրաստումն ու ընդունումը:

Ներկայումս մշակվել և համաժողովրդական քննարկման է դրվել հանրապետության տնտեսական ինքնուրույնության կոնցեպցիան: Սակայն դրա իրացման գործնական մեխանիզմների ու կոնկրետ ծրագրերի, անհրաժեշտ օրենսդրական փաստաթղթերի մշակումը պարզապես գնում է տնայնագործական մակարդակով:

Թերևս նպատակահարմար է, որ մինչև նորընտիր պառլամենտի աշխատանք-





ների սկսելը, Գերագույն խորհրդի նախագահությունը ձեռնամուխ լինի այս ուղղությամբ նախապատրաստական աշխատանքների կազմակերպմանն ու կոորդինացմանը: Պետք է ելնել այն սկզբունքային դիրքորոշումից, որ տնտեսական կյանքում նույնպես ոչ թե մարդիկ, այլ օրենքները պետք է կառավարեն պրոցեսներն ու հարաբերությունները: Իսկ նման օրենսդրական հիմքերի ստեղծումն այլևս հետաձգել չի կարելի:

Քաջ պետք է գիտակցենք, որ այսուհետև ապրելու ենք այնպես, ինչպես կգործի մեր տնտեսությունը, ինչպես կաշխատենք ու կօգտագործենք մեր հնարավորությունները: Իսկ դրա համար հարկավոր է անհապաղ լուծել նաև մի շարք ընդհանուր ժողովրդատնտեսական խնդիրներ: Ես կառանձնացնեմ միայն մի քանիսը: Ամենից առաջ մեզ անհրաժեշտ է հասնել արտադրության կառուցվածքային ու տեխնոլոգիական էապես նոր մակարդակի՝ ապահովելով ներհանրապետական ինտեգրացման բարձր աստիճան: Տնտեսական ինքնուրույնության հաստատումը ենթադրում է արտադրության ճյուղային կառուցվածքի և տարածքային տեղաբաշխման էապես նոր վիճակ: Առաջին հերթին շեշտը պետք է դնել մեր պոտենցիալի ու հնարավորությունների առավել խելամիտ օգտագործման վրա: Իսկ դա պահանջում է ծավալային, հորիզոնական աճի ցուցանիշների սահմանափակում, արտադրության գիտատարության կտրուկ աճ, գոյություն ունեցող բնական ռեսուրսների ավարտուն վերամշակում և հումքի արտահանման զգալի պակասեցում և ապա բացառում, հեռանկարային զարգացման ուղղությունների, ներքին ու արտաքին կապերի մանրակրկիտ ճշգրտում՝ առաջին պլանի վրա ունենալով բնապահպանական, սոցիալական և ընդհանուր ազգային շահերը: Նորովի պետք է դրվեն և լուծվեն աշխատանքային ռեսուրսների զբաղվածության, բնակչության տարաբնակեցման, սահմանային շրջանների հետագա զարգացման խնդիրները: Ճշգրտման անհրաժեշտություն ունեն էկոնոմիկայի մասնագիտացման ուղղությունները, առանձին ճյուղերի զարգացման տեմպերը: Մասնավորապես շեշտը պետք է դրվի գիտատեխնիկական առաջադիմության խթանման, վերջնական արտադրանքի բաժնի ավելացման, տեղում պղնձի, մոլիբդենի, ոսկու արտադրության կազմակերպման, մյուս բնական ռեսուրսների համալիր օգտագործման վրա: Մենք պետք է ի վիճակի լինենք դիմանալու աստիճանաբար ծավալվող տնտեսական մրցակցությանը:

Առանձնակի նշանակություն պետք է տրվի վառելիքաէներգետիկ համալիրի կայուն գործունեության ապահովմանը, որի պարտադիր պայմաններից են էներգիայի ոչ ավանդական տեսակների օգտագործումը, հարևան հանրապետությունների և պետությունների հետ էներգետիկ ռեսուրսների ստացման երկարաժամկետ պայմանագրերի կնքումը:

Մենք պետք է առավելագույն արդյունավետությամբ օգտագործենք մեր հիդրոէներգետիկ հնարավորությունները, մասնավորապես ջրամբարների համալիր գործարկման հիման վրա:

Տնտեսական ինքնուրույնության ամրապնդման գլխավոր խնդրից ելնելով այսօր իսկ պետք է որոշենք՝ ինչո՞վ, ինչպե՞ս և ի՞նչ տնտեսական կապերի մեջ կարող ենք մտնել միութենական մյուս հանրապետությունների, հարևան երկրների հետ, պետական մակարդակով ճշգրտենք նրանց հետ առաջիկա պայմանագրային փոխհարաբերությունները:

Արմատապես պետք է վերանայվեն մեր թե ներքին և թե արտաքին տրանսպորտային կապերը: Ժամանակն է վերաիմաստավորելու ու վերագնահատելու հանրապետության տնտեսաաշխարհագրական դիրքը՝ որպես տնտեսական գործոնի: Հարկավոր է առանց դույզն իսկ թուլացնելու մեր դեմոկրատական պայքարը հանուն հայ ժողովրդի պատմական իրավունքների, ամեն կերպ ակտիվացնել հանրապետության փոխշահավետ տնտեսական կապերը մեր հարավային ու արևմտյան հարևանների հետ: Խելամիտ պետք է գնահատենք և շահավետ օգտագործենք հանրապետության տարանցիկ դիրքը ԽՍՀՄ-ի ու Մերձավոր Արևելքի երկրների միջև: Արդեն կոնկրետ քայլեր են արվում միջազգային օդային կայուն ուղերթների հաստատման ուղղությամբ: Նախնական արդյունքները գոհացուցիչ են: Ինչպես գիտեք, օրերս կատարվել են առաջին թռիչքները:

Մարդիկ որոշակի հույսեր են կապում արտաքին տնտեսական նոր հարաբերությունների անցնելու հետ: Այստեղ որոշ բան արվում է, բայց դա դեռևս անբավարար է: Մենք այս ուղղությամբ արդեն ձեռնարկել ենք գործնական քայլեր: Նախատեսվում է ստեղծել արտաքին տնտեսական հարաբերությունների կառավարման



հանրապետական ճկուն համակարգ, գործնական հիմքի վրա դնել ազատ գոտու գաղափարը: Հանրապետության արտաքին տնտեսական հարաբերությունների արտոնյալ պայմաններ ստեղծելու նպատակով նախապատրաստվել է միութենական կառավարության հատուկ որոշում:

Այդ քայլերը, ինչպես նաև արտաքին տնտեսական հարաբերություններում ազատ ձեռներեցության ակտիվ ծավալման համար անհրաժեշտ ենթակառուցվածքների ստեղծումը կխթանեն աստիճանական անցումը բաց դռների տնտեսական քաղաքականության, կնպաստեն ներգրավելու արտաքին կապիտալը և մուտք գործելու միջազգային շուկա:

Մեր տնտեսական քաղաքականության անկյունաքարը պարենային պրոբլեմն է: Պլատֆորմի նախագծում ձևավորված են դրա լուծման սկզբունքային մոտեցումները:

Առաջնահերթ միջոցառումներից մեկը ագրոարդյունաբերական ամբողջ համալիրում և առաջին հերթին գյուղատնտեսության մեջ, տնտեսական հարաբերությունների կատարելագործումն է: Հարկավոր է մարդկանց լայն հնարավորություններ ընձեռել: Հայաստանի կոմկուսի Կենտկոմը շեշտը դնում է գյուղում տնտեսավարման և սեփականության ձևերի բազմազանության վրա: Պետական, կոոպերատիվ, գյուղացիական անհատական տնտեսությունները, տնտեսավարման կապալային, վարձակալական, ընտանեկան և այլ ձևերը պետք է ունենան հավասար հնարավորություններ: Գյուղացուն ընդհանրապես լրիվ ազատություն պետք է տրվի սեփականության ձևերի ընտրության հարցում: Հողի տնօրինման ամբողջ իրավունքը պետք է տրվի տեղական խորհուրդներին, իսկ օգտագործման իրավունքը՝ պետական, կոլեկտիվ ու անհատական տնտեսություններին: Բոլոր ցանկացողները հող կստանան, որը զգալի չափով կլուծի թե բնակարանի և թե պարենի պրոբլեմը:

Այսօր անհրաժեշտ է փրկել գյուղը, օգնել նրան, ստեղծել ապրելու ու աշխատելու նորմալ պայմաններ, ապահովել ապրանքային համարժեք փոխանակություն: Դա ոչ թե առանձնահատուկ տուրք է գյուղացուն, այլ պարզապես մարդկանց լիարժեք սննդով ապահովելու հիմնական պայման:

Ընկերներ:

Այժմ, երբ մեր հանրապետությունն այս բարդ ու հակասական իրավիճակում կանգնած է նոր արմատական վերափոխումների շեմին, յուրաքանչյուրից քաղաքական մեծ պատասխանատվություն ու քաղաքացիական խիզախություն է պահանջվում վեր կանգնել եսակենտրոն մղումներից, ուժերն ու կարողությունները առավելագույնս ներդնել հանրապետության ու մեր ժողովրդի առջև ծառացած արմատական խնդիրների լուծման գործին: Դեմոկրատիան մենք հասկանում ենք ոչ միայն որպես իրավունք ու ազատություն, այլև որպես դրա հետ օրգանապես կապված պատասխանատվություն, օրենքների խստագույն պահպանում ու ինքնավերահսկում:

Մենք միաժամանակ գտնում ենք, որ ծրագրային մոտեցումների հարցում առավելագույն խելամտություն պետք է հանդես բերվի: Կյանքի առաջադրած անչափ բարդ հարցերին հասարակ, միանշանակ պատասխաններ, ինչպես հայտնի է, չեն լինում: Եվ նրանք, ովքեր այսօր չարարկում են ամեն մի ձեռնարկում, ապակողմնորոշելով հասարակական կարծիքը, անպտուղ առճակատման ուղի են բռնում, միայն ու միայն ջուր են լցնում հայ ժողովրդի վաղվա օրը մթագնած գույներով տեսնել ցանկացողների ջրաղացին:

Ներկայացվող պլատֆորմի նախագիծը, բնականաբար, չի կարող սպեղանի լինել բոլոր վերքերին, պատասխան տալ բոլոր չլուծված հարցերին:

Դրա հետ մեկտեղ, չի կարելի չընդունել, որ ընդհանուր հանրագումարով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլատֆորմի նախագիծը կարող է ծառայել իբրև հիմք հետագա մշակման համար, որի արդյունքում մենք կունենանք գործունեության ամբողջական, կոնկրետ ու համախմբող ծրագիր:

Մեր ժողովուրդը արագ և կտրուկ փոփոխություններ է սպասում, հոգնել է անկայունությունից, անասելի դժվարություններից: Եվ, բնականաբար, սպասումները համեմատելով արվածի հետ, արդարացիորեն դժգոհում է, անբավարարվածություն ապրում: Մենք հասկանում ենք այդ ամենը: Բայց չէ որ վերջին երկու ամսում, գրեթե ամեն օր ու ամեն ժամ մենք աշխատել ենք ձեզ հայտնի բացարձակ արտակարգ պայմաններում: Մի կողմից՝ տարբեր բնույթի սադրանքներ ու ներքին բախումներ, չարակամ առճակատում ու անխոհեմ գործողություններ, մյուս կողմից՝ տարիներով կուտակված, շերտավորված, ծայրաստիճան սրված պրոբլեմներ ու հոգսեր:

Իրավիճակի բարդությունը դժվարացնում է հստակ ու արագ իրականացնել բոլոր մտահղացումները: Սակայն այն բարոյական իրավունք չի տալիս հապճեպ վճիռներ կայացնել, ղեկավարվել կոչերով, գնալ էժան սենսացիաների, ժամանակավոր էֆեկտների: Դրամատիկ այս վիճակում զգացմունքներով հանրապետություն կառավարելը կործանարար կարող է լինել: Սերունդները երբեք չեն ների ոմանց կողմից անխոհեմ թեթևությամբ մարդկանց արյունահեղության մղելու, տեղի-անտեղի հայրենասիրության ներկայացումներ սարքելու փորձերը:

Այո, մեզանում իրական հայրենասիրության դրսևորման օրինակները նույնպես քիչ չեն, իսկ անհրաժեշտությունը՝ էլ ավելի մեծ է: Եվ իրենց ժողովրդի բախտով ու ճակատագրով մտահոգված մարդիկ շեշտը դնում են դրությունից դուրս գալու կշռադատված ելք գտնելու վրա, որը շատ ավելի կարևոր է ու դժվարին:

Մեծ դժվարությամբ մեզ հաջողվեց հանել հանրապետության շրջափակումը, բանակցությունների օգնությամբ կանխել հետագա արյունահեղությունները:

Կարևոր համարելով ազգային համաձայնության խնդիրը, սկզբունքային դիրքերից ակտիվ երկխոսություն է ծավալվել բոլոր պաշտոնական ու ոչ պաշտոնական կազմակերպությունների ու շարժումների հետ՝ դրանց հիմքում դնելով մեր ազգային շահերը: Նախապատրաստական աշխատանքներ են տարվում համազգային խորհրդաժողովի գումարման ուղղությամբ: Հստակեցվել են մոտեցումները հանրապետության կոմկուսի հետագա գոյավիճակի, ներկուսակցական դեմոկրատիայի խորացման, մեր ինքնուրույն ծրագրի ու կանոնադրության մշակման հարցերում:

Մշակվում են էկոնոմիկայի արմատական վերափոխման նոր մոտեցումներ: Ինչպես նշեցի, ընդունվել է միութենական կառավարության հատուկ որոշում՝ Հայաստանում արտաքին տնտեսական հարաբերությունների նոր կարգավիճակի անցնելու, ազատ գոտու գաղափարի իրականացման համար արտոնյալ տնտեսական պայմաններ ստեղծելու նպատակով: Այն էական դեր կխաղա ճգնաժամային երևույթների հաղթահարման հարցում:

Կազմվել է հանրապետությունում պղնձի արտադրության էապես նոր ծրագիր, որը հնարավորություն կտա առաջիկա երեք տարում պղնձահումքը ներքին շուկայից արտաքին շուկա դուրս բերելով ստանալ մոտ 120 մլն դոլար վալյուտա և Անգլիայի ու Ֆրանսիայի հետ էկոլոգիապես մաքուր պղնձաձուլության համատեղ նոր արտադրություն հիմնել:

Մշակվել են նոր մոտեցումներ հանրապետության ժողովրդական տնտեսության կառավարման գլխավոր սխեմայի ճշգրտման, կուսակցական ու վարչական ապարատի զգալի կրճատման, նոր իրավիճակից բխող կառուցվածքների ստեղծման, կադրերի թարմացման ուղղությամբ: Ոչ միայն զգալի չափով մեծացվել է հանրապետության ամբողջ պոտենցիալի կողմնորոշումը երկրաշարժի հետևանքների հաղթահարմանը, այլև վերանայվել է այդ բարդ պրոցեսի կառավարման համակարգը:

Կոնկրետ քայլեր են արվում գյուղում նոր արտադրահարաբերությունների անցնելու, հողային ռեֆորմի իրականացման ուղղությամբ:

Մեր ժողովրդին, մեզ բոլորիս խորապես մտահոգում են անօրինականությունների դեմ պայքարի ուժեղացման, անհրաժեշտ կարգուկանոնի ստեղծման հարցերը: Կադրային փոփոխությունները իրավապահ մարմիններում նպատակ ունեն լրջորեն բարելավել դրանց գործունեությունը, այստեղ բեկում մտցնել:

Մենք լավ ենք հասկանում, որ արվածը դեռևս շատ քիչ է ու անհամարժեք ստեղծված կացությանը: Առանձին հարցերում, հատկապես կադրային, թույլ է տրվում անվճռականություն, չարդարացված դանդաղկոտություն: Մենք առանց հապաղելու կշտկենք դրությունը ու կդիմենք կոնկրետ քայլերի:

Հասկանալի պետք է լինի նաև այսօրվա առանձնահատուկ վիճակը: Դեռևս չեն ավարտվել ժողովրդական դեպուտատների ընտրությունները, հին պառլամենտը չի գործում, իսկ նորը դեռևս չի կազմավորվել: Անցումային նման ծայրահեղ դժվարին իրավիճակում անհրաժեշտ է վեր կանգնել անձնական ու խմբային շահերից, թույլ չտալ լարվածության հետագա խորացում, առավելագույնս նպաստել իրավիճակի նորմալացմանը:

Մեր բոլորի պարտքն է սթափ դիրքորոշում ունենալ, ճիշտ գնահատել ստեղծված իրավիճակը, գործնականում նպաստել ձևավորելու արմատապես նորացված, նոր սկզբունքներով ու գործունեության մեթոդներով առաջնորդվող ինքնուրույն, ամուր ու միասնական Հայաստանի կոմունիստական կուսակցություն:

---

# ՂԱՐԱԲԱՂՅԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ ՊԵՏՔ Է ԼՈՒԾՎԻ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԸՆԴԼԱՅՆՎԱԾ ՊԼԵՆՈՒՄԻ ԴԻՄՈՒՄԸ ԽՄԿԿ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

ԼՂԻՄ-ում և Հայկական ԽՍՀ-ում հասարակական-քաղաքական իրադրության կտրուկ սրումը թելադրում է ԽՄԿԿ XXVIII համագումարին դիմելու անհրաժեշտությունը:

Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը արդեն երկուսուկես տարի իր վրա է բևեռել կուսակցության ու երկրի ուշադրությունը: Սակայն նախկինում երբեք ԼՂԻՄ-ի և ամբողջ ռեգիոնի իրադրությունը այնքան լարված ու պայթյունավտանգ չի եղել, որքան հիմա: Ադրբեջանական ԽՍՀ-ի ղեկավարությունը կենտրոնի լռելյայն համաձայնությամբ, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 1989 թվականի նոյեմբերի 28-ի որոշմանը հակառակ, ձեռնամուխ է եղել այնպիսի միջոցառումների իրականացման, որոնց նպատակն է ԼՂԻՄ-ի ժողովրդագրական իրավիճակի փոփոխման միջոցով հասնել ինքնավար մարզի վերացմանը: Մարզում կախակայված է տեղական խորհրդային և կուսակցական մարմինների գործունեությունը, խիստ վերահսկողություն է սահմանված ԽՍՀՄ ՆԳՄ ներքին զորքերի կողմից, որոնք լայնորեն ճնշիչ միջոցներ են գործադրում հայ բնակչության դեմ, ոտնահարելով նրա դեմոկրատական իրավունքները ու ազգային արժանապատվությունը: Այդ գործողությունները կրում են բացահայտորեն պրովոկացիոն բնույթ, հակասում են ԽՍՀՄ սահմանադրությանն ու ԽՄԿԿ կանոնադրությանը, զայրույթ պատճառում հայ ժողովրդին, ապակայունացնում հանրապետության իրադրությունը:

Իրադարձությունների նման ընթացքը ամենևին էլ պատահական չէ: Այն կանխորոշված էր դեռևս 1988 թվականի փետրվարին, երբ մարզը Հայկական ԽՍՀ-ին վերամիավորելու, Անդրկովկասում ազգային-պետական շինարարության հարցում 20-ական թվականների սկզբներին թույլ տրված սխալն ուղղելու համար ԽՍՀՄ սահմանադրությանը լիովին համապատասխան ԼՂԻՄ-ում սկսված շարժումը ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի կողմից հապճեպորեն գնահատվեց որպես «ազգայնականների» և «ծայրահեղականների» գործողություններ:

Ազգի կամքի և ինքնորոշման նրա իրավունքի հարցը մասսայական ինֆորմացիայի միջոցների ձեռնածության միջոցով հանգեցվեց մի հանրապետության նկատմամբ մեկ այլ հանրապետության «տարածքային հավակնությունների» հարցին: Իրականում խոսքն այն մասին է, որ վերակառուցման պայմաններում արդարացի դեմոկրատական շարժում է սկսվել միասնական լեզու, մշակույթ, հոգևոր նկարագիր ունեցող միևնույն ժողովրդի արհեստականորեն բաժանված երկու մասերի վերամիավորման համար: Ի պատասխան շարժմանը, որն ուղղված չէր ոչ խորհրդային իշխանության, ոչ էլ սոցիալիզմի գաղափարների դեմ, հետևեց հայերի անպատիժ ցեղասպանությունը Սումգայիթում, Կիրովաբադում, Բաքվում ու այլ վայրերում և Ադրբեջանի ավելի քան 400 հազար հայ բնակչության բռնագաղթը, որը խիստ սրեց իրադրությունը, ըստ էության հանգեցրեց երկու միութենական հանրապետությունների միջև քաղաքացիական պատերազմի բռնկման:

Երկրի ղեկավարության անսկզբունք գիծը՝ ԼՂԻՄ-ի Հատուկ կառավարման կոմիտեի արձակումը, ԼՂԻՄ-ի ու Հայկական ԽՍՀ-ի՝ Ադրբեջանի կողմից պարբերաբար վերսկսվող շրջափակումը կանխել չցանկանալը կամ չկարողանալը, որը հսկայական նյութական վնաս պատճառեց հանրապետության ժողովրդական տնտեսությանը և ձախողեց երկրաշարժի գոտու վերականգնման աշխատանքների պլան-

ները, մասսայական ինֆորմացիայի միջոցների կողմից իրադարձությունների միտումնավոր, կանխակալ լուսաբանումը և որպես դրա հետևանք երկրում հակահայկական տրամադրությունների բորբոքումը ԼՂԻՄ-ի ու Հայկական ԽՍՀ-ի բնակչության զգալի մասի մեջ անպաշտպանվածության, տագնապի զգացում է ծնել, հանգեցրել է իրավապահ մարմինների և կենտրոնական իշխանությունների քաղաքականության նկատմամբ վստահության կորստյան:

Ղարաբաղյան ճգնաժամի դասերը ցույց են տալիս, որ առկա է խզումը ազգային հարցի վերաբերյալ հռչակված ծրագրի և նրա իրականացման պրակտիկայի միջև, որ ազգամիջյան հարաբերությունների բարդ պրոբլեմները չի կարելի լուծել կիսատ-պռատ միջոցներով, որոնք նախատեսված են միայն լարվածության տեղային օջախների մարմանը: Միանգամայն սնանկ են այն միջոցառումները, որ ներկայումս իրականացվում են ԼՂԻՄ-ում: Այդպիսի քաղաքականության շարունակումը կարող է ունենալ ծանր հետևանքներ, որոնք կհարվածեն նորացվող ֆեդերացիային:

Երկրում ազգամիջյան հարաբերությունների կարգավորման հիմքում, վերջապես, պետք է դրվեն ազգերի ինքնորոշման, ժողովրդի կամքի ազատ արտահայտման իրավունքի հարգման սկզբունքները: Ցանկացած այլ մոտեցում դատապարտված է անհաջողության:

Դիմելով ԽՄԿԿ XXVIII համագումարին, ամբողջ կուսակցությանը, Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի ընդլայնված պլենումը, արտահայտելով կոմունիստների ու ամբողջ հայ ժողովրդի կամքը, անհրաժեշտ է համարում այնպիսի անհետաձգելի միջոցառումների իրականացումը, որոնք նպատակամղված լինեն ԼՂԻՄ-ի և ամբողջ ռեգիոնի իրադրության կայունացմանը: Այդ միջոցառումներից են.

1. Վերականգնել ԼՂԻՄ-ի խորհրդային իշխանության մարզային ու շրջանային մարմինների և կուսակցական կոմիտեների ամբողջ գործունեությունը, արձակել Ադրբեջանի Գերագույն խորհրդի ստեղծած ԼՂԻՄ-ի հանրապետական ապօրինի կազմկոմիտեն:

2. Չեղյալ հայտարարել Բաքվի հունվարյան իրադարձությունների կապակցությամբ ԼՂԻՄ-ում մտցված արտակարգ դրությունը, զորքերը դուրս բերել ԼՂԻՄ-ից, դրանք տեղաբաշխել ԼՂԻՄ-ի և Ադրբեջանի միջև ընկած սահմանի երկայնքով և օգտագործել ԼՂԻՄ-ի ու Հայաստանի միջև անխափան տրանսպորտային հաղորդակցության ապահովման համար, բացել Ստեփանակերտ—Լաչին—Գորիս ճանապարհը:

3. ԽՍՀՄ պրեզիդենտի անձնական ներկայացուցչի մասնակցությամբ ԼՂԻՄ-ի և Ադրբեջանի, Հայաստանի և Ադրբեջանի միջև բանակցություններ անցկացնել փոխադարձ հետաքրքրություն ներկայացնող բոլոր հարցերի շուրջը:

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի ընդլայնված պլենումը հույս է հայտնում, որ սույն դիմումը ըմբռնումով կընդունեն համագումարի այն պատվիրակները, որոնք շահագրգռված են մեր հասարակության համախմբվածության ամրապնդմամբ:

**Ընդունված է միաձայն, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1990 թվականի հունիսի 28-ին կայացած ընդլայնված պլենումում:**

---

## Տնտեսական մեխանիզմ. պրոբլեմներ և հեռանկարներ

# ԻՆՔՆԱԿԱՐԳԱՎՈՐՎՈՂ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԵՐԸ ՇՈՒԿԱՅԱԿԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**

ԵՐԿՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՓՈՒԼԸ բնորոշվում է նրանով, որ ամբողջ հասարակությունը ներքաշված է տնտեսական ու հոգևոր նորացման գործընթացի մեջ, ապրում է արմատական բարեփոխումների մի ժամանակաշրջան, որը կկանխորոշի նրա կենսագործունեությունը գալիք տասնամյակներում: Այս պայմաններում առանձնապես սուր են դրսևորվում սոցիալական հակասությունները, մանավանդ նրանք, որոնք նախկինում մղված են եղել հասարակական գիտակցության խորքերը և քողարկվել գաղափարախոսական կարգախոսներով:

Միաժամանակ երևան եկող քաղաքական անկայունությունն ընդունակ է հօդս ցնդեցնել բարենորոգչական ողջ գործունեությունը: Բնորոշ է, որ այսօր քաղաքական հնչողություն են ձեռք բերել տնտեսական կյանքի, թվում է, թե ամենահասարակ պրոբլեմները: Տնտեսական մեխանիզմի անհաշվեկշռվածությունը, երբ հին կառուցվածքները այլևս չեն գործում լրիվ ծավալով, իսկ նորերը դեռ չեն ներդրվել, սպառողական շուկայի, գնագոյացման համակարգի քայքայումը, ինֆլյացիոն միտումների սաստկացումը՝ այս ամենը, ժողովրդի ակտիվության աճի պայմաններում, ցավոք, հանգեցնում է նաև ոչ միշտ վերահսկելի հույզերի արթնացման:

Իրավիճակը տագնապահարույց է, սակայն դրան պետք է վերաբերվել շրջահայաց ու սթափ: Դժվարությունները լուրջ են, բայց ոչ ճակատագրական: Դրանցից շատերը, ինչ խոսք, արդյունք են տարիներով կուտակված ժողովրդական արդար վրդովմունքի, սակայն որոշ բան նաև տնտեսական պատրանքներով տարվելու, ծառացած բոլոր պրոբլեմները մեկ հարվածով, ամենակարճ ժամկետում լուծելու ձգտման հետևանք է: Միանգամայն ակնհայտ են մեր զարգացման օբյեկտիվ դժվարությունները, նախկին քարացած տնտեսական կառուցվածքների դիմադրությունը, բայց չէ որ ձախողումների պատճառը հաճախ սուբյեկտիվ վրիպումներն են, տնտեսագիտական տեսության թերզարգացածությունը:

Հարկ է խոստովանել, որ կառուցված սոցիալիստական հասարակարգը իր սոցիալ-տնտեսական զարգացմամբ զգալիորեն հետ է մնում կապիտալիստական երկրներից (ընդ որում, այդ հետամնացությունն աճում է): Դրությունը շտկելու բազմաթիվ փորձերն արդյունք չտվին, իսկ 80-ական թվականների կեսերին երկիրը հասավ նախաճգնաժամային վիճակի և անդունդը չգլորվեց միայն 1985-ի ապրիլի շնորհիվ: Տասներկուերորդ հնգամյակի (1986—1990 թթ.) ամբողջ իմաստը հանգեցվեց դեպի այդ անդունդ երկրի սողքը կասեցնելուն: Այս ամենը ստիպում է լրջորեն գնահատել ստեղծված կացության հաղթահարման իրական հնարավորությունները:

---

*ՊԵՏՐՈՍՅԱՆ ՎԼԱԴԻՄԻՐ ՏԻԳՐԱՆԻ— Տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր, Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի ամբիոնի վարիչ:*

Առկա վիճակից ելքը մեծավ մասամբ տեսնում են ի դեմս տնտեսական և սոցիալական արդյունավետության զուգակցման մեխանիզմի, դրա տնտեսական բաղադրիչը համարելով մեր հասարակության կազմակերպման միջոց, իսկ սոցիալականը՝ նպատակ: Այսպիսի մոտեցման շրջանակներում առանձնահատուկ սրություն է ստացել պլանի և շուկայի հարաբերակցության հարցը: Բավական տարածված է այն տեսակետը, թե տնտեսական կարգավորման նշված երկու մեխանիզմները բացարձակապես անհամատեղելի են, և այդ իսկ պատճառով մենք անխուսափելիորեն պետք է ընտրություն կատարենք. կամ պլան, կամ շուկա: Նման դիրքորոշումը մեզ ճիշտ չի թվում: Պլանը և շուկան կարողեն հիանալիորեն գոյակցել տնտեսական ցանկացած համակարգի շրջանակներում՝ յուրաքանչյուրը կատարելով իր դերը, փոխգործակցելով և մեկը մյուսին հարստացնելով: Ավելին, արտադրողական ուժերի զարգացման ժամանակակից փուլում ոչ պլանը, ոչ էլ շուկան պարզապես չեն կարող միայնակ լուծել տնտեսության զարգացման պրոբլեմները: Ժամանակակից պայմաններում ոչ մի կերպ յոլա չես գնա առանց երկարաժամկետ ծրագրերի, զարգացման ստրատեգիական կոնցեպցիաների և, իհարկե, սոցիալական ապահովության: Ակներև է, որ շուկան սկզբունքորեն ի վիճակի չէ լուծելու նման խնդիրներ, ուստի պլանավորման առաջնայնությունն այստեղ անվիճելի է:

Միևնույն ժամանակ, զանազան ապրանքների թողարկման ավելացմանը, դրանց որակի բարձրացմանն առնչվող մի ամբողջ շարք տնտեսական խնդիրներ կարող են հաջողությամբ լուծվել կառավարման ճկուն կառուցվածքների հիման վրա գործող ազատ շուկայի պայմաններում:

Առաջին հայացքից տարօրինակ զուգակցություն է. կառավարման շարժուն համակարգի վրա հիմնված շուկա, և ճկուն կառուցվածքներ, որոնք գործում են փոխանակման ու բաշխման հարաբերությունների շրջանակներում: Սակայն հենց այսպիսի զուգակցության շնորհիվ է շուկան դառնում պլանային հարաբերությունների մեխանիզմ, թեև այդ հարաբերությունների իրացման սկզբունքն արդեն կենտրոնացված կարգով վերևից տրվող ֆոնդերն ու լիմիտները չեն, այլ ապրանքների մի քանակության համարժեքային փոխանակությունը մեկ ուրիշի հետ: Այսպես են պատկերացվում տնտեսական գործունեության ելակետային այն հիմունքները, որոնք կարող են մեծապես կանխորոշել տնտեսական համակարգի մնացած բոլոր օղակներում կառավարչական ինքնուրույն որոշումների ընդունումը:

Վերակառուցողական գաղափարների զարգացումը և տնտեսավարման վերջին տարիների փորձը ցույց տվեցին, որ տնտեսական կազմակերպությունների աշխատանքի բարելավման բնագավառում մեր բոլոր մտադրությունները հանգում են ինքնակարգավորվող համակարգերի ստեղծմանը, որոնցում ներդաշնակորեն զուգակցվում են ինչպես պետական առաջադրանքների, այնպես էլ պայմանագրային պատվերների կատարման արտադրական ծրագրերը: Այս գործը դյուրին չէ, եթե հաշվի առնենք, որ դրա հաջող իրականացման համար անհրաժեշտ է լուծել մի ամբողջ խումբ փոխկապակցված հարցերի և դրանց թվում հիմնարար մեթոդաբանական այնպիսի պրոբլեմներ, ինչպես սեփականության հարաբերակցությունը աշխատողների տարբեր խմբերի իրավունքների ու պարտականությունների հետ, կազմակերպությունների տնտեսական ինքնուրույնության ընդլայնումը և սոցիալական արդարության սկզբունքի պահպանումը: Վերջապես, անհրաժեշտ է իմաստավորել տնտեսական համակարգի ինքնակարգավորման բուն մեխանիզմը այն պայմաններում, երբ համառորեն առաջադրվում է սոցիալիստական արտադրաեղանակի և կապիտալիստական տնտեսավարման տարրերի համատեղման գաղափարը: Նշված խնդիրները լուծելիս կարևոր է, որ փորձենք խուսափել տնտեսական և քաղաքական պատրանքներից: Չի կարելի ներկայացնել ցանկալին իբրև իրագործելի: Այստեղ առաջին հերթին պետք է ուշադրությունը բևեռել սոցիալիստական և կապիտալիստական արտադրաեղանակների տարրերի արդյունավետ համատեղման հնարավորության վրա: Կարծում ենք, որ դա այնքան էլ հեշտ հարց չէ, ինչպես հաճախ փորձում են ներկայացնել: Հիմնական բարդությունն այն է, որ քանի դեռ չկա արտադրական օբյեկտի կոնկրետ սեփականատեր, ըստ էության չկա նաև եռանդուն տնտեսավարմամբ և ճշգրիտ վերահսկողությամբ շահագրգռված անհատ: Կառավարման բոլոր մակարդակներում աշխատողները ժամանակավոր մարդիկ են, որոնք այս կամ այն պաշտոնում գտնվելու ընթացքում ավելի շատ մտահոգված են իրենց այսօրվա վիճակով, քան արտադրության զարգացման հեռանկարներով: Որպես արդյունք՝ ստեղծվում է տնտեսության զարգացման նպատակամբ հոգատա-



րության պատրանք, այլ ոչ թե այդ զարգացումը խթանող համակարգ: Այս հանգամանքը մեզ թվում է չափազանց կարևոր, և քանի դեռ մենք ամոթխածորեն կշրջանցենք այն՝ քողարկվելով սոցիալիստական արտադրաեղանակի որոշակի «անխախտ» հիմքերի պարտադիր պահպանության կարգախոսներով, շատ դժվար կլինի պրակտիկայում ներդնել տնտեսական առաջադիմության նպատակամբ կապիտալիստական արտադրաեղանակին հատուկ շահագրգռության տարրերը: Միժամանակ պետք է նկատի ունենալ, որ ինքնակարգավորվող տնտեսական համակարգերի ստեղծման այս նախնական հարցերը վճռելուց հետո հարկ կլինի լուծել տնտեսավարման ստրատեգիական և տակտիկական բազմաթիվ խնդիրներ: Այստեղ շատ կարևոր է երկրի շուկայի կազմավորման տնտեսական մեկնաբանության հարցը: Համաշխարհային պրակտիկայում երկար ժամանակ իշխում էր ամերիկացի տնտեսագետների կոնցեպցիան, համաձայն որի առաջնային հասկացություն է ընդհանուր շուկան՝ բաղկացած տարբեր ազգային շուկաներից (տե՛ս Очури У.. Методы организации производства (Японский и американский подходы М.. Экономика, 1984, с. 74): Եվ միայն վերջերս ճանաչման արժանացավ 1984 թ. Նոբելյան մրցանակի դափնեկիր Մորիս Ալլեի գլխավորած տնտեսագետների ֆրանսիական դպրոցը: Ի տարբերություն իրենից միանշանակ համընդհանուր շուկա ներկայացնող «գլոբալ էկոնոմիկայի», որին դիմում են բոլոր տնտեսական գործակալները, Մ. Ալլեի մոդելը տարբեր ապրանքների շուկաների համակարգ է, ընդ որում, միևնույն ապրանքը կարող է վաճառվել և գնվել տարբեր շուկաներում:

Մ. Ալլեի մոդելում գոյություն չունի գների միասնական հավաքակազմ տնտեսական համակարգի բոլոր մասնակիցների (արտադրողների և սպառողների) համար, և առք ու վաճառքի յուրաքանչյուր գործողությանը համապատասխանում է ուրույն պայմանագրային գին, որը որոշվում է տվյալ կոնկրետ շուկայում պահանջարկի և առաջարկի փոխազդեցությամբ: Ավելին, փոխանակման գործողությունները չեն իրականացվում միանգամից, ինչպես այդ նախատեսված է տնտեսության հավասարակշռման մոդելների մեծ մասում, այն տեղի է ունենում անընդհատ, և գների տարբեր հավաքակազմերի պայմաններում, ժամանակադրման հետևողական պահպանմամբ համաձայնագրերի իրականացմանը զուգընթաց տնտեսությունը հավասարակշռվում է:

Ահա հենց այստեղով է անցնում կոնցեպտուալ ջրբաժանը «շուկայական տընտեսության» մոդելի և Մ. Ալլեի «շուկաների տնտեսություն» մոդելի միջև: Եթե առաջինը կապիտալիստական տնտեսության վերլուծությունն է **«կայուն կանոնակարգի»** մեջ իրադրության դանդաղ փոփոխման պայմաններում, ապա երկրորդ մոդելը մեզ մոտեցնում է գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում ժամանակակից ռեալ կապիտալիստական տնտեսության գործունեության հիմքերի ըմբռնմանը, երբ երևան են գալիս նոր տեխնոլոգիաներ, նոր շուկաներ: Ըստ էության Մ. Ալլեն նկարագրել է տնտեսական համակարգի շարժման ապակենտրոնացված մեխանիզմը դեպի հավասարակշռություն, որը կարող է կիրառվել ոչ միայն մրցակցային, այլև մոնոպոլիստական տնտեսության, իր մեջ կենտրոնացված պլանավորման և ազատ շուկայի տարրեր պարունակող տնտեսական մեխանիզմի վերլուծության համար:

Շուկայական տնտեսության զարգացման պայմաններում ազգային էկոնոմիկայի ձևավորման ու կարգավորման գործընթացների ըմբռնման վերը շարադրված կոնցեպցիան արդեն ընդունվել է ի կատարումն Եվրոպական տնտեսական ընկերակցության (ԵՏԸ) գործունեության շրջանակներում: Եթե տնտեսական փոխօգնության խորհրդի (ՏՓԽ) և ԵՏԸ համագործակցության գործընթացն առարկայական ձևեր ընդունի, ապա ՏՓԽ-ի անդամ երկրներին հարկ կլինի ամենակարճ ժամկետներում գնահատել իրենց ազգային շուկաներում տնտեսության կառավարման ֆրանսիական մոդելի ներդրման հնարավորությունները:

Ըստ երևույթին մեր երկրի մասշտաբով էլ անհրաժեշտություն կառաջանա գնահատել այս համակարգի կիրառելիությունը տնտեսական պրակտիկայում: Ֆրանսիացի տնտեսագետների կոնցեպցիայի համաձայն, տնտեսական համակարգի մեկնակետային և կենտրոնական տարրը ազգային շուկան է, որոնց միագումարությունը գոյացնում է ազգամիջյան (համազգային) շուկա: Սա, մեր կարծիքով, շատ կարևոր ճշտում է, քանզի ակներև է, որ նաև մեր հսկայական երկրի մասշտաբով մեկնակետ պետք է լինի հանրապետական շուկայի կազմավորման

գործընթացը, իսկ այդպիսի շուկաների ամբողջությունը կկազմի երկրի ընդհանուր շուկան: Բնականաբար, հետագայում կարող են լինել նաև հակադարձ ազդեցություններ, բայց որոնք միայն ճշգրտում, այլ ոչ թե կազմավորում են ազգային շուկայի ելակետային կառուցվածքը: Շուկայի կազմավորման այսպիսի հետևողականության շնորհիվ հաշվի կառնվեն ազգային-տերիտորիալ հնարավորությունները, որոնք և հետագայում կարող են դառնալ միջհանրապետական շուկայական հարաբերությունների հիմք: Նման կազմավորման փորձ է կատարվել Ֆրանսիայում, որը շուկայական էկոնոմիկային անցնելիս, կարող է կիրառվել մեր մշակումներում:

Խորհրդային Միությունում շուկայական տնտեսության սահմանների ընդլայնման և սեփականության մի քանի ձևերի գործողության պայմաններում ինքնակարգավորվող տնտեսական համակարգերի կազմակերպումը իրողություն է դառնում: Սակայն այդ հնարավորության գործնական իրականացումը կապված է նաև տնտեսական կառավարման բուն համակարգին առնչվող մեծաթիվ խնդիրների լուծման հետ: Կարելի է առանձնացնել այդ ոլորտին պատկանող հարցերի հետևյալ հիմնական խմբերը. տնտեսական կառավարման փիլիսոփայություն, կառավարման ստրատեգիա, կազմակերպում և տեխնոլոգիա ձեռնարկություններում ու միավորումներում, աշխատանքային ռեսուրսների կառավարում, վարչական գործելակերպի խնդիրներ, գիտական հետազոտությունների և մշակումների կառավարում, արտադրողական գործընթացների ավտոմատացման կառավարում, ֆինանսների կառավարում, մարկետինգ:

Փորձենք մեկնաբանել հարցերի առանձին կարևորագույն խմբերի բովանդակությունը, ինչը հնարավորություն կտա որոշակի իմաստով ճշգրտել ինքնակարգավորվող տնտեսական համակարգերի կազմավորման բնույթն ու բարդությունը:

Սմենից առաջ նշենք հարցերի բնույթը ճշտող մի հանգամանք: Վերջին ժամանակներս հրապարակումներ են երևացել, որոնցում առանձնացվում և համառոտ հանձնարարվում են ԱՄՆ-ում տարածում ստացած ինքնակարգավորվող տնտեսական համակարգերի մեթոդները: Այստեղ անհրաժեշտ է նկատել, որ ամերիկացի գիտնականներ Վանեկի և Սվեյնարի դասական աշխատություններում իբրև տարբերակիչ գիծ շեշտվում է աշխատողների մասնակցությունը ձեռնարկությունների կառավարման այդ աջարակվող համակարգերում: Ինքնակարգավորման մյուս բաղադրիչները նույնական են եվրոպական կամ ճապոնական համակարգերի հետ, որոնց բուն մեխանիզմը ճշտելիս տնտեսական կառավարման ամերիկյան համակարգերի խիստ առանձնացումը նպատակահարմար չէ:

Անդրադառնանք տնտեսական կառավարման ժամանակակից փիլիսոփայության առանձնահատկություններին: Խորհրդային Միությունում վերակառուցմամբ հարուցված միանգամայն նոր հանգամանքներն ու պայմանները առաջացրել են աննախադեպ իրադրություն: Լճացման ժամանակաշրջանի ղեկավարներից ազատվելը կարող է արդյունաբերության առաջատար ճյուղերում երկիրը թողնել առանց կառավարչական բարձրագույն օղակի փորձված մասնագետների: Հնարավոր քաոսի պայմաններում երկրի տնտեսության զարգացման հոգսն ընկնում է երիտասարդ ադմինիստրատորների ուսերին: Նման իրադրության մեջ կառավարման նոր կոնցեպցիայի առանցքը պետք է դառնա կառավարիչների առանձնած սոցիալական պատասխանատվության ճանաչումը: Մենեջմենթի համաշխարհային պրակտիկան վկայում է, որ տնտեսական յուրաքանչյուր կազմակերպություն, անկախ իր չափերից, շահույթ ստանալուց բացի պետք է ունենա որոշակի նպատակներ, որոնք արդարացնում են իր գոյությունը: Եթե ղեկավարը հասկանում է այս բանը, ապա կարող է ծառայողների գիտակցությանը հասցնել, թե ինչի է ձգտում կազմակերպությունը (ֆիրման, միավորումը, կոնցեռնը, ընկերությունը): Եվ եթե նրա ենթակաները գիտակցեն, որ աշխատում են ոչ միայն օրվա հացի համար, ապա հանուն ընդհանուր նպատակի՝ առավել լարված համատեղ աշխատանքի խթան կստանան: Կառավարչական գործունեության բնագավառում ելակետային այս հիմունքները հսկայական նշանակություն ունեն և առավել վառ կերպով դրսևորվել են Ճապոնիայում: Այսպես, 1966 թվականին «Մացուսիտա» ընկերությունը և «Ֆիլիպս» կորպորացիան համատեղ ձեռնարկություն հիմնեցին փայատիրական հավասար իրավունքներով: Ըստ համաձայնագրի, տեխնոլոգիական աջակցության դիմաց «Ֆիլիպս» կորպորացիային լրացուցիչ մասհանվում էր նոր ձեռնարկության շահույթի 3 տոկոսը: Հետագայում «Մացուսիտա» ընկերությունը հասավ աննախադեպ հաջողության՝ համատեղ ձեռնարկության մասին համաձայնագրի մեջ մտցնելով նոր դրույթ, ըստ որի նա լրացուցիչ մասհանումներ էր ստանալու ծառայության՝ կառավարման փորձի փոխանցման դիմաց: Ի վերջո «Ֆիլիպս»-ը համաձայնեց, որ նման կարգի ներդրումը արժանի է հատուկ գնահատման:

Կառավարման փիլիսոփայության մասին բանավեճը մինչև օրս չի դադարել. այժմ շրջադարձ է կատարվում մենեջմենթի ստրատեգիական ուղղությունների քննարկման կողմը: Մենեջմենթի ստրատեգիա ասելով մեծ մասամբ հասկանում են տնտեսական կազմակերպության վաղվա վիճակի մասին պատկերացում տվող ռեսուրսների երկարաժամկետ բաշխման սկզբունքների մշակում: Այստեղ հնարավոր են մի քանի մոտեցումներ: Առաջին դեպքում կառավարման համակարգի ստեղծումը կարող է թելադրված լինել արտադրությունը դիվերսիֆիկացնելու, այսինքն մեծաթիվ, միմյանց հետ չկապված արտադրությունների միաժամանակյա զարգացման, թողարկվող արտադրանքի տեսականու ընդլայնման ձգտմամբ: Համաշխարհային պրակտիկայում շատ ընկերություններ լավ արդյունքների են հասել այս ստրատեգիային հետևելով, նպատակ ունենալով նոր ապրանքներ առաջարկել նոր շուկաներում: Այդ գործընթացում դիվերսիֆիկացիայի զգալի մակարդակ ձեռք բերվեց միագումար արդյունքի շնորհիվ, որն առաջանում է արդեն մշակված տեխնոլոգիայի լայն կիրառության դեպքում:

Ինքնակարգավորվող տնտեսական համակարգերի ստեղծման տարատեսակներից մեկը կառավարման «քնեռացած» ստրատեգիա կիրառող ընկերությունների գործունեությունն է (տե՛ս Ансофф И., Стратегическое управление.— М.: Экономика, 1989, с. 56): Այս ընկերությունների գործունեության արդյունքները զգալիորեն ավելի բարձր են, քան հիշյալ ստրատեգիային չհետևողներինը:

Պատճառները հետևյալն են՝ «Պորտֆելի հաշվեկշռվածության» տեսության վրա հիմնված մտածողությունը կառավարչական ստրատեգիայի սահմանումը համարում է անհրաժեշտ: Երբ փոխվում է ձեռնարկատիրական գործունեության ուղղությունը, արդեն զետեղված շատ կապիտալներ սկսում են տեղաշարժվել և վերաբաշխվել: Կապիտալի նոր բաշխումը կոնֆլիկտ է առաջացնում կառավարչական կազմակերպության ներսում, նույնիսկ եթե դա վերաբերում է միայն նյութական ռեսուրսների բաշխմանը: Պատվերների պորտֆելը ձևավորելիս կառավարիչների որոշումները հիմնվում են եկամտի և ռիսկի համադրման վրա: Եթե ենթադրվում է, որ եկամուտները միատեսակ կլինեն, ապա ընտրվում է այն տարբերակը, որն ամենաքիչն է կախված ռիսկի հետ: Այն դեպքում, երբ ռիսկը միջտական է, նախապատվությունը տրվում է ավելի բարձր շահույթ խոստացող տարբերակին: Այլ խոսքով, մենեջերները ձգտում են կանխել ռիսկը: Ենթադրելով, որ իրենց գործողությունները թույլ կտան խուսափել ռիսկից, նրանք սկսում են որոնել վերջնական արդյունքը առավելագույն չափով մեծացնող ստրատեգիա:

Տնտեսական համակարգի ինքնակարգավորումը կազմավորող հարցերի խմբում մեծ նշանակություն ունի աշխատանքի վարձատրությունը: Մեր երկրում գոյություն ունեցող տնտեսավարման պայմանների համեմատ այս հարցը առանձնահատուկ սրություն է ստացել: Հռչակելով «յուրաքանչյուրին ըստ աշխատանքի» վարձատրության հիմնադրույթը, մենք չշտեցինք. ըստ աշխատանքի ծախսերի՞, թե՞ ըստ աշխատանքի արդյունքների: Սրանք սկզբունքորեն տարբեր մոտեցումներ են: Նախկինում կողմնորոշիչը աշխատանքի ծախսերն էին, այժմ շրջադարձ է նկատվում դեպի աշխատանքի արդյունքները: Եվ այստեղ շատ կարևոր է պատասխանել հետևյալ հարցին. որո՞նք են ընտրության թույլատրելի հնարավորությունները առանձին ձեռնարկությունների և միավորումների մակարդակով տնտեսական համակարգի ինքնակարգավորման համար: Այստեղ երկու փոխկապակցված կողմերը միանգամայն ակնհայտ են. արտադրանքի թողարկման պլանի կազմավորման ազատություն և արտադրության ռեսուրսային ապահովման ընտրության ազատություն: Առաջինին ենթադրվում է հասնել պետպատվերի աստիճանական կրճատման և պայմանագրային արտադրանքի թողարկման բաժնի ավելացման հաշվին, երկրորդին՝ արտադրության միջոցների և հանքային հումքի մեծածախ առևտրի անցնելու շնորհիվ: Սակայն այս երկու ուղղություններն էլ տասներքերորդ հնգամյակի (1991—1995 թթ.) պլանում նախատեսված է զարգացնել շատ սահմանափակ շրջանակներում: Հետևաբար, ինքնակարգավորվող տնտեսական հա-

մակարգերի ներդրման իրական հնարավորությունները դեռևս ծայրաստիճան սուղ են: Տեղին է հարց տալ. ուրեմն ինչպե՞ս ենք մենք պատկերացնում տնտեսական համակարգերի ստեղծումը առանց դրանց գործունեության համար համապատասխան պայմանների ապահովման:

Խելամիտ պատասխան տալ այս հարցին անհնար է: Բոլոր դեպքերում դրանք դարձյալ կլինեն տնտեսական խուսահնարքներ, այլ ոչ թե տնտեսապես տրամաբանված մոդելներ: Այս պայմաններում չափազանց վտանգավոր է հռչակել ըստ էության անհասանելի տնտեսական բարեկեցություն հեռանկարում՝ ներկայի տնտեսավարման համարյա անփոփոխ մեխանիզմի դեպքում: Եվ ամենից առաջ այս անհամապատասխանությունը կզգան խառը կապիտալով ձեռնարկությունները, երբ արտասահմանյան պարտնյորի տնտեսական վերնաշենքի պայմանները չեն համընկնի տնտեսավարման մեր պրակտիկային: Իհարկե, որոշ դեպքերում հնարավոր են բացառություններ, և ցանկալիին մոտ արդյունքը կստացվի: Սակայն դա մեկ անգամ ևս կհաստատի միայն այդ միտքը, որ մեր երկրում տնտեսական գործունեության ընդհանուր տիպային պայմանները չեն նպաստում ինքնակարգավորման հիմունքների զարգացմանը: Այլ կերպ ասած, հրատապ է դարձել յուրաքանչյուր փուլում արտադրական համակարգերի գործունեության համապատասխան պայմաններով ապահովված տնտեսական ինքնակարգավորման անցնելու ծրագրի մշակումը: Տնտհաշվարկի անցնող յուրաքանչյուր միութենական հանրապետությունում նման ծրագիր ըստ երևույթին կարող է ստեղծվել հանրապետության պետպլանին կից ժամանակավոր գիտաարտադրական կոլեկտիվի ուժերով: Հայկական ԽՍՀ-ում այս հարցերի մշակման անհետաձգելիությունը թելադրված է այստեղ ազատ ձեռնարկության գոտի կազմակերպելու մտադրությամբ, «Եվրոպոլիս» նոր քաղաքի կառուցման նախագծի իրականացմամբ, արտասահմանյան պարտնյորների հետ համատեղ տնտեսական ձեռնարկության գաղափարի զարգացմամբ: Բնականաբար, տնտեսական այսպիսի քաղաքականության իրագործման ընթացքում առաջ կգան բազմաթիվ ֆինանսական, իրավական և կազմակերպական հարցեր, որոնց քննարկումն արդեն ելնում է տվյալ հոդվածի շրջանակներից:

---

# ԱՐՏԱՔԻՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՏՈՒԿ ԿԱՐԳԱՎԻՃԱԿ՝ ԱՂԵՏԻ ԳՈՏՈՒՆ

Թ. ԹՈՐՈՍՅԱՆ
Ա. ՄՈՍԵՍՈՎ

Երկրաշարժի հետեվանքով Հայկական ԽՍՀ կորցրեց իր ազգային հարստության 1/3-ը, այն ընդգրկեց հանրապետության տարածքի մոտ 40 տոկոսը՝ մեկ միլիոն բնակչությամբ: Տուժեց 20 վարչական շրջան, 342 գյուղ, որից 58-ը ամբողջովին կործանվեց, զոհվեցին ու վիրավորվեցին տասնյակ հազարավոր մարդիկ, կես միլիոնից ավելին մնաց անօթևան, մոտ 200 հազարը զրկվեց աշխատատեղից: Խաթարվեցին 170 արդյունաբերական ձեռնարկություններ, որից 130-ը՝ հիմնովին, 209 խորհտնտեսությունների և 90 կոլտնտեսությունների գործունեությունը: Նյութական կորուստների ընդհանուր գումարը կազմեց ավելի քան 12 մլրդ ռուբլի: Դրությունն ավելի սրվեց և բարդացավ Ադրբեջանից 250 հազար փախստականների ներհոսի, հարևան հանրապետության կողմից պարբերաբար կրկնվող տնտեսական շրջափակման պատճառով: Այս պայմաններում հանրապետության բնակչության արտահոսի միտում է նկատվում դեպի երկրի այլ շրջաններ և արտասահման: Թոշակառու փախստականների ներհոսի և երկրաշարժից տուժած հաշմանդամների թվի ավելացմամբ բնակչության կառուցվածքում նկատելիորեն աճել է անաշխատունակ բնակչության բաժինը:

Միությունը հսկայական օգնություն է ցույց տալիս հանրապետությանը, զգալի է աշխարհի 113 երկրներից ստացված աջակցությունը:

Երկրաշարժի հետևանքները ենթադրվում էր վերացնել 2 տարվա ընթացքում: Սակայն ակնհայտ է, որ վերականգնման գործընթացը կպահանջի ավելի երկար ժամանակահատված: Նկատի ունենալով ամբողջ երկրում ծառացած տնտեսական դժվարությունները, Հայաստանի սոցիալ-տնտեսական պրոբլեմները մոտ ապագայում անհնար է լուծել առանց արտասահմանյան երկրների օգնության և տեխնիկական միջամտության: Ուստի ներկայիս առաջնահերթ խնդիրը միջազգային օգնության գործուն փոխակերպումն է երկարատև արտադրատնտեսական համագործակցության:

Երկրաշարժից հետո ձևավորված միջազգային սոցիալ-հոգեբանական բարենպաստ մթնոլորտը անհրաժեշտ է նպատակաուղղել հանրապետության տնտեսության զարգացման գործին: Այսօր Հայկական ԽՍՀ առավել քան այլ հանրապետություն, որպես լրացուցիչ միջոց, արտասահմանյան կապիտալի ներհոսի կարիք ունի՝ երկրաշարժի հետևանքների վերացման, տուժած շրջանների տնտեսության վերականգնման ու զարգացման համար: Ի դեպ, արտասահմանյան կապիտալի մուտքը հանրապետություն հիմնականում պայմանավորված է զգալի հնարավորություններ և միջոցներ ունեցող ազդեցիկ սփյուռքի առակությամբ:

Առկա խնդիրների հաջող լուծման և տնտեսությունը ճգնաժամային իրավիճակից դուրս բերելու համար օբյեկտիվորեն անհրաժեշտ է հանրապետության աղետի գոտուն արտաքին տնտեսական հատուկ կարգավիճակի իրավունք տալ: Վերջինիս իմաստը արտասահմանյան կապիտալի ներհոսի բարենպաստ պայմանների ստեղծումն է: Այն ենթադրում է իրականացնել տնտեսական բնույթի օրենսդրական և վարչական մի շարք միջոցառումներ, այն է՝ հաստատել հարկավորման տարբե-

---

*ԹՈՐՈՍՅԱՆ ԹՈՐՈՍ ՇԱՀԵՆԻ — ՀԽՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի փոխքարտուղար, տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր*

*ՄՈՍԵՍՈՎ ԱԼԵՔՍԱՆԴՐ ՇԱՀԵՆԻ — նույն ինստիտուտի գիտաշխատող, տնտեսագիտության թեկնածու*

րակված համակարգեր, սահմանել արտասահմանից ներմուծվող ռեսուրսների, տեխնիկայի և այլ ապրանքների արտոնյալ մաքսատուրք, տարածքների և ենթակառուցվածքի օբյեկտների վարձավճարի տարբեր արտոնություններ և ամորտիզացիայի արագացված ժամկետներ, կիրառել ռեսուրսների օգտագործման ցածր դրույքներ և պայմանագրային ու շուկայական գներ, ստեղծել վարկավորման և ապահովագըրման բարենպաստ պայմաններ և, վերջապես, արտասահմանյան գործընկերների ներդրած կապիտալի և կառուցած օբյեկտների համար հուսալի երաշխիքներ տալ:

Արտաքին տնտեսական հատուկ կարգավիճակը նախ անհրաժեշտ է՝ հանրապետությունում ակտիվացնելու համատեղ ձեռնարկությունների կազմակերպման գործընթացը: Ներկայումս միութենական հանրապետությունների մեջ դրանց թվով Հայկական ԽՍՀ-ն զբաղեցնում է վերջին տեղերից մեկը: Այստեղ գրանցված է միայն 11 համատեղ ձեռնարկություն, որից 4-ը՝ մասնաճյուղ է: Դրանց թվաքանակի ավելացումը արգելակվում է մի շարք օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառներով, որոնք միաժամանակ բնութագրում են ամբողջ երկրում և ռեգիոնում տիրող քաղաքական և տնտեսական բարդ իրավիճակը: Հայտնի սահմանափակումները, նախ վերաբերում են ռուբլու անշրջադարձելիությանը: Բացի այդ, ռեգիոնում քաղաքացիական պատերազմի շեմին հասցված քաղաքական անկայունությունը, տնտեսական շրջափակումները, արտակարգ դրությունը, մարդկանց և բեռների տեղափոխումը սահմանափակելու բացասական երևույթները խոչընդոտում են ազատ ձեռնարկչության զարգացմանը և ամենևին չեն նպաստում արտասահմանյան կապիտալի ներհոսին: Սակայն արևմտյան բիզնեսի այն ներկայացուցիչները, որոնք ներկայիս բարդ պայմաններում անգամ խիզախում են իրենց միջոցները ներդնել հանրապետության տնտեսության մեջ, հանդիպում են նաև կառավարման տիրող մեխանիզմի դժվարհաղթահարելի արգելքների, որոնք խորանում են կարգավորող օրենսդրության անկատարությամբ: Օրենքները հաճախ են փոխարինում իրար, ընթացքի ժամանակ դրանց կատարելագործումը ապակողմնորոշում է տնտեսավարման սուբյեկտներին. օրինակ, փաստաթղթերի մշակման գործընթացում դրանք պարբերաբար ձևափոխվում են, երբեմն էլ հակասում միմյանց, անգամ տնտեսական ռեֆորմին:

Համատեղ ձեռնարկությունների ստեղծման ընթացքում ծագում են համապատասխան գործակիցներ փնտրելու և ընտրելու մի ամբողջ շարք պրոբլեմներ: Դրանցից է այնպիսի իրավասու կազմակերպությունների բացակայությունը, որոնք գործնական ծառայություն կմատուցեին, խորհուրդներ, ցուցումներ կտային, կօգնեին անհրաժեշտ փաստաթղթեր կազմել: Չէ՞ որ մեր տնտեսագիտական կադրերը դեռևս մասնագիտորեն պատրաստ չեն արևմտյան գործընկերների հետ երկխոսության: Գոյություն ունի անհամապատասխանություն մեր երկրի և արտասահմանի տեսական ու գործնական տնտեսագիտության մեջ: Արդեն նախնական բանակցությունների փուլում առկա են «կապիտալ», «կանոնադրական ֆոնդ», «արդյունավետություն» և մի շարք այլ հիմնադիր հասկացությունների տարբերություններ: Բիզնեսմեններին զգաստացնում է խորհրդային տնտեսագետների և տնտեսական ղեկավարների՝ մենեջմենթային և գովազդային հիմունքների տարրական իմացության պակասը, վաճառահանման շուկաների կոնյունկտուրայի վերաբերյալ ինֆորմացիայի բացակայությունը, արտադրական և պայմանագրային ցածր կարգապահությունը, գործին չի նպաստում անգամ սանկցիաների բավական խիստ համակարգը:

Կասեցնող գործոնների թվին է դասվում նաև պետական ձեռնարկությունների և կազմակերպությունների գտնվելը մինիստրությունների և գերատեսչությունների ճնշման տակ, որի հետևանքով համատեղ ձեռնարկությունները մասշտաբային տեխնիկական և ինովացիոն նախագծեր իրացնելիս զուրկ են անհրաժեշտ ինքնուրույնությունից և մանևրականությունից: Դրանով համատեղ ձեռնարկությունների ըստեղծման նախաձեռնությունը հաճախ փոխանցվում է կոոպերատիվ շարժմանը, որի միջոցներն ու հնարավորությունները դեռևս սահմանափակ են:

Եվ վերջապես, համատեղ գործունեության ծավալման վրա բացասաբար է անդրադառնում արտադրական ապարատի, տրանսպորտի, հաղորդակցման ցանցի և կապի տեխնիկական մակարդակը: Եթե անգամ տեխնոլոգիական սարքավորումների պրոբլեմը հնարավոր է լուծել համատեղ ձեռնարկության արտասահմանյան մասնակցի միջոցով կանոնադրական ֆոնդի բաժնից դրանք փոխանցմամբ ներմուծելով և տեղակայելով (որը նույնպես արդի պայմաններում բարդ և դժվար գործընթաց է, անգամ մեքենագրական և պատճենահանման մեքենաների միայն ձեռքբերումը պահանջում է հաղթահարել մի շարք դժվարություններ), ապա տրանսպորտահաղորդակցման ապահովվածությունն իր որակով, հուսալիությամբ և այլ պարամետրերով ծայրաստիճան անբավարար է: Նույնը վերաբերում է ենթակառուցվածքի և կենցաղային սպասարկման մյուս տարրերին:

Այսպիսով, հանրապետության տարածքում ու հատկապես աղետի գոտում արտաքին տնտեսական հատուկ ստատուսը, համատեղ ձեռնարկություններ կազմակերպելիս, ենթադրում է մտցնել մի շարք արտոնություններ. աղետի գոտում գործող համատեղ ձեռնարկությունները հարկավորել ոչ թե 2, այլ 5—10 տարի անց:

Տվյալ ձեռնարկության մասնագիտացմանը և կարևորությանը համապատասխան, հարկավորումն իրականացնել տարբերակված՝ առավել կարևոր օբյեկտների և ձեռնարկությունների գործունեությանը բարենպաստ նախադրյալներ ստեղծելու նըպատակով,

արտասահմանյան երկրների (ֆիրմաների) ստեղծած կամ անհատույց օգնությամբ կառուցված ձեռնարկություններն ամբողջովին ազատել հարկավորումից,

աղետի գոտում թույլատրել արտասահմանյան պետություններին, ֆիրմաներին, սփյուռքի ներկայացուցիչներին պատկանող ձեռնարկությունների ազատ գործունեությունը:

Ներմուծվող կապիտալը անհրաժեշտ է ներգրավել հատկապես այն ոլորտներում և բնագավառներում, որտեղ արտասահմանյան ձեռնարկատերերը շահագըրգըռված չեն համատեղ ձեռնարկությունների ստեղծմամբ, սակայն հանրապետությանը դրանք խիստ անհրաժեշտ են: Սա նախատեսում է ձեռնարկությունները ոչ արտադրական ոլորտի և այլ օբյեկտներ պայմանագրային սկզբունքներով (նշելով կոնկրետ ժամկետը և պայմանները) փոխանցել առանձին արտասահմանյան ֆիրմաների՝ երկարատև օգտագործման, եթե հանրապետությունը սեփական ուժերով դրանց հետագա զարգացումը չի կարող ապահովել:

Արտաքին տնտեսական հատուկ ստատուսի հաջող գործունեության համար անհրաժեշտ են նաև մի շարք այլ պայմաններ.

կազմակերպել արտասահմանյան, հատկապես հայկական մեծ համայնքներ ունեցող (ԱՄՆ, Ֆրանսիա և այլն) երկրների հետ օդային ուղիղ, կանոնավոր երթեր,

վերապահել հանրապետության տարածքում արտասահմանյան հայերի քաղաքացիության իրավունքը,

արտասահմանյան քաղաքացիներին, ֆիրմաներին և պետություններին հնարավորություն ընձեռել բանկային հաշիվներ բացելու ԽՍՀՄ արտտնտբանկի հայկական հանրապետական կամ միջազգային հատուկ որևէ բանկում,

թույլատրել հանրապետության բնակչությանը՝ տնօրինելու արտասահմանում բնակվող հարազատներից և բարեկամներից ստացված վալյուտան: Մտցնել արտասահման մեկնելու և ժամանելու պարզեցված կանոններ:

Հանրապետությունում պահանջվող շինարարական մեծ մասշտաբի աշխատանքներն իրականացնելիս նպատակահարմար է ստեղծել բաժնետիրական (թեկուզև պետության կողմից երկրաշարժից տուժածներին տրված միջոցների հաշվին. ի դեպ, հանրապետության բնակչությունից և ձեռնարկություններից շատ կլինեն բաժնետիրական ընկերության ավանդատու, բաժնետեր դառնալու ցանկացողները), այդ թվում միջազգային (հիմնել միջազգային բաժնետիրական ֆոնդ) ընկերություններ: Ընդ որում աշխարհի տարբեր երկրների փորձված մասնագետներին անհրաժեշտ է ընդգրկել շինարարական, երկրաշարժաբանական, հետախուզական աշխատանքներում: Հանրապետության տարբեր շրջաններում շինարարության մեջ, նախագծեր և շինարարական կոնստրուկցիաներ մշակելիս հարկավոր է ներգրավել արտասահմանյան համապատասխան մասնագետների, նախագծողների և շինարարների, անգամ այդ նպատակով ստեղծել համատեղ ձեռնարկություն: Իր լուծմանն է սպասում նաև վալյուտային բորսաների, աճուրդների, միջազգային բանկային խառը կոնսորցիումների, առևտրական համատեղ բանկերի կազմակերպումը:

Արտաքին տնտեսական հատուկ ստատուսի արդյունավետ գործունեության համար անհրաժեշտ անգամ թվարկած պայմանները ցույց են տալիս առաջիկա աշխատանքների բարդ և ծավալուն լինելը: Տնտեսական և արտաքին տնտեսական միջոցառումների համակարգի հաստատման կազմակերպչական և կոորդինացման ամբողջ աշխատանքը, մեր կարծիքով, պետք է ղեկավարի Հայկական ԽՍՀ Մի-

նիստրների խորհրդին առընթեր արտաքին տնտեսական կապերի կոմիտեն, որի ստեղծման անհրաժեշտությունը կյանքն է ապացուցել: Ընդ որում, այն իր տրամադրության տակ պետք է ունենա ժամանակակից սարքավորումներով (համակարգիչներ, տեսահեռատիպեր, բազմացնող սարքեր և այլն) հագեցած ինֆորմացիոն կոորդինացման օրգան:

Արտաքին տնտեսական հատուկ ստատուսը պահանջում է վարչական կարգավորումից անցնել հանրապետության և արտաքին աշխարհի միջև նյութական արժեքների անընդհատ անող հոսքի շուկայական համարժեք ապրանքափոխանակությանը: Հետևաբար, պետք է հստակ պատկերացնել, թե առավել էական փոխադարձ կապեր հաստատելիս ինչպիսի մրցունակ ապրանքներ կամ ծառայության տեսակներ ենք ի վիճակի դուրս բերել միջազգային շուկա: Ներկայումս, ռեգիոնալ շահերից ելնելով, կառավարման հիմնական դերը ձեռնարկություններին կողմնորոշելն է ռացիոնալ և ավելի շահավետ օգտագործել տեղական և ներմուծվող ռեսուրսները, փնտրել և ստեղծել առավել բարենպաստ պայմաններ: Հաշվի առնելով ռեգիոնալ յուրահատկությունները (աշխարհագրական, տնտեսական, պատմական, էթնիկական և այլն), նպատակահարմար է կազմակերպել արտադրական գործունեության այնպիսի տեսակներ, որոնք տեղական և ներմուծվող ռեսուրսների նվազագույն ծախսումներով տան առավելագույն ազգային եկամուտ: Բացի այդ, մենք նկատի ունենք, որ նոր արտադրությունները հագեցվելու են առաջավոր տեխնիկայով և տեխնոլոգիայով, լինելու են գիտատար, ռեսուրսախնայող և էկոլոգիապես անվնաս:

Արտադրության և ծառայության տեսակներից առավել արդյունավետը ընտրելիս հարկ է սահմանել ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում բնական ռեսուրսների ծախսված միավորից ստացվող հատույցի չափերը (համախառն արտադրանք, շահույթ, ազգային եկամուտ և այլն): Ընդ որում, նյութառեսուրսատար կամ ռեսուրսների ծախսի հատույցի այդպիսի ցուցանիշը անհրաժեշտ է կիրառել բնական (տոննա, խոր. մետր և այլն), իսկ վերջնականը՝ իհարկե, արժեքային արտահայտությամբ:

Քննարկենք ռեսուրսների միայն երեք տեսակ՝ էներգիան, ջուրը և աշխատանքը, չնայած սկզբնական բնական ռեսուրսների թվին են դասվում նաև հողը և հումքը (հանքավայրերը, կոնստրուկցիոն նյութերը և այլն): Նշենք, որ հանրապետությունում էներգաապահովման պրոբլեմը հատկապես սրվեց Հայկական ԱէԿ-ի աշխատանքները դադարեցնելուց հետո: Դրա հետ կապված նախատեսվում է ընդլայնել Հրազդանի ՊՇէԿ-ը, ԱէԿ-ը վերամասնագիտացնել ջերմային էլեկտրակայանի: Հանրապետությունում, բավական լայն հնարավորությունների պայմաններում, անբավարար են օգտագործվում էներգամատակարարման ոչ ավանդական աղբյուրները, այն է՝ արեգակի, քամու, երկրակեղևի, կենսազանգվածի էներգիան, որոնք, ի դեպ, կարող են դառնալ համատեղ գործունեության օբյեկտ: Առավել հուսալիությամբ պետք է լուծել հանրապետության ջրամատակարարման պրոբլեմը:

Հանրապետության արդյունաբերության մեջ ընդհանուր ձևով ռեսուրսահատույցի հաշվարկված մեծություններն են. էներգիայից՝ 1,4 հազար ռուբ. (տ պայմանական վառելիք, ջրից՝ 22 հազար ռուբ./մ³, աշխատանքից՝ 20 հազար ռուբ./մարդ: Արդյունաբերության ճյուղերում բավական մեծ են այս ցուցանիշների տատանումները. ցի հաշվարկված մեծություններն են. էներգիայից՝ 1,4 հազար ռուբ./տ պայմանավառելիք (թեթև արդյունաբերություն), ջրից՝ 4,4 (սննդի արդյունաբերություն) և 134,7 հազար ռուբ./մ³ (թեթև արդյունաբերություն), աշխատանքից՝ 15,4 (շինանյութերի արդյունաբերություն) և 44,5 հազար ռուբ./մարդ (սննդի արդյունաբերություն):

Ընթացիկ հնգամյակի տվյալների միջինի հիման վրա հաշվարկված այս մեծությունները նախնական են, սակայն բավական ակնառու է այն փաստը, որ կարելի է համատեղ գործունեության տարբեր տեսակներից սկզբունքորեն որոշել բարենպաստ պայմաններով առաջնայիններ: Ակնհայտ է, որ վառելիքաէներգետիկ ռեսուրսներ ներմուծող մեր հանրապետության տնտեսական զարգացման համար գերադասելի են արտադրության այնպիսի տեսակները, որոնք էներգիայի օգտագործման հավասար քանակի պայմաններում կտան ավելի շատ արտադրանք կամ ազգային եկամուտ: Նույնը վերաբերում է սկզբնական բնական ռեսուրսների մյուս տեսակներին:

Տվյալ հաշվարկներից հետևում է, որ առավելագույն հատույցով էներգիա է ծախսվում թեթև արդյունաբերության մեջ՝ տոննա պայմանական վառելիքից ստացվում է 3,5 անգամ ավելի արժեքով արտադրանք, քան հանրապետության արդյունաբերության մեջ ամբողջվին (4,9 հազար ռուբ.՝ 1,4-ի դիմաց): Այս ճյուղում



ջրի ծախսումներից հատույցը առավել բարձր է՝ 6 անգամ ավելի արդյունաբերության միջինից (134,7 հազար ռուբ.՝ 22,0-ի դիմաց): Հաշվի առնելով, որ թեթև արդյունաբերության մեջ աշխատանքի հատույցը արդյունաբերության միջինից բավական ցածր է, իսկ եթե մյուս ռեսուրսներով (հող և հումք) այս ցուցանիշի մակարդակը նույնն է կամ միջճյուղայինից բարձր, ապա արտաքին տնտեսական գործունեության ակտիվացման միջոցառումների համակարգում տվյալ ճյուղը ստանում է ամենաբարենպաստ կարգավիճակ, հատուկ կարևորելով աշխատանքի արդյունավետության բարձրացումը: Իհարկե, թեթև արդյունաբերության զարգացման համար չի անտեսվելու նաև հումքի ներմուծման գործոնը:

Ընդհակառակը, սննդի արդյունաբերության մեջ էներգիայի (2,2 հազար ռուբ.) և աշխատանքի 44,5 հազար ռուբ.) հատույցը համեմատաբար բարձր է, իսկ ջուրը խիստ շռայլ է ծախսվում (արդյունաբերության միջինից 5 անգամ ավելի): Հետևաբար, այս ճյուղում ստեղծվող համատեղ ձեռնարկություններից միայն այնպիսիներին է անհրաժեշտ արտոնությունների ռեժիմ սահմանել, որոնցում նախատեսվում են ջրամատակարարման պրոգրեսիվ ցուցանիշներ: Խիստ սահմանափակումներ են պահանջում քիմիական արդյունաբերության համատեղ ձեռնարկությունները, որտեղ էներգիայի հատույցը 3 անգամ (1,4-ի դիմաց 0,4 հազար ռուբ.), իսկ ջրինը՝ 1,6 անգամ (22-ի դիմաց 13,3 հազ. ռուբ.) ցածր է արդյունաբերության միջինից, ինչպես նաև գունավոր մետաղաձուլությունը, որտեղ էներգիայի հատույցը 1,8 անգամ, իսկ ջրինը 4,9 անգամ ցածր է ամբողջ արդյունաբերության համապատասխան ցուցանիշներից: Հարկ է ընդգծել, որ առաջարկված սխեմայով ճյուղերը և ենթաճյուղերը, ինչպես նաև այլ ռեսուրսների օգտագործման վիճակը բավական մանրակրկիտ վերլուծելուց հետո միայն կարելի է հանգել վերջնական եզրակացությունների: Ճշգրտման կարիք ունեն նաև մի շարք զուգընթաց գործոնների հաշվառման եղանակները:

Օրինակ, նման մոտեցման դեպքում արժեքային մասը կախված է գների կոնյունկտուրայից: Բացասաբար է անդրադառնում նաև ներքին շուկայում գործող գների անկատարությունը: Այստեղից հետևում է, որ վերջնական մասի չափանիշները (ազգային եկամուտ, համախառն արտադրանք) գերադասելի է սահմանել միջազգային շուկայի գներով: Այս դեպքում, օրինակ, սննդի արդյունաբերության կամ գունավոր մետաղաձուլության արտադրանքը հնարավոր էր ավելի շահութաբեր դարձնել: Առաջադրված չափանիշի ընտրությունը զգալիորեն կախված կլինի նաև քննարկվող ճյուղերի տեխնիկատնտեսական վիճակից: Օրինակ, շինանյութերի արդյունաբերության հատույցի ցածր մակարդակը հիմնականում պայմանավորված է կիրառվող տեխնիկայի և տեխնոլոգիայի հետամնացությամբ, որի հետևանքով վերջնական արդյունքում կորչում է հանքանյութի մոտ 2/3-ը: Արդի տեխնիկայի և տեխնոլոգիայի կիրառմամբ միանգամայն հնարավոր կլինի արդյունահանման և վերամշակման կորուստները նվազեցնել գոնե 2 անգամ, դրանով իսկ ծախսվող էներգիայի և աշխատանքի հատույցը կհավասարվի արդյունաբերության միջինին:

Հանրապետության ռեսուրսների սահմանափակության պայմաններում առաջադրված սխեման հնարավորություն է տալիս վերլուծել անգամ առանձին ձեռնարկություններ: Սկզբնական ռեսուրսների արդյունավետության պայմանը, որպես տեխնիկատնտեսական հիմնավորման տարր, կիրառվող տեխնիկայի և տեխնոլոգիայի առաջընթացի երաշխիքն է և էտալոնային մակարդակին չհամապատասխանելու դեպքում կհանդիսանա համատեղ ձեռնարկությունների գրանցումը մերժելու պատճառ:

Հետագայում այս մեխանիզմը անհրաժեշտ է մանրակրկիտ ուսումնասիրել որպես արտաքին տնտեսական գործունեության և հատկապես հատուկ ստատուսի մեխանիզմի և ստրատեգիայի վերջնական ձևավորման ու արտադրությունների (համատեղ ձեռնարկությունների) զարգացումը խթանող համակարգի մշակման մոտեցումներից մեկը: Սակայն այժմ, խորապես չհիմնավորելով անգամ, կարելի է նախապես ուրվագծել սկզբունքային հավանական այն ոլորտները, ուր հնարավոր է փոխշահավետ արտաքին տնտեսական համագործակցությունը:

Հայկական ԽՍՀ տարածքում համատեղ ձեռնարկությունների ստեղծման և ազատ տնտեսական ձեռնարկչության քաղաքականության վարման դեպքում կառանձնացվեն հետևյալ ոլորտները, որոնց նյութական բազան են ամբողջ տնտեսական և գիտական պոտենցիալը, յուրահատուկ բնակլիմայական պայմանների և մի շարք բնական ռեսուրսների առկայությունը, բավական որակյալ, վերապատրաստման ընդունակ աշխատուժի ավելցուկը:

Գիտության ոլորտում կարևոր է արտասահմանյան ինստիտուտների հետ համատեղ գիտական և ժողովրդական տնտեսությանը անհրաժեշտ գործնական մշակումների իրականացումը, հանրապետության ճյուղային և ակադեմիական ինստիտուտների գիտական մշակումների հիման վրա համատեղ ձեռնարկությունների, տեխնոպոլիսների և գիտական կայանների ստեղծումը:

Արտաքին կապերը կատարելագործելիս հետագայում անհրաժեշտ է զարգացնել նաև սպասարկման ոլորտը, միջազգային տուրիզմը, ստեղծել միջազգային նշանակության առողջարաններ:

Միջազգային համագործակցությունը, անշուշտ, կընդգրկի նաև արտադրական ոլորտը՝ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, շինարարությունը, տրանսպորտը, կապը: Այս ոլորտներում համատեղ ձեռնարկչությունը անպայման կօգտագործի հանրապետության առկա բնական ռեսուրսները և ժողովրդական տնտեսությունում որոշակի հաջողության հասած գործունեության ավանդական տեսակները:

Հայաստանի բնական պայմանները, շինանյութերի հարուստ և եզակի հանքավայրերը, հանքահումքային բազայի բազմազանությունը լայն հնարավորություններ են ընձեռում համատեղ ձեռնարկությունների շուտափույթ կազմակերպման համար: Այսպես, բնական հանքային սորբենտների՝ կլանիչների (բենտոնիտ, դիատոմիտ, պերլիտ, ցեոլիտ) մշակման գործում նպատակահարմար է ակտիվացնել միջազգային կոոպերացիան: Հայաստանում երկու տասնյակ տեսակի բնական երեսպատման քարերի մշակումը նույնպես արդյունավետ ուղղություն է՝ ներգրավելու արտասահմանյան կապիտալը: Բացի այդ, Հայաստանը փայլագունաքարային հումքի մշակման հեռանկարային շրջաններից է:

Հանրապետությունն ունի երկրորդային հումքի մշակման, համատեղ ձեռնարկություններ կազմակերպելու լայն հնարավորություններ, ընդ որում, նպաստելով երկրորդային ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը, ռեգիոնի էկոլոգիայի բարելավմանը և հանրապետությունում վալյուտայի հոսքի ապահովմանը:

Հայաստանի ընդերքը հարուստ է հանքային ջրերով, որոնք ունեն ֆիզիկաքիմիական տարբեր կազմ, բուժիչ հատկություններ: Արտասահմանյան ֆիրմաների հետ համագործակցելով հնարավոր է ռացիոնալ օգտագործել հանքային ջրերի ռեսուրսները, ընդլայնել գործող առողջարանները և ստեղծել միջազգային նշանակության նորերը:

Հանրապետության բնակլիմայական պայմանները նպաստավոր են հատուկ սպառողական հատկություններով բազմատեսակ պտղաբանջարանոցային կուլտուրաներ աճեցնելու համար, որոնք մեծ պահանջարկ ունեն միջազգային շուկայում: Արտասահմանյան ֆիրմաների հետ պտղաբանջարանոցային կուլտուրաների աճեցման և վերամշակման համատեղ ձեռնարկությունները կլուծեն նաև տարաների, տրանսպորտային բազմատեսակ միջոցների պրոբլեմները, կստեղծվեն մրգերի և բանջարեղենի հավաքման ժամանակակից մեքենաներ և շարժական պահոցներ: Հանրապետության գյուղատնտեսությանը անհրաժեշտ է կազմակերպել հոսքագծային յուրահատուկ համատեղ ձեռնարկություններ, որոնք կընդգրկեն գյուղատնտեսական կուլտուրաների աճեցման, հավաքման, բերքի տեղափոխման, դրանց վերջնական վերամշակման և պատրաստի արտադրանքի (չորացած մրգեր, տարբեր կիսաֆաբրիկատներ, պահածոներ) ստացման ցիկլի բոլոր փուլերը: Դրա հետ մեկտեղ գյուղատնտեսական գիտության վերջին նվաճումների կիրառմամբ հնարավոր է նվազեցնել ներկայիս հսկայական կորուստները, գյուղատնտեսական արտադրանքով բավարարել հանրապետության բնակչության պահանջները, արտահանել պատրաստի արտադրանքը և ապահովել վալյուտայի ներհոսք:

Հայկական ԽՍՀ-ում հարկավոր է ստեղծել նաև օծանելիքի, կոսմետիկայի (օգտագործելով վարդագույն խորդենին), տարբեր դեղորայքի (աճեցնելով դեղաբույսեր), ներկանյութերի (հինա, բասմա) արտադրությունների համատեղ ձեռնարկություններ, որոնց հումքը կարելի է ստանալ հիդրոպոնիկ եղանակով:

Մենք փորձեցինք հիմնավորել հանրապետությունում ստեղծված քաղաքական և սոցիալ-տնտեսական պայմաններում արտաքին տնտեսական հատուկ ստատուսի նոր ձևը, բացահայտելով միայն դրա հիմնական սկզբունքները և կազմավորման պայմանները: Շարադրված դրույթները դեռևս պետք է մանրամասնվեն, ճշգրտվեն, սակայն արդեն ակնհայտ է, որ փոխկապված հարցադրումների միայն համակարգային մշակմամբ և իրականացմամբ է հնարավոր կյանքի կոչել արտաքին տնտեսական հատուկ ստատուսը, որը կարագացնի աղետի գոտու վերականգնումը և կնպաստի Հայկական ԽՍՀ սոցիալ-տնտեսական զարգացմանը:

---

# ԷԿՈԼՈԳԻԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ ԵՎ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Ե. ԽՎԱՏԿՈՎ**

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԼԱՅՆՈՐԵՆ ՔՆՆԱՐԿՎՈՒՄ Է «Հայկական ԽՍՀ տնտեսական ինքնուրույնության կոնցեպցիայի» նախագիծը: Այդ փաստաթղթի վրա աշխատանքը սկսվել է դեռևս 1989 թ. կեսերից, իսկ տարվա վերջերին տարբեր մակարդակներով քննարկումներ անցկացվեցին առաջադրված կարևորագույն պրոբլեմների շուրջը:

Փաստաթղթի մի քանի տարբերակների (ներառյալ նաև վերջինը, որը հրապարակվել է մամուլում) մանրակրկիտ ուսումնասիրությունը հանգեցնում է այն մտքին, որ դրանք հիմնականում հռչակում են, այսպես ասած, **հետևանքները,** միաժամանակ վերացարկվելով հանրապետության համար հիրավի բախտորոշ **պատճառներից:** Այդ նախագծի գլխավոր թերությունը հանգում է հետևյալին. Հայաստանի վերածննդի ազգային ծրագրի իրականացման հիմքը պետք է լինի ոչ թե «հանրապետության տնտեսական ինքնուրույնության քաղաքականությունը», ինչպես ոչ այնքան համոզիչ կերպով և, որ գլխավորն է, ոչ ճիշտ, պնդում են «կոնցեպցիայի» հեղինակները, այլ գոյատևման հրամայականի ստրատեգիան: Սակայն մենք, այնուամենայնիվ, չպետք է անտեսենք, որ «կոնցեպցիայի» նախագծի քննարկումն այժմ գտնվում է սոսկ սկզբնական փուլում և դեռևս բավականին ժամանակ և ուժեր կպահանջվեն ի մի բերելու հանրապետության բնակչության հասարակայնորեն ակտիվ մասի բազմաթիվ դիտողություններն ու առաջարկությունները:

Հետևաբար, տնտեսական ինքնուրույնության անցնելու ծրագրի վերջնական մշակումը, թերևս, այնքան էլ մոտ հեռանկարի խնդիր չէ:

Դրա հետ մեկտեղ, մինչև հարյուրամյակի վերջը և նոր՝ XXI դարի առաջին հնգամյակը, հանրապետության ժողովրդատնտեսական համալիրի զարգացումն արդեն կանխորոշված է «մինչև 2005 թվականը Հայկական ԽՍՀ արտադրողական ուժերի զարգացման և տեղաբաշխման սխեմայով», որը մշակել է ՀԽՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտը: Այն հաստատվել է 1988 թ. մայիսին, որով սահմանվել է մեր հետագա առաջընթացը:

Թեկուզ համառոտակիորեն վերլուծենք «Զարգացման սխեմայով» մեզ համար կանխորոշված ուղին: Կանգ առնենք մեր առաջընթացի չափը կամ շարժումը բնութագրող այն գլխավոր ուղղությունների վրա, որոնք մշակվել են, այսպես կոչված, «ծախսումնային մեխանիզմի» համակարգի հիման վրա, և, որպես հետևանք, անպայման «ձեռք բերված մակարդակից» առաջ շարժվելու սկզբունքով: Հայտնի է, որ, օրինակ, աշխարհի առաջատար երկրներում նախ կատարվում է գիտական կանխատեսում այն պրոբլեմների վերաբերյալ, որոնք անհրաժեշտ է լուծել, ասենք, առաջիկա քսան տարում: Այնուհետև որոշվում է այդ խնդիրների իրականացման համար անհրաժեշտ տեխնիկական պոտենցիալը, իսկ մեզ մոտ, ցավոք, ամեն ինչ կատարվում է հակառակը. սկզբում հաշվարկվում են մարդիկ և ֆոնդերը, և դրանից հետո միայն պրոբլեմները, որոնք հարկ է լուծել:

Դրան ավելացնենք նաև անպայման ընդունված ավանդույթին հետևելու մեր համառ ձգտումը: Ահա դրա համոզիչ օրինակը. ԽՄԿԿ XXVIII համագումարը նշեց, որ երկրի տնտեսական աճը, արտադրության վերակառուցման արդյունավետությունը մեծապես պայմանավորված է մեքենաշինությամբ: Այդ անվիճելիորեն ճիշտ

---

*ԽՎԱՏԿՈՎ ԵՎԳԵՆԻ ԳԵՈՐԳԵՎԻՉ— ՀԽՍՀ պետպլանի Հաշվողական կենտրոնի էկոլոգիայի սեկտորի վարիչ, տնտեսագիտության թեկնածու:*

Գիտության ոլորտում կարևոր է արտասահմանյան ինստիտուտների հետ համատեղ գիտական և ժողովրդական տնտեսությանը անհրաժեշտ գործնական մշակումների իրականացումը, հանրապետության ճյուղային և ակադեմիական ինստիտուտների գիտական մշակումների հիման վրա համատեղ ձեռնարկությունների, տեխնոպոլիսների և գիտական կայանների ստեղծումը:

Արտաքին կապերը կատարելագործելիս հետագայում անհրաժեշտ է զարգացնել նաև սպասարկման ոլորտը, միջազգային տուրիզմը, ստեղծել միջազգային նշանակության առողջարաններ:

Միջազգային համագործակցությունը, անշուշտ, կընդգրկի նաև արտադրական ոլորտը՝ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, շինարարությունը, տրանսպորտը, կապը: Այս ոլորտներում համատեղ ձեռնարկչությունը անպայման կօգտագործի հանրապետության առկա բնական ռեսուրսները և ժողովրդական տնտեսությունում որոշակի հաջողության հասած գործունեության ավանդական տեսակները:

Հայաստանի բնական պայմանները, շինանյութերի հարուստ և եզակի հանքավայրերը, հանքահումքային բազայի բազմազանությունը լայն հնարավորություններ են ընձեռում համատեղ ձեռնարկությունների շուտափույթ կազմակերպման համար: Այսպես, բնական հանքային սորբենտների՝ կլանիչների (բենտոնիտ, դիատոմիտ, պերլիտ, ցեոլիտ) մշակման գործում նպատակահարմար է ակտիվացնել միջազգային կոոպերացիան: Հայաստանում երկու տասնյակ տեսակի բնական երեսպատման քարերի մշակումը նույնպես արդյունավետ ուղղություն է՝ ներգրավելու արտասահմանյան կապիտալը: Բացի այդ, Հայաստանը փայլագունաքարային հումքի մշակման հեռանկարային շրջաններից է:

Հանրապետությունն ունի երկրորդային հումքի մշակման, համատեղ ձեռնարկություններ կազմակերպելու լայն հնարավորություններ, ընդ որում, նպաստելով երկրորդային ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը, ռեգիոնի էկոլոգիայի բարելավմանը և հանրապետությունում վալյուտայի հոսքի ապահովմանը:

Հայաստանի ընդերքը հարուստ է հանքային ջրերով, որոնք ունեն ֆիզիկաքիմիական տարբեր կազմ, բուժիչ հատկություններ: Արտասահմանյան ֆիրմաների հետ համագործակցելով հնարավոր է ռացիոնալ օգտագործել հանքային ջրերի ռեսուրսները, ընդլայնել գործող առողջարանները և ստեղծել միջազգային նշանակության նորերը:

Հանրապետության բնակլիմայական պայմանները նպաստավոր են հատուկ սպառողական հատկություններով բազմատեսակ պտղաբանջարանոցային կուլտուրաներ աճեցնելու համար, որոնք մեծ պահանջարկ ունեն միջազգային շուկայում: Արտասահմանյան ֆիրմաների հետ պտղաբանջարանոցային կուլտուրաների աճեցման և վերամշակման համատեղ ձեռնարկությունները կլուծեն նաև տարաների, տրանսպորտային բազմատեսակ միջոցների պրոբլեմները, կստեղծվեն մրգերի և բանջարեղենի հավաքման ժամանակակից մեքենաներ և շարժական պահոցներ: Հանրապետության գյուղատնտեսությանը անհրաժեշտ է կազմակերպել հոսքագծային յուրահատուկ համատեղ ձեռնարկություններ, որոնք կընդգրկեն գյուղատնտեսական կուլտուրաների աճեցման, հավաքման, բերքի տեղափոխման, դրանց վերջնական վերամշակման և պատրաստի արտադրանքի (չորացած մրգեր, տարբեր կիսաֆաբրիկատներ, պահածոներ) ստացման ցիկլի բոլոր փուլերը: Դրա հետ մեկտեղ գյուղատնտեսական գիտության վերջին նվաճումների կիրառմամբ հնարավոր է նվազեցնել ներկայիս հսկայական կորուստները, գյուղատնտեսական արտադրանքով բավարարել հանրապետության բնակչության պահանջները, արտահանել պատրաստի արտադրանքը և ապահովել վալյուտայի ներհոսք:

Հայկական ԽՍՀ-ում հարկավոր է ստեղծել նաև օծանելիքի, կոսմետիկայի (օգտագործելով վարդագույն խորդենին), տարբեր դեղորայքի (աճեցնելով դեղաբույսեր), ներկանյութերի (հինա, բասմա) արտադրությունների համատեղ ձեռնարկություններ, որոնց հումքը կարելի է ստանալ հիդրոպոնիկ եղանակով:

Մենք փորձեցինք հիմնավորել հանրապետությունում ստեղծված քաղաքական և սոցիալ-տնտեսական պայմաններում արտաքին տնտեսական հատուկ ստատուսի նոր ձևը, բացահայտելով միայն դրա հիմնական սկզբունքները և կազմավորման պայմանները: Ծարադրված դրույթները դեռևս պետք է մանրամասնվեն, ճշգրտվեն, սակայն արդեն ակնհայտ է, որ փոխկապված հարցադրումների միայն համակարգային մշակմամբ և իրականացմամբ է հնարավոր կյանքի կոչել արտաքին տնտեսական հատուկ ստատուսը, որը կարագացնի աղետի գոտու վերականգնումը և կնպաստի Հայկական ԽՍՀ սոցիալ-տնտեսական զարգացմանը:

# ԷԿՈԼՈԳԻԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ ԵՎ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Ե. ԽՎԱՏԿՈՎ**

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ ԼԱՅՆՈՐԵՆ ՔՆՆԱՐԿՎՈՒՄ Է «Հայկական ԽՍՀ տնտեսական ինքնուրույնության կոնցեպցիայի» նախագիծը: Այդ փաստաթղթի վրա աշխատանքը սկսվել է դեռևս 1989 թ. կեսերից, իսկ տարվա վերջերին տարբեր մակարդակներով քննարկումներ անցկացվեցին առաջադրված կարևորագույն պրոբլեմների շուրջը:

Փաստաթղթի մի քանի տարբերակների (ներառյալ նաև վերջինը, որը հրապարակվել է մամուլում) մանրակրկիտ ուսումնասիրությունը հանգեցնում է այն մտքին, որ դրանք հիմնականում հռչակում են, այսպես ասած, **հետևանքները,** միաժամանակ վերացարկվելով հանրապետության համար հիրավի բախտորոշ **պատճառներից:** Այդ նախագծի գլխավոր թերությունը հանգում է հետևյալին. Հայաստանի վերածննդի ազգային ծրագրի իրականացման հիմքը պետք է լինի ոչ թե «հանրապետության տնտեսական ինքնուրույնության քաղաքականությունը», ինչպես ոչ այնքան համոզիչ կերպով և, որ գլխավորն է, ոչ ճիշտ, պնդում են «կոնցեպցիայի» հեղինակները, այլ գոյատևման հրամայականի ստրատեգիան: Սակայն մենք, այնուամենայնիվ, չպետք է անտեսենք, որ «կոնցեպցիայի» նախագծի քննարկումն այժմ գտնվում է սոսկ սկզբնական փուլում և դեռևս բավականին ժամանակ և ուժեր կպահանջվեն ի մի բերելու հանրապետության բնակչության հասարակայնորեն ակտիվ մասի բազմաթիվ դիտողություններն ու առաջարկությունները:

Հետևաբար, տնտեսական ինքնուրույնության անցնելու ծրագրի վերջնական մշակումը, թերևս, այնքան էլ մոտ հեռանկարի խնդիր չէ:

Դրա հետ մեկտեղ, մինչև հարյուրամյակի վերջը և նոր՝ XXI դարի առաջին հնգամյակը, հանրապետության ժողովրդատնտեսական համալիրի զարգացումն արդեն կանխորոշված է «մինչև 2005 թվականը Հայկական ԽՍՀ արտադրողական ուժերի զարգացման և տեղաբաշխման սխեմայով», որը մշակել է ՀԽՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտը: Այն հաստատվել է 1988 թ. մայիսին, որով սահմանվել է մեր հետագա առաջընթացը:

Թեկուզ համառոտակիորեն վերլուծենք «Զարգացման սխեմայով» մեզ համար կանխորոշված ուղին: Կանգ առնենք մեր առաջընթացի չափը կամ շարժումը բնութագրող այն գլխավոր ուղղությունների վրա, որոնք մշակվել են, այսպես կոչված, «ծախսումնային մեխանիզմի» համակարգի հիման վրա, և, որպես հետևանք, անպայման «ձեռք բերված մակարդակից» առաջ շարժվելու սկզբունքով: Հայտնի է, որ, օրինակ, աշխարհի առաջատար երկրներում նախ կատարվում է գիտական կանխատեսում այն պրոբլեմների վերաբերյալ, որոնք անհրաժեշտ է լուծել, ասենք, առաջիկա քսան տարում: Այնուհետև որոշվում է այդ խնդիրների իրականացման համար անհրաժեշտ տեխնիկական պոտենցիալը, իսկ մեզ մոտ, ցավոք, ամեն ինչ կատարվում է հակառակը. սկզբում հաշվարկվում են մարդիկ և ֆոնդերը, և դրանից հետո միայն պրոբլեմները, որոնք հարկ է լուծել:

Դրան ավելացնենք նաև անպայման ընդունված ավանդույթին հետևելու մեր համառ ձգտումը: Ահա դրա համոզիչ օրինակը. ԽՄԿԿ XXVIII համագումարը նշեց, որ երկրի տնտեսական աճը, արտադրության վերակառուցման արդյունավետությունը մեծապես պայմանավորված է մեքենաշինությամբ: Այդ անվիճելիորեն ճիշտ

---

*ԽՎԱՏԿՈՎ ԵՎԳԵՆԻ ԳԵՈՐԳԵՎԻՉ — ՀԽՍՀ պետպլանի Հաշվողական կենտրոնի էկոլոգիայի սեկտորի վարիչ, տնտեսագիտության թեկնածու*

հետևությունը, ընդհանուր առմամբ, վերաբերում է ամբողջ երկրին, իսկ հեռավոր ծայրամասում դեռ պետք է պարզաբանել, թե որն է ժողովրդական տնտեսության և նրա առանձին ճյուղերի ինտենսիվ զարգացման առաջատար օղակը: Չնայած դրան, մեր հանրապետությունում արդեն իսկ մեքենաշինական համալիրի զարգացման անենաբարձր տեմպերի կուրս է վերցված: 2005 թվականին այդ ճյուղի արտադրանքը պետք է աճի 3,5 անգամ: Ընդ որում, արդյունաբերական համախառն արտադրանքի ընդհանուր ծավալում մեքենաշինության բաժինը կհասնի 58 տոկոսի:

Այսօրվա դրությամբ հանրապետություն է բերվում 600 հազար տոննա մետաղ: Առաջիկայում այդ թիվը կաճի մի քանի անգամ: Հանրապետությունից շատ դեպքերում արտահանվում են, եթե անկեղծ ասենք, ոչնչով աչքի չընկնող, իրենց նորությամբ և բարձր որակով չփայլող խոշորածավալ հաստոցներ: Դա մեր հանրապետության համար, չարաբաստիկ քիմիայի հետ մեկտեղ, չի՞ վերածվի արդյոք նոր պատերազմի այս անգամ արդեն մետաղի հետ:

Արդյո՞ք արդարացված է մեքենաշինության, ամբողջ երկրի ժողովրդական տնտեսության, այդ իրոք կարևորագույն ճյուղի առաջընթաց զարգացումը հատկապես Հայաստանում: Եթե վերլուծենք, թե ինչ է կատարվում, օրինակ, հաստոցաշինության բնագավառում, ապա պարզվում է, որ, ամբողջությամբ վերցրած, երկրում կա 6,5 մլն հաստոց և 4 մլն հաստոցավար: Այդ դեպքում ի՞նչ խոսք կարող է լինել թեկուզ երկրորդ աշխատանքային հերթափոխ կազմակերպելու մասին, երբ արդեն մեկ հերթափոխում սարքավորումների զգալի մասը պարապուրդ է տալիս:

Չնայած ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի մեքենաշինության բյուրոյի ստեղծմանը, հաստոցաշինության մեջ գործերն ամենևին էլ չեն բարելավվում: Քանի որ ինչպես 15 տարի առաջ մենք արտասահմանից գնում էինք բարձր մոմենտային էլեկտրաշարժիչներ և թվածրագրային կառավարմամբ (ԹԾԿ) լավ հաստոցներ, այդպես էլ մինչև այժմ դրանք ներմուծում ենք: Իսկ մեր արտադրանքով համաշխարհային շուկա դուրս գալ չենք կարողանում: Եվ ահա, մենք պլանավորում ենք կառուցել հաստոցաշինական նոր գործարաններ՝ թողարկելու համար արդեն այսօր ոչ պիտանի հնություններ, որոնց պակասությունը մենք չենք զգում: Ակադեմիկոս Ե. Պ. Վելիխովը վերջերս հիանալի խոսքեր ասաց՝ «մեր ժամանակներում ոչ ոք ոչ ոքից չի կարող առաջ անցնել»: Ուստի մեզ անհրաժեշտ է հստակորեն որոշել այն ուղղությունները, որտեղ մենք կարող ենք սեփական դիրքեր նվաճել: Եվ եթե ճապոնացիներն առաջ են անցել էլեկտրոնիկայի և կենսատեխնոլոգիայի բնագավառներում, ապա ցանկալի է գոնե հասնել նրանց մակարդակին, չնայած դա էլ գործնականում կարծես թե անհնարին է: Հետևաբար, մենք պետք է փնտրենք նոր նպատակներ, գտնենք մերը, մի խոսքով, առաջ անցնենք՝ առանց հասնելու:

Հատկապես այդ ուղին է մեզ դուրս բերում երկրի և հանրապետության ժողովրդական տնտեսության այնքան անհրաժեշտ լազերային հաստոցների ստեղծումը: Իսկ ինչու՞ հատկապես լազերային: Այն պատճառով, որ լազերները տարեցտարի նորանոր դիրքեր են նվաճում ժողովրդական տնտեսության, գիտության, բժշկության տարբեր բնագավառներում: Հատկապես անխոհեմ է այդ մասին մոռանալը թեկուզ այն պատճառով, որ հենց Հայաստանի գիտնականներն են գործնականում իրականացրել պատրաստի լազերների արտադրությունը «Լազերային տեխնիկա» նորաստեղծ գիտաարտադրամիավորումում: Այստեղի ազոտային լազերները, պիկոսայրկյանային բյուրեղները երկրում ընդարձակ շուկա են նվաճել. Պատվիրատուների թիվն արագորեն աճում է: Ներկայումս «Լազերային տեխնիկայի» հինգ գիտաարտադրական համալիրներում հետազոտական աշխատանքներ են ծավալված այնպիսի հեռանկարային ուղղություններում, ինչպես լազերային սպեկտրոսկոպիան, բյուրեղների աճը, ոչ գծային օպտիկան, կարճալիքային պինդ մարմնային լազերները: Բացի դրանից, ինտենսիվ և բազմախոստում աշխատանքներ են տարվում լազերային բժշկության ասպարեզում:

Այսպիսով, մենք պարզապես մոռացել ենք մեր իսկ հանրապետությունում մեր գործընկերների նշանակալից նվաճումների մասին, որոնք հիրավի նոր ուղղություններ են բացում Հայաստանի արդյունաբերության հեռանկարային զարգացման համար՝ սեփական գիտնականների հիմնարար հետազոտությունների բազայի վրա:

Իսկ ի՞նչն է մեզ խանգարում հանրապետությունում կազմակերպել գերդեֆիցիտային լազերային հաստոցների արտադրությունը: Մեր կարծիքով, անտարբերությունը, քարացածությունը և պահպանողականությունը:

Հիշատակենք մեկ այլ օրինակ այդ նույն ոլորտից: Ներկայումս աշխարհում մեծ



պահանջարկ են վայելում սարքաշինության համար օգտագործվող փոքր հաստոցները: Մինչդեռ մեր երկրում դրանց արտադրությունն առայսօր չի կազմակերպված: Թվում է, թե հասել է հայկական հաստոցաշինարարների ժամը՝ արագ տեմպերով ընդառաջ շարժվել սեփական ուղիով: Բայց ոչ, մենք դեռևս պլանավորում ենք և մինչև եկող հարյուրամյակի առաջին հնգամյակը պետք է արտադրենք մեծածավալ և ծանրաքաշ ունիվերսալ հաստոցներ, որի համար պահանջվում է հանրապետություն ներմուծել հարյուր հազարավոր տոննա մետաղ:

Եվ ու՞մ ենք մենք պատրաստվում «հասնել» կամ «անցնել» նույնիսկ երկրի ներսում օգտագործման համար ոչ պիտանի այդ արտադրանքով: Անկասկած, հանրապետության հաստոցաշինության այլընտրանքային ուղին միայն գիտատար արտադրանքի՝ լազերային հաստոցների, սարքաշինության համար փոքր հաստոցների և, վերջապես, նոր սերնդի ֆիզիկական սարքերի արտադրությունն է:

Ի դեպ, այս վերջին ոլորտում հայ գիտնականները ի վիճակի են մրցակցելու նույնիսկ արտասահմանյան առաջատար ֆիրմաների հետ: Այսպես, «Էքսպո-88» միջազգային ցուցահանդեսում գիտական հասարակայնության աշխույժ հետաքրքրությունն առաջացրին Հայկական ԽՍՀ գիտությունների ակադեմիայի ֆիզիկայի կիրառական պրոբլեմների ինստիտուտի գիտնականների ստեղծած սարքերը: Դրանցից՝ «Սևան» ջերմաճառագայթման ընդունիչը և երկբյուրեղ ճշգրիտ անկյունաչափը հետազոտողներին հնարավորություն են ընձեռում ախտորոշել պլազմայի վիճակը, կազմել կենդանի օրգանիզմի ճշգրիտ կենսաբանական քարտեզը, ուսումնասիրել բյուրեղի միջով անցնելիս նեյտրոնային և գամմա-ճառագայթման ուղղորդված հոսքերի հատկություններն ու վարքագիծը:

Նշենք նաև, որ սարքերի ներդրման նկատմամբ հետաքրքրությունը պայմանավորված է ոչ միայն դրանց գործնական կիրառման շառավիղով, այլև, գլխավորապես, գիտական սարքաշինության ծրագրի իրացման նկատմամբ մոտեցումների սկզբունքներով, քանզի հայ գիտնականների հետազոտությունների արդյունքները պինդ մարմնի ֆիզիկայի, աստրոֆիզիկայի և միջուկային ֆիզիկայի շատ պրոբլեմների լուծման նոր հեռանկարներ են բացում: Մինչդեռ, ցավոք, Հայաստանի գիտնականների այս նվաճումները ևս առայժմ դուրս են մնացել մեր պլանավորողների ուշադրության կենտրոնից:

Եվ, վերջին հաշվով, այդքան անհրաժե՞շտ է, որ Հայաստանը դառնա այնպիսի հզոր արդյունաբերական տերություն, ինչպես Ավստրիան կամ ԳՖՀ-ն, 15 տարում մեքենաշինության արտադրանքի թողարկումն ավելացնելով 3,5 անգամ: Ժամանակն է գիտակցել, թե ինչի կարող է հանգեցնել անպայման արդյունաբերական հիմքի վրա հանրապետության արտադրողական ուժերի հարաճուն զարգացման գործում անգիտակությունը և ուրիշներին ընդօրինակելու անմիտ ձգտումը: Եվ, վերջապես, արդյո՞ք այդքան բարդ է գիտակցելը, որ հասարակական արտադրության մասշտաբների անվերջ ընդլայնումը ինքնանպատակ չէ: Հենց այդպիսի առիթով է արտահայտվել պրոֆ. Մ. Ա. Լեմեշևը. «... Խորհրդային էկոնոմիկայի արագացված զարգացմանը նպատակամղված նոր, առավել կատարյալ տնտեսական մեխանիզմին անհրաժեշտ են նաև համապատասխան էկոլոգիական տնտեսագիտական չափանիշներ»:

Իրոք, ինտենսիվացումը ոչ միայն արտադրության և հասարակության զարգացման անշրջելի պրոցես է, այլև հասարակության և բնության փոխգործողության առանձնահատուկ ձև, որը ենթադրում է խելացի բնօգտագործում, շրջակա միջավայրի պահպանում և բարեփոխում:

Մենք առաջարկում ենք հենց այդ ուղիով ընթանալ ռեգիոնի մեքենաշինության զարգացման նոր այլընտրանքային ուղին գիտականորեն հիմնավորելիս: Առավել ևս, որ այդ նպատակին հասնելու հնարավորությունները օրեցօր աճում են: Ահա այդպիսի հարցադրման մի համոզիչ օրինակ: 1988 թվականի հունիսին Մոսկվայի միջազգային առևտրի կենտրոնում «Սովինցենտր» համամիութենական միավորման և ամերիկյան «Ինտերնեյշն մարկետինգ սերվիսեզ» կամպանիայի կազմակերպած սեմինարում ամերիկյան մասնագետները առաջարկեցին միավորել ջանքերը՝ ընդամենը մի քանի ամիս առաջ մշակված նորագույն տեխնոլոգիան արտադրության մեջ ներդնելու համար: Հարկ է նկատել, որ մեքենաշինության համաշխարհային պրակտիկան նման բան չէր տեսել: Այս օրինակը առավել ևս համոզիչ պետք է հնչի հայ մեքենաշինարարների համար, եթե նրանք չեն ուզում մնալ գիտատեխնիկական առաջընթացի պոչում:

Առավել անհանգստացնողը հանրապետության էներգետիկ ծրագիրը մշակողների դիրքորոշումն է։ Նախատեսվում է մինչև 2005 թվականը վերակառուցել ու ընդլայնել Հրազդանի ՊՇԷԿ-ը և Երևանի ՋԷԿ-ը, կառուցել վերջինիս երկրորդ հերթը, ինչպես նաև Հայաստանի գետերի վրա 38 փոքր ՀԷԿ-եր։ Ոչ մի խոսք չի ասվում արևի, քամու, կենսազանգվածի էներգիայի մասին, չեն նշված էներգախնայողության միջոցառումներ։ Լռության է մատնված ատոմակայանը (այժմ արդեն նախկին), որը պետք է փոխադրվի ջերմաֆիկացիոն ռեժիմի, այլ կերպ ասած՝ կսկսի աշխատել իբրև ջերմաէլեկտրակայան։

Հայտնի է, որ Հայաստանը արևի ճառագայթման բարձր մակարդակ ունի, այստեղ տարվա օրերի մեծ մասը արևային է։ Մինչդեռ մեր նույնիսկ հեռանկարային պլաններում ոչ մի հիշատակություն չկա հանրապետության տարածքում արևի էլեկտրակայանի կառուցման հնարավորության մասին։ Էներգետիկայի բնագավառի մասնագետներին լավ հայտնի է, որ Գ. Մ. Կրժիժանովսկու անվան էներգետիկական ինստիտուտի և Ֆ. Է. Ձերժինսկու անվան համամիութենական ջերմատեխնիկական ինստիտուտի գիտական ղեկավարությամբ «Ջերմանախագիծ» համամիութենական ինստիտուտը տեխնիկական փաստաթղթեր է պատրաստում մեր երկրում մեծ հզորության արդյունաբերական արևային առաջին էլեկտրակայանի կառուցման համար։ Փորձագետների դատին է ներկայացված էկոլոգիապես «մաքուր» օբյեկտի շինարարության տեխնիկատնտեսական հիմնավորումը։ Որպես շինարարության հրապարակ է ընտրված, ցավոք, ոչ թե արևային Հայաստանը, այլ առավել արևային Միջին Ասիան։ Կարելի է համոզված լինել, որ մի քանի տարի անց (հավանական է, արդեն իսկ այս հարյուրամյակում) Ամուդարիայի Թույամույունի հիդրոհանգույցի շինարարների Դրուժբա քաղաքի մոտ (Կարակումի անապատի և Ուզբեկստանի Խորեզմի մարզի Խազարասպի շրջանի օազիսի սահմանագծում կսկսվի Դնեպրոգէս—1-ի հզորությամբ (300 հազար կվտ) արևային էլեկտրակայանի արդյունաբերական շահագործումը։ Այդ բանի գրավականն է ոչ միայն առաջին արևային միկրոէլեկտրակայանի փորձարկումը Ղրիմում, այլև համանման էլեկտրակայանների տեխնոլոգիաների մշակումը Ճապոնիայում, ԱՄՆ-ում, ԳՖՀ-ում (որոնց փաստաթղթերն առայժմ պահվում են չհրկիզվող պահարաններում)։ Շատ կարևոր է, որ Դրուժբա քաղաքի արևային էլեկտրակայանը նախատեսվում է վերածել փորձաարդյունաբերական կենտրոնի և արևային էներգետիկայի գիտական բազայի։ Ուստի մեզ անհրաժեշտ է ոչ այնքան կողմնորոշվել դեպի անցյալի էլեկտրաէներգետիկան, այլ նախատեսել ապագայի գիտատար տեխնոլոգիայի այդ նոր ուղղության զարգացումը արևային Հայաստանում։

Նույնը վերաբերում է հողմաէլեկտրաշարժիչ հարմարանքների համակարգին, և իհարկե, մեր ունեցած բազմաթիվ կիսավեր փոքր հիդրոէլեկտրակայանների վերականգնմանը և նորերի կառուցմանը։ Բոլոր դեպքերում ելակետային սկզբունքը մեկն է՝ դրանք չպետք է որևէ շոշափելի վնաս հասցնեն շրջակա միջավայրին։

Մենք մոռացության ենք մատնել էներգահաշվեկշռի կատարելագործման այնպիսի ծանրակշիռ ռեզերվ, ինչպես էներգախնայողական քաղաքականությունն է։ Հայտնի է, թե այդ ասպարեզում ինչպիսի հաջողությունների հասան հարավսլավցիները՝ մի շարք տարիների ընթացքում իրականացնելով էլեկտրաէներգիայի խիստ տնտեսման քաղաքականություն։ Մի փոքր այլ ուղի են ընտրել Արևելյան Եվրոպայի մյուս երկրները։ «Սվետ վ օբրազեխ» (Չեխոսլովիա) և «Պոգլեդ» (Բուլղարիա) հանդեսները հայտարարեցին ընթերցողների մրցույթ՝ «խնայել էլեկտրաէներգիան»։ Մրցույթի երեք տարվա ընթացքում միայն Սոֆիայի «Պոգլեդի» հասցեով ստացվել է էլեկտրաէներգիայի խնայողության 13.337 վկայական։ Մենք դժվարանում ենք պնդել, թե այդ երկրների էնտուզիաստները փաստորեն տնտեսել են մի ամբողջ էլեկտրակայան, բայց, ցավոք, համանման օրինակ մեր հանրապետության պրակտիկայից մենք չենք կարող բերել, քանի որ այն պարզապես չկա... Դրա փոխարեն ամեն քայլափոխում մենք կարող ենք հանդիպել էլեկտրաէներգիայի վատնումների և շռայլումների բազմապիսի փաստերի։

Վերջին շրջանում հանրապետության մամուլում ավելի ու ավելի բարձր են անտեղյակ դատողություններ հնչում Հայաստանում էլեկտրաէներգիայի առաջիկա «բուռն զարգացման» մասին։ Մինչդեռ ոչ միայն էներգետիկների, այլև տնտեսագետների համար միանգամայն ակնհայտ է, որ ռեգիոնում ներմուծվող վառելանյութի բազայի վրա նոր գեներացնող հզորությունների տեղադրումը (հատկապես ԱԷԿ-ի փակումից հետո) և դրանց կառուցումը Անդրկովկասյան միացյալ էներգահամակարգի ամենահեռավոր ծայրամասում (և, հետևաբար, էլեկտրաէներգիայի հաղորդումը վառելանյութի փոխադրման հակառակ ուղղությամբ) անտրամաբանական է հատկապես հանրապետությունը տնտեսական ինքնուրույնության անցնելու պայմաններում։



Միակ խելամիտ ուղին ռեգիոնի սահմաններում էլեկտրաէներգիայի արտադրության և սպառման հավասարակշռվածության ապահովումն է։ Այս օպտիմալ տեսակետին ամբողջովին հակասում է միութենական կառավարության՝ լուրջ հաշվարկներով չհիմնավորված որոշումը Հայաստանի էներգասիստեմի հզորությունները 7.000 մվտ-ի հասցնելու մասին։ Այդպիսով օրինականացվում է հանրապետությունը էներգաարտադրողի վերածելու կասկածելի տարբերակը։ Այդ կապակցությամբ մեր խնդիրն է քննարկվող լոկալ ծրագրում ռեգիոնալ ինքնապահովման օպտիմալ կոնցեպցիայի հիման վրա մշակել անող էներգասպառման հիմնավոր հեռանկարը։

Մենք կանգ առանք միայն երկու առաջատար ծրագրերի՝ մեքենաշինության և էներգետիկայի վրա։ Սակայն այդքանն էլ բավական է հնգամյակից հնգամյակ կրկնվող այդպիսի կանխորոշման մասին դատելու և արդի վերակառուցողական դիրքերից այն գնահատելու համար։

Էական չէ, թե այն, որ դարձյալ որպես հիմք է ընդունված «ծախսումնային մեխանիզմը»՝ դրա լավ հայտնի բացասական կողմերով, որոնցից են արտադրության զգալի վնասները, հումքի տեսակների մեծ մասի, նյութերի, էներգիայի, աշխատանքի գերածախսը, վերջապես ոչ ոքի պետք չեկող արտադրանքի թողարկումը և որպես այդ ամենի հավելում՝ գիտության և տեխնիկայի նվաճումները արտադրության մեջ ներդնելու հարցում տնտեսավարի շահագրգռվածության և հետաքրքրության լրիվ բացակայությունը։

Իսկ կա՞ արդյոք այլընտրանք այդպիսի «լճացմանը»։

Խնդրի լուծմանը շատ բանով կնպաստի հանրապետության պետպլանի հաշվողական կենտրոնի մշակած՝ ՀԽՍՀ զարգացման էկոլոգիական կոնցեպցիան։ Գիտության նոր սոցիալական դերը ռեգիոնների հեռանկարի վերաբերյալ հիմնավորված հանձնարարականների մշակման մեջ է։ Հենց այդ կարևորագույն և դժվարին խնդրի լուծմանն է նպատակամղված պետպլանի հաշվողական կենտրոնում դեռևս 1988 թ. մշակվող «Հայկական ԽՍՀ զարգացման էկոլոգիական ծրագիրը» (ԷԳՐՍ)։

Մեզ՝ հետազոտողներիս, պարզ է, որ արդիականության այդպիսի նվիրական ծրագրի իրականացումը պահանջում է գիտնականների, փիլիսոփաների, էկոլոգների, բժիշկների, տնտեսագետների, արվեստագետների և շատ ուրիշ մասնագետների ջանքերի միավորում։ Դա հատկապես ակնհայտ դարձավ Դիլիջան քաղաքում 1988 թ. անցկացված կազմակերպական-գործնական խաղերից հետո, որոնք նվիրված էին Հայաստանի էկոլոգիական պաշտպանության հիմնադրույթների մշակմանը։ Հիմքեր կան հուսալու, որ «ԷԳՐՍ»-ն, վերջին հաշվով, կդառնա բնության և հասարակության զուգընթաց էվոլյուցիայի համոզիչ փաստաթուղթ։ Դա գիտության նոր ուղղություն է, որը զբաղվում է մարդկանց անհրաժեշտ կենսապայմանների և շրջակա միջավայրի պահպանման կոմպլեքս հարցերով։

Մենք ընդհուպ մոտեցել ենք այն վերջին սահմանագծին, երբ չկա ուրիշ այլընտրանք, քան էկոլոգիական փոխկապակցված հասարակության ստեղծումը, որը պահանջում է նոր ինստիտուտային նմուշատեսակներ, մարդկային նոր հարաբերություններ և գնահատականներ, այլ կերպ ասած՝ մենք պետք է մշակենք և հիմնավորենք մեր հասարակարգի վերակառուցման ստրատեգիայի հիմունքները՝ մարդկային արժեքների նոր համակարգի բազայի վրա («սպառողական արժեքների» փոխարեն)։ Հենց այդ վեհ նպատակներին է ծառայում «ԷԳՐՍ» ծրագիրը, որն իր մեջ ներառում է մի ամբողջ ծրար մասնակի ծրագրեր (ընդհանուր առմամբ դրանք տասնյոթն են)։ Այդ ծրագրի կարևոր բաղկացուցիչներից է «Մշակութային ծրագիրը»։ Այստեղ, բազմապիսի տվյալների հիման վրա, հետազոտվում են անող սերնդի գեղագիտական, պատմական, բնագիտական և էկոլոգիական դաստիարակության ու կրթության կենսական պրոբլեմները, այդ կապակցությամբ տրվում են անհրաժեշտ հանձնարարականներ։

Ոչ պակաս ուշադրություն են պահանջում ավելի ու ավելի սրվող ռեկրեացիոն էկոլոգիայի պրոբլեմները (հանգստի էկոլոգիա)։ Հիրավի, էկոլոգիական հրամայականի դիրքերից լուրջ ուսումնասիրության են արժանի տուրիզմի, սպորտի, ֆիզիկական կուլտուրայի պրոբլեմները։ Ընդ որում կարևոր տեղ է հատկացվում, մաս-

նավորապես, էկոլոգիական թանգարաններին՝ ռեգիոնի բնակիչների մշակութային և էկոլոգիական դաստիարակության օջախներին:

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, միայն մեկ մասնակի ծրագրի պրոբլեմների լոկ թվարկումն իսկ վկայում է խնդրի լայնությունն ու խորությունը: Առավել ևս, ինչպես իրավացիորեն նկատել է պրոֆ. Է. Մարգարյանը, մշակույթը այն ընդհանուր միջոցն է, որի շնորհիվ ուղղություն է տրվում և իրականացվում մարդկային ակտիվությանը: Հենց այդ «ընդհանուր միջոցի» որոնմանն է նվիրված մեր «մշակութային ծրագիրը»:

Ոչ պակաս նշանակություն ունի «Բժշկական էկոլոգիական ծրագիրը», որի շրջանակներում հետազոտությունների ծավալումն անվիճելի անհրաժեշտություն է, քանի որ այդ ասպարեզում անկասելիորեն աճում են տնտեսական ծախսերը: Այսպես, միայն անաշխատունակության և բժշկական այլ ցուցանիշներով մենք տարեկան տանուլ ենք տալիս 250 մլն ռուբլի: Առաջիկա երկու տասնամյակում այդ թիվը կգերազանցի 10 մլրդ ռուբլին: Ահա թե ինչպիսի վիթխարի միջոցներ ենք մենք ծախսում, այսպես կոչված, «ձրի» բուժման համար միայն մեր հանրապետությունում: Այստեղ նույնպես հետազոտողների ջանքերը նպատակամղված են ոչ ավանդական այլընտրական լուծումների որոնմանը: Առջևում առողջապահության այնպիսի փակուղային վիճակի հաղթահարումն է, ըստ որի մենք գործում ենք ոչ թե հիվանդությունները կանխարգելու, այլ արդեն հիվանդացած մարդկանց բուժելու սկզբունքով:

Առաջարկվում է էապես հիմնավորել բժշկական դաստիարակության անհրաժեշտությունը մարդու կյանքի բոլոր փուլերում: Ընդ որում մենք մեծ հույսեր ենք կապում ռեգիոնում «Առողջության դպրոցների» լայն ցանցի հիմնական գաղափարի հետ:

Բացառիկ նշանակություն ունի Հայաստանի տարածքում առողջապահության միջազգային կենտրոնների ստեղծումը: Դրանց ակտիվ գործունեությունը մեզ հնարավորություն կընձեռի հանրապետությունում ծավալելու ժողովրդատնտեսական այնպիսի եկամտաբեր համալիր, ինչպիսին միջազգային բժշկական տուրիզմն է: Ստացված վալյուտային մուտքերի շնորհիվ ավելի հաջողությամբ կլուծվեն ռեգիոնի առողջապահության բազմազան պրոբլեմները, որոնցից կցանկանայի առանձնացնել «Առողջության կենտրոնների» ստեղծումը: Դրանք կոչված են միավորելու փոխկապակցված այնպիսի հիմնարկությունների գործունեությունը, ինչպես բժշկական մեթոդներով բուժման ստացիոնարները, բնակչության կազմակերպված կոնտինգենտների (ռիսկի խմբերի) առողջացման պրոֆիլակտորիաները, կենսաբանական և հոգեբանական-մանկավարժական թեքումով դպրոցները, ապագա մայրերի առողջության դպրոցները, ծերերի գիշերօթիկները և այլն: Առողջապահական հիմնարկությունների լայն ցանց ընդգրկող այդպիսի կենտրոնները կդառնան հիգիենիկ և էկոլոգիական նպատակահարմար վարքագծի անհրաժեշտ կանոնների ուսուցման համակարգ:

Ըստ էության «ԷՊՐԱ» համածրագիրը խարսխված է վերակառուցման պայմաններում հանրապետության էկոլոգիական հրամայականի հիմնադրույթի վրա՝ հաշվի առնելով աճի և արգելակման բոլոր վերոհիշյալ գործոնները:

Նախանշվող համածրագիրը և՛ բարդ է, և՛ ծավալուն: Բայց անվիճելի է նաև, որ ստեղծագործ, նախաձեռնող ջանքերով կարելի է շատ բանի հասնել: Շրջակա միջավայրի պահպանության գործում այսօր պակասում է նպատակների ու արդյունքների շոշափելիությունն ու կոնկրետությունը: Այդ էական բացթողումը կարելի է լրացնել էկոլոգիական զարգացման հանրապետական տերիտորիալ կոմպլեքսային յուրատեսակ ծրագրի ստեղծմամբ: Ընդ որում, հիմնական շեշտը անհրաժեշտ է դնել միջգերատեսչական արգելքների հաղթահարման, հոգեբանական ստերեոտիպերից հրաժարման, մաթեմատիկական մոդելավորման ռեգիոնալ ծրագրի մշակման և անհրաժեշտ կազմակերպական կառուցվածքների ստեղծման վրա:

Կենսոլորտի, նրա էվոլյուցիայի և նոր որակի՝ նոոսֆերայի անցման տեսության հիմնադիր ակադեմիկոս Վ. Ի. Վերնադսկին, իր էությամբ լինելով մեծ լավատես, պնդում էր, որ գիտությունը, անկասկած, կգտնի ցանկացած էկոլոգիական պրոբլեմների հաղթահարման միջոցներ: Այդ առողջ լավատեսությունը մեզ օգնում է Հայաստանի զարգացման էկոլոգիական ծրագրի՝ գերծանր և գերբարդ ծրագրի լուծման գործում:



# ԱԶԳԱՅԻՆ ՀՈԳՈՒ ԿԱՄԵՐՏՈՆԸ

Վ ԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՓՈՒԼԻ մեր ազգային զարթոնքը բնորոշվում է ոչ միայն ակտիվ քաղաքական պայքարով, կոչերով ու կարգախոսներով, այլև կապանքազերծ եղած հոգու պոռթկումներն արտահայտող ազատատենչ երգերով: Իզուր չէ, ուրեմն, որ ղարաբաղյան շարժման լեյտմոտիվը, յուրահատուկ կամերտոնը դարձավ ազգային երգը, որ հարյուր հազարավոր մարդկանց շուրթերից հնչեց Երևանի Ազատության հրապարակում: Ինչպիսի՜ հույս ու հավատ, ինչպիսի՜ բուռն պոռթկում կար այդ երգերում: Դրանք այսօր և առհավետ, քանի կա ազգը, կթևածեն հայկական օջախներում, աշխարհով մեկ, ուր սփռված է ողջ հայությունը:

Այսօր այդ երգը մի այլ, ավելի առնական հնչերանգ է ստացել, և երաժշտությունը մեր կյանքում դարձել է հույզերի ու երազանքների յուրատեսակ չափանիշ: Կոմպոզիտորների միությունը ինչպե՞ս է արձագանքում վերափոխման այդ մեծ պրոցեսին, ի՞նչ խնդիրներ է լուծում, ինչպիսի՞ վերաբերմունք դրսևորում:

Այդ հարցերի շուրջ տեղի ունեցավ մեր ամսագրի գիտության և կուլտուրայի բաժնի վարիչ ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ հարցազրույցը Հայաստանի կոմպոզիտորների միության վարչության նախագահ, ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատ, կոմպոզիտոր ԷԴՎԱՐԴ ՄԻՐԶՈՅԱՆԻ հետ:

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Ընկեր Միրզոյան, չեմ ցանկանում ավանդական դարձած հարցերով սկսել մեր զրույցը: Այսօրվա ընթերցողն էլ խուսափում է դրանից: Թող որ մեր անկաշկանդ խոսքն ունկնդրելով նա գտնի իրեն հուզող հարցերի պատասխանները, գուցեև օգտակար բանավեճի մեջ կմտնի մեզ հետ: Մի խոսքով, այսօր նրան հետաքրքրում է, թե Դուք, որպես երաժշտական անդաստանի երախտավոր, որպես Հայաստանի կոմպոզիտորների միության վարչության նախագահ, որպես ժողովրդական դեպուտատ, ինչպիսի՞ գործունեություն եք ծավալում ոչ միայն երաժշտական բնագավառում, այլև հասարակական կյանքի նորացման մեր ժամանակներում: Այսօր Հայաստանի կոմպոզիտորների միության գործունեությունը նորացման ինչպիսի՞ միտումներ է դրսևորում:

ԷԴ. ՄԻՐԶՈՅԱՆ.— Այո, զրուցենք մեր ժողովրդի հետ պարզ ու անկեղծ, առանց ենթատեքստերի, քանի որ ժողովուրդն այդ է պահանջում: Միանգամից ասեմ. կարող է թվալ, որ այսօրվա իրավիճակը, արտակարգ լարվածությունը, ոչ միայն չեն նպաստում, այլև երկրորդական պլան են մղում մշակույթի հարցերը: Սակայն նոր բան չպիտի ասած լինեմ, եթե շեշտեմ, որ մեր երկրի պատմությունը լի է պարադոքսներով ու հակասություններով, այդ թվում նաև մշակույթի նկատմամբ վերաբերմունքով: Բայց... ժողովուրդը երբեք, ոչ մի պարագայում իր հոգևոր զենքերը վայր չի դնում:

1921 թվից, երբ հրից ու սրից բզկտված Հայաստանում նոր կառավարություն էր ստեղծվում, առաջնահերթ տեղ տրվեց մշակույթի հարցերին: Այդ ժամանակ հիմնադրվեց մեր ազգային կոնսերվատորիան: Հայտնի է նաև Ա. Մռավյանի, Ալ. Մյասնիկյանի սրտացավ վերաբերմունքը մշակութային հարցերի նկատմամբ:

Իսկապես, սովի, քարուքանդ եղած երկրի պայմաններում ինչեր չեն արվել... Հիշենք նաև պատերազմի ծանր օրերը: Կառավարությունը մտահոգված էր, թե հաղթանակից հետո ով պետք է զարգացնի մեր գիտությունն ու կուլտուրան:

Սակայն քանի գնաց վատթարացավ մեր վիճակը: Արտաքինից մրցանակներ, մեծարանքներ, կոչումներ... բայց էությամբ անտարբերության շատ դրսևորումներ եղան հենց այն պատճառով, որ մշակույթի ասպարեզում գործի գլուխ կանգնեցին մարդիկ, ովքեր ձախողվել էին այլևայլ բնագավառներում: Եվ պետական մակարդակով տգետ, սաղդաֆոնական հոգեբանությամբ, իրենց իրավունքները չարաշա-

հող նման պաշտոնատար անձինք են մեզ բերել-հասցրել այսօրվա վիճակին, ծանր եզրագծին, որից դուրս գալու համար գերագույն ջանքեր են գործադրում ոչ միայն երաժշտության, այլև կուլտուրայի ու, առհասարակ, կյանքի բոլոր բնագավառներում:

Ինչպես չհիշեմ 60-ական թվականները, երբ դիմեցի զինկոմիսարիատ, խնդրելով ընդառաջել Ռուբեն Ահարոնյանին զինծառայությունից ազատելու հարցով: Այն ժամանակ նա նախապատրաստվում էր մասնակցելու Կանադայում կայանալիք ջութակահարների միջազգային մրցույթին: Բայց ահա զինակոչել էին ծառայության: Եվ միայն ընկեր Քոչինյանի միջամտությամբ հարցը կարգավորվեց: Ասացեք, խնդրեմ, իսկ ինչո՞ւ: Ուրեմն, եթե միջնորդությունը չլիներ, Ռուբեն Ահարոնյանը ոչ միայն հաջողություն չէր ունենա, այլև որպես արվեստագետ շատ բան կկորցներ: Կկորցներ նաև մեր ազգային մշակույթը: Բայց ահա նա, մասնակցելով այդ մրցույթին, մեզ բերեց առաջին մրցանակ:

Այսօր ինչպես չհիշեմ, որ 20—30-ական թվականներին աղքատ է ապրել երաժիշտը, դերասանը, գրողը, բայց նրանք չեն դավաճանել իրենց արվեստին, իրենց քնարին: Այն ժամանակ ամեն մի հայր, մայր հպարտ էր, որ իր երեխան սովորում է երաժշտական դպրոցում, որովհետև նա գտել է իր տեղը և կյանքի ինչպիսի պայմաններ էլ որ լինեն, չէր նահանջի, իսկ այսօր... Ցավոք, մարդիկ մտածում են, որ իրենց երեխան պետք է տասնվեց տարի սովորի ու ստանա չնչին աշխատավարձ: Ուրեմն, ո՞ւմ է ձեռնտու այդ մշակույթի բնագավառը: Ավելի լավ չէ՞ երեխային դարձնել իրավաբան ու տնտեսագետ, որպեսզի նա ապրել կարողանա... Ահավասիկ մեր սոցիալական տեղաշարժերի հետևանքը:

Քանի-քանի չինովնիկներ, ֆունկցիոներներ են ղեկավարել և շարունակում են ղեկավարել մշակույթի ասպարեզը: Խորհում եմ, թե արդյոք ինչպես բացատրել, որ Խորհրդային Միությունը, աշխարհի այդ հսկան մեծ արվեստագետներ է տվել: Այո, ինչո՞վ բացատրել, որ չնայած նման պայմաններին, բայց տվել է: Նախ, ժողովուրդը միշտ էլ ունեցել է տաղանդներ ծնելու կարողություն, այնուհետև ժողովրդի մեջ եղել են ակտիվ ստեղծագործական ուժեր, որոնք, հակառակ այդ չինովնիկական անտարբերության, իրենց նվիրաբերել են արվեստին, հավատարիմ մնալով դարերի խորքից եկած ավանդույթներին:

Ամեն մի ժողովուրդ ունի իր ավանդույթները՝ իր ճակատագիրը և այդ առումով մտածում եմ, որ այսօր Վ. Համբարձումյանի, Ա. Խաչատրյանի, Մ. Սարյանի մեծությունը որոշվում է Խորենացու, Նարեկացու, Շիրակացու և ոչ թե վարչահրամայական կառավարման կաղապարված մակարդակով: Եվ չկորցնելով լավատեսությունը, մեր ազգային արժանապատվության իրավունքով պետք է ի լուր աշխարհի հայտնել, որ Նարեկացին աշխարհին է ներկայացվում Սարյանով, Ա. Խաչատրյանով: Եթե այսօրվա երախտավորները չլինեին, ո՞վ պետք է աշխարհին հասցներ Նարեկացու հանճարը, մեր նախնիների թողած հոգևոր գանձերը: Որքան էլ որ ծանր վիճակի մեջ լինենք, ազգովի պետք է ամեն մեկս կատարենք մեր պարտքը, որ կարողանանք ճիշտ կողմնորոշվել: Այլապես ժողովուրդը գոյություն չի ունենա: Ժողովուրդը միայն այդպես կարող է գոյատևել:

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Որպես արվեստագետ, ինչպե՞ս եք գնահատում տեղաշարժերը հասարակության մեջ, արվեստում: Դրանք, անշուշտ, շաղկապված են, բոլոր երևույթները նորովի են ըմբռնվում հասարակության կողմից, այսպես ասած, վերակառուցման լույսով:

ԷԴ. ՄԻՐԶՈՅԱՆ.— Այսօր մեր ազգի և, ընդհանուր առմամբ, խորհրդային ժողովուրդների ճնշող մեծամասնության համար պարզ դարձավ, որ մեզ ղեկավարող հասարակական համակարգը այլևս նախկին ձևով ի վիճակի չէ կառավարելու ժամանակակից կյանքի բուռն ընթացքը, հաղթահարելու զարգացման սոցիալիստական հունից շեղվելու, բյուրոկրատական, չինովնիկական գործելակերպով տարվելու միտումները: Դոգմատիկ մտածելակերպը դարձել է «պրոկրուստյան մահիճ» և այն, ինչ չէր հարմարվում դրան, անօրինական էր համարվում:

Այսօր, չնայած ուշացումով, կենսական անհրաժեշտություն է դարձել իրավական պետության հաստատման հարցը: Մինչդեռ իրականում դեմոկրատիան դեռևս նոր տարբերանշանով գլխարկ է մեր ձեռքին, որով շատերը երկնչում են իրենց գլուխը ծածկել: Ես ցավով եմ մտածում այն մասին, որ մեր հասարակությունը ղեկավարվել է ոչ թե օրենքներով, այլ՝ մարդկանցով և նրանց քմահաճույքներով: Ասել է, թե միշտ եղել է մեկը, որն իրեն է ենթարկել հասարակությունը: Այստեղ



թերևս տեղին է հիշել Սոֆոկլեսի խոսքերը. «Պետությունը պետություն չէ, ուր տիրակալ է մեկը»: Ուրեմն, վերակառուցումը պետք է հնարավորություններ ընձեռի, որ պետության ղեկավարը մնա ոչ թե մեկը, այլ դառնա ժողովուրդը: Սա ամենակարևորն է, վերակառուցման հաղթանակի երաշխիքը:

Մյուս կարևոր հարցը, որը մտատանջում է ինձ, որպես մարդու, արվեստագետի, որպես ժողովրդի ծառայի՝ դեպուտատի, հետևյալն է. մենք միշտ խոսում ենք օրենքների մասին, բայց այսօր, ցավոք, դեռևս կան կազմակերպություններ, որոնք օրենքներով չեն շարժվում: Խախտումները բոլոր բնագավառներում համընդհանուր բնույթ են կրում: Եվ ահա բանը հասել է այնտեղ, որ կյանքի չգրված օրենքներով մեր իրականության մեջ սահմանազատվել են երկու կարգի խախտումներ: Մեկը, այսպես կոչված, թույլատրելի, մյուսը՝ հակաօրինական: Միտքս ավելի պարզելու համար հիշեմ մի դեպք 1950-ական թվականներից: Գրիգոր Հարությունյանը խիստ մտահոգված էր կոմպոզիտորների միության նոր կառուցվող շենքով: Այն ժամանակ մեր միության վարչության նախագահն էր Ղազարոս Սարյանը: Անձնուրաց, հայրենասեր մարդիկ... Շենքի կառուցումը շատ խոչընդոտների էր հանդիպում, բայց միևնույն է, մենք պետք է ունենայինք մեր օրրանը, մեր սուրբ տաճարը: Եվ Ղազարոս Սարյանը հաճախ էր ասում. «Պետք է անպայման կառուցել, թեկուզ խախտումների գնով, բայց պետք է կառուցել»: Այդ խախտումները թելադրվում էին գործի շահերից ելնելով, հաղթահարելով բյուրոկրատական արգելքները: Այսօր նման երևույթները շատ են բարդացել ու տարբեր երանգավորում ստացել: Մեկը խախտում է հանուն գործի, մյուսը՝ հանուն անձնական շահի:

Ըստ իս միայն ժողովրդական իշխանության պայմաններում է հնարավոր հասնել սոցիալական արդարության, աշխատավոր մասսաների մասնակցությանը հասարակական ու պետական հարցերի լուծման գործին:

Եվ ճիշտ էր Ավետիք Իսահակյանը, երբ մեր զրույցներից մեկի ժամանակ ասում էր, որ միակ ճիշտ ճանապարհը պառլամենտարիզմն է:

Ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում մեզ ուղղված հարցերից մեկն այն էր, թե ինչպես ենք մենք՝ դեպուտատներս, վերաբերվում տարբեր կուսակցություններին: Ես գրեցի, որ կողմնակից եմ տարբեր կուսակցությունների: Ճշմարտության դեմ չմեղանչելու համար ասեմ, որ պատմական ապրիլյան պլենումի շնորհիվ է, որ մեր երկրում թափ է առել բազմակարծությունը, բացախոսությունը, տարբեր կարծիքների ու առաջարկների արտահայտումը, քաղաքական բանավեճը:

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Մեր կուսակցությունն ու կառավարությունը, գերագույն իշխանություններն ամեն կերպ երկխոսության մեջ են մտնում ժողովրդական ամենալայն զանգվածների, տարբեր խավերի հետ, գտնելով, որ վերակառուցման մայրուղի կարելի է դուրս գալ միմիայն փոխզիջումների, համագործակցման ճանապարհով և, իհարկե, միայն համատեղ ջանքերով: Ասել է թե՝ ներկայիս փուլում մեր պառլամենտի առջև բարդ խնդիրներ են ծառացած: Որպես ժողովրդական դեպուտատ, ինչպե՞ս եք գնահատում այն պառլամենտի խնդիրները, որի անդամն եք ժողովրդի կամքով:

ԷԴ. ՄԻՐԶՈՅԱՆ.— Երկրի դեմոկրատացման ներկա փուլում, երբ տարբեր բնույթի կարծիքներ են արտահայտվում նույնիսկ ղեկավար գործիչների հասցեին, դա չի կարող մեզ չանհանգստացնել: Հարցն այն է, որ քննադատությունը պետք է հիմնավորված ու հասցեագրված լինի, կրի կոնստրուկտիվ բնույթ, ունենա համաժողովրդական հասարակական հնչեղություն: Նկատենք, որ մեզ ժառանգություն են մնացել բազում չլուծված պրոբլեմներ, վերանայման ու վերագնահատման արժանի հարցեր, դեպքերի ու դեմքերի նոր արժեքավորման խնդիրներ:

Մեր անցած ուղու ճշմարիտ նկարագրի բնութագրումը պահանջում է հետևողական, մանրակրկիտ անաչառ աշխատանք դեռևս փակի տակ գտնվող վավերագրերի հետ, գիտական շրջանառության մեջ դնել ու սերունդներին ներկայացնել մեր բարդ ու հակասական ընթացքի կնճռոտ էջերը:

Հայտնի է, որ Ն. Ս. Խրուշչովը գլխավորեց ստալինիզմի մերկացումը, այդ գործը հեռու տարավ, շատ ու շատ հեռու, քան կարելի էր երևակայել, որովհետև այն ժամանակ մեր քաղաքական դաստիարակությունը, մեր մակարդակն այն աստիճանի չէր, որպեսզի կարողանայինք երևույթների դինամիկան ամբողջ իր բարդությամբ ըմբռնել:

Այն, ինչը հասկանալի էր ակադեմիկոս Սախարովին, մենք դեռևս չէինք ըմ-

բռնում, ցավոք, մեր գիտնական քաղաքացու գուշակությունները օտարածին էինք համարում: Ինչպիսի դաժան անարդարություն... Եվ եթե այսօր Սախարովին հասկացանք, ապա միայն այն պատճառով, որ ինչ-որ չափով կարողացանք ճիգերով մոտենալ այն բարձունքին, որն առաջ մեզ համար բոլորովին անհասկանալի էր:

Հիշում եմ մի դիլիջանցու պատմություն: Եղել է Արամբեկ անունով մեկը, որն իշխանության տակ շատ մարդիկ ու հողեր է ունեցել: Մի առավոտ ծառայողը արթնացնում է նրան ու գանգատվում, որ իր ձին գողացել են: Արամբեկը քունը գլխին հարցնում է, թե՝ ե՞րբ են գողացել: Պատասխանում է, որ գողացել են գիշերը:

— Շատ լավ,— ասում է Արամբեկը,— իսկ դու քնա՞ծ էիր, թե՞ արթուն:

— Քնած էի,— պատասխանում է հպատակը:

— Այդ դեպքում ինչո՞ւ պիտի ես պատասխան տամ քո գողացված ձիու համար,— ասում է Արամբեկը:

— Ես քնած էի, բայց Արամբեկը արթուն էր,— համարձակ պատասխանում է հպատակը:

Այստեղ Արամբեկը հասկանում է նրա խոսքերի խոր իմաստը և հրամայում է ձին անմիջապես գտնել ու վերադարձնել տիրոջը:

Եթե ժողովուրդն իր հոգսերով ու ցավերով, գանգատներով ու դժգոհություններով դիմում է երկրի ղեկավարությանը, նա ճշմարիտ է վարվում, նա առողջ է մտածում:

Եթե Սումգայիթ է եղել, ուրեմն ինչ-որ կազմակերպություն քնած է եղել: Այդպիսին է ժողովուրդների արդար դատն ու օրենքը: Այն, ինչը որ լավ է, կվերագրվի ժողովրդին, ինչը որ վատ է՝ ղեկավարին, իսկ եթե լավը ղեկավարին վերագրեն, դա արդեն պատմությունն է որոշում, ճիշտ է վերագրում, թե՝ ոչ: Մեզ պատմության անունից խոսելու իրավունք չի վերապահված: Այսօր ինչպես ենք մտածում, ճշմարտությունն այս է: Եթե ընդունակ ես, դուրս արի այս խճճված վիճակից, եթե ոչ՝ մի եղիր ժողովուրդների ղեկավար, անկախ քո նվիրվածությունից, ազնիվ գաղափարներից:

Ես ինձ չեմ համարում պետական գործիչ, տնտեսագետ, քաղաքագետ, բայց իրավիճակն ինձ այդ է հուշում: Այն մարմինները, ղեկավարները, ովքեր պատասխանատու են այսօրվա վիճակի համար, պատասխանատու են ժողովրդի և պատմության առջև:

Ինչ վերաբերում է մեր դեպուտատական կորպուսին, ապա նրա գործունեությունը դրական եմ գնահատում: Անհնար է, որ միանգամից ամեն բան փոխվի, և պառլամենտը դառնա մեծ լիազորություններով օժտված մի մարմին:

Մեր պառլամենտի դրական կողմն այն է, որ նրա կազմում ունենք խելացի, ազնիվ, կրթված ու զարգացած մարդիկ, այդ թվում՝ հիանալի երիտասարդներ: Իսկ ընդհանուր կազմը հստակ ու օբյեկտիվորեն արտահայտում է մեր իրականությունը: Մի կողմից առողջ, ազնիվ ուժերի խիզախությունը, որը չէի ասի, թե մեծամասնություն է կազմում, մյուս կողմից, եթե կարելի է այսպես արտահայտվել, վարչարարների և պահպանողականների շփոթվածությունը, որ հրապարակայնության պայմաններում լավ երևում է, չեն կարողանում բացահայտ կերպով իրենց ժխտողական վերաբերմունքը, հակակրանքը արտահայտել վերակառուցման առաջամարտիկների, նորի, առաջադիմականի կողմնակիցների նկատմամբ: Վերակառուցումը հեղափոխական պրոցես է, այն, անշուշտ, միակերպ չի ընդունվում: Հնից կառչածները չեն ուզում հրաժարվել արդեն սովորական դարձած արժեքներից: Իսկ նորերն էլ հաճախ լավ պատկերացում չունեն իրենց փայփայած ծրագրերի վերաբերյալ: Նորի հաղթանակը դժվարին ու ծանր գործ է: Դրա արմատավորումը ջանք ու եռանդ է պահանջում, շատ ու շատ արժեքների վերագնահատում:

Մենք համագումար գնացինք այդ համոզվածությամբ, որովհետև առանց դրա անհնար է որևէ առողջ տեղաշարժ պատկերացնել: Դեմոկրատիան հենց դա է: Իրավական պետությունը սկսվում է դեմոկրատիայի հաղթանակից: Իսկ փակուղի, կարծում եմ՝ չկա: Երբ ժողովուրդն արթնանում է, նրան այլևս անհնար է քնեցնել, նա համառորեն կպահանջի իրենը այնքան ժամանակ, մինչև որ հասնի նպատակին: Եվ պահանջում է ընդամենը այն, ինչից տարիներ շարունակ զրկված է եղել: Եվ պատահական չէ, որ ուրալցի բանվորները Նիժնի Տագիլում Գորբաչովի հետ հանդիպման ժամանակ ասել են, որ իրենց այնքան էլ շատ բան հարկավոր չէ և ավելին չեն էլ խնդրում պետությունից: Ուզում են ուղղակի կապանքներից ազատվել, ուզում են հանգիստ աշխատել ու ապրել մարդավայել: Եվ դրա



համար ժողովուրդը պատրաստ է, նա միշտ էլ ազնիվ աշխատանքի համար է մարտնչել, ազնիվ վաստակի ու ապրուստի: Մի՞թե նա ավելին է պահանջել տասնամյակներ շարունակ խորհրդային մեր երկրում:

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Հասարակական կյանքի վերակառուցման արդի փուլն անխզելիորեն կապված է ազգային ինքնուրույնության դրսևորումների հետ: Դըրսևորումներ, որոնց ավանգարդը հանդիսացավ ղարաբաղյան շարժումը: Դա, անշուշտ, տասնամյակներով հասունացած պրոբլեմ էր, որը փաստորեն նոր ձևով ու բովանդակությամբ ի հայտ եկավ: Ի՞նչ կասեք այդ շարժման մասին:

ԷԴ. ՄԻՐԶՈՅԱՆ.— Մեր ազգային նորովի զարթոնքի համար մենք, անկասկած, պարտական ենք վերակառուցմանը, Գորբաչովին: Ժողովուրդն իմաստուն խոսք է ասել, որ հորդառատ գետի ջուրը առաջինը քշում է նրան, ով համարձակվել է խորտակել ամբարտակը: Կարևորն այն է, որ ամբարտակը խորտակված է: Ղարաբաղյան շարժումը եղել է ոչ թե մտացածին, կեղծ, այլ որպես օրգանական պահանջ: Այն պնդումը, թե դա ներմուծված է դրսից, նպատակ ունի վարկաբեկելու այդ շարժումը և հայ ժողովրդի նվիրական իղձը...

Սփյուռքը այս հարցում կատարել և կատարում է իր նվիրական դերը: Նա բարոյական մեծ աջակցություն է ցուցաբերում, բայց միաժամանակ մտավախություն արտահայտում ստեղծված ծայրահեղ լարված իրավիճակի համար: Անշուշտ, այդ մտավախության պատճառը շարժման խիստ անհանգստացնող, վտանգավոր փուլերն են: Բայց եթե կա կուլմինացիա, անպայման կա նաև լուծում: Դա անխուսափելի է, և լուծումը պայմանավորված է իրավիճակի բարդությամբ, նաև՝ նրա թելադրանքով: Ոչ մի ղեկավար և կուսակցություն բռնի կերպով չի կարող շեղել իրադրության տրամաբանական, բնական ընթացքը, կասեցնել այն:

Սփյուռքի տարբեր կուսակցություններին պատկանող անձինք հաճախ ինձ հարցրել են, թե ղարաբաղյան շարժումից առաջ արդյոք մենք մտածե՞լ ենք Ադրբեջանում բնակվող հայերի մասին: Իմ պատասխանը միանշանակ էր. «Շարժումը եղել է ինքնաբուխ, և ժողովուրդն իր հոգեկան պոռթկումը նախապես չէր կարող որևէ կաղապարի մեջ դնել, որևէ արշինով չափել»:

Այդ կարծիքին եմ եղել դեռևս 1988 թվականի փետրվարի սկզբներին, երբ Մոսկվայում էի և ինձ էին հասնում այդ շարժման առաջին ղողանջները:

Ղարաբաղյան հարցն այսօր դարձել է թևավոր խոսք, մեր երկրում ծագած ազգային հարցերի լուծման խորհրդանիշ:

Այսօր, հիրավի, մեր ժողովուրդը նահանջելու տեղ չունի, նա արդար ձայն է բարձրացրել և, ինչպես ասում են. «Ժողովրդի ձայնը սրբազան է»:

Ես կարծում եմ, որ ղարաբաղյան հարցում տասնամյակներ շարունակ խաբված է մնացել ադրբեջանական ժողովուրդը: Նրա արյան մեջ, օրորոցից ներարկվել է այն կեղծիքը, որ Ղարաբաղը իբր իրենցն է: Եվ տեղին է հիշել ժողովրդական այն խոսքը, որ ճշմարտությունը եթե ոսկով էլ ծածկես, լույս աշխարհ կգա:

Միակ ճշմարիտ ուղին այն է, որ հարկավոր է երկխոսության մեջ մտնել Ադրբեջանի ժողովրդի հետ. առողջ, կենսունակ ուժերի հետ և հավատը չկորցնել ուղեկորուստ՝ ... պատմականորեն կով թաղված ճշմարտությունը գտնելու հարցում: Ի վերջո մենք պատմականորեն ապրելով կողք-կողքի, պետք է միմյանց լավ ճանաչենք, այդ դեպքում, ասացեք խնդրեմ, ինչպես կկարողանան ապացուցել, որ հայ ժողովուրդը գոյություն չի ունեցել, որ ղարաբաղցիները հայեր չեն: Իրոք, խաբված է Ադրբեջանի ժողովուրդը, խաբվում, չարաչար խաբվում են նաև նրանց երեխաները, ովքեր վաղը հանրապետությունն են ղեկավարելու: Ուրեմն, պետք է հեռատես լինել: Պետք է այդ երեխաները իմանան, որ կան բարբարոսներ, կան արդարամիտ մարդիկ, որոնք պատսպարել են հայ մարդկանց ջարդերի ժամանակ: Ոչ մի դեպքում չպետք է բարբարոսությունը արդարության հետ դնել հավասար նժարների վրա: Կարծում եմ նաև, դա իմ խորին համոզմունքն է, որ ներկայիս պայմաններում ոչ թե սառը, մահաբեր զենքը պետք է վճռի հարցերը, այլ՝ արդարացի քաղաքական պայքարը: Սա է կոնֆլիկտի լուծման բանալին: Պետք է պատմական փաստերով վեր հանել ճշմարտությունը, պետք է հուշարձանների, արվեստի ստեղծագործությունների, ճարտարապետական կոթողների ճշմարիտ մեկնաբանմամբ ցույց տալ, որ Արցախը մայր Հայաստանի օրգանական, անբաժանելի մասն է, նրա հարազատ զավակը:

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Ներկայիս քաղաքական պայմաններում շատ է խոսվում պատմության սպիտակ բծերի մասին: Երաժշտության բնագավառում այն ինչ-

պե՞ս է արտահայտվել: Եթե շատ հարցեր նորովի են դրվում, ապա այսօր ինչպիսի՞ն է երաժշտական մշակույթի վիճակը:

ԷԴ. ՄԻՐԶՈՅԱՆ.— Նախ պետք է ասեմ, որ մեր ասպարեզում չկան արգելված կոմպոզիտորներ: Պատկերացրեք, որ տասնամյակների ընթացքում ոչ ոք չի սահմանափակել կոմպոզիտորների ստեղծագործական ազատությունը: Ճիշտ խոսք, ոմանք տուրք են տվել որոշ կարգախոսների, բայց գործնականում դա բացասաբար չի անդրադարձել ստեղծագործական ռիթմի վրա: Այս առումով հատկանշական է մի փաստ, որն արժե հիշատակել:

1988 թվականին, մարտ ամսին Բոստոնի թերթերից մեկի թղթակիցն ինձ խնդրեց պատմել այն մասին, որ մեզ մոտ երաժշտության բնագավառում ստեղծագործական ազատություն չի եղել: Ես պատասխանեցի, որ հրապարակվել են դիրեկտիվ որոշումներ, բայց մենք մնացել ենք ինքնուրույն և ամենևին չենք ենթարկվել այդ որոշումներին:

1948 թվականին Գրիգոր Եղիազարյանին, Հարո Ստեփանյանին հանդիմանեցին ֆորմալիզմին տուրք տալու համար: Չնայած այդ իրողությանը, Գրիգոր Հարությունյանը կանչում է Հարո Ստեփանյանին և բարեկամաբար ասում, որ նա կարող է ազատորեն ստեղծագործել: Դա ոգևորում է կոմպոզիտորին և նա, ի դեպ, հենց այդ տարիներին է գրում իր լավագույն ստեղծագործությունները:

Կնշանակի, չի կարելի ասել, թե անցյալ տասնամյակներում ամեն բան սև ու մութ է եղել: Այսօր, ինչպես երբեք, շատ կարևոր է անցյալը սթափ հայացքով, իրատեսորեն գնահատել, իրերը, երևույթները կոչել իրենց իսկական անուններով:

Ավելին կասեի այդ հարցի առնչությամբ: Մեր վարչության ոչ մի որոշման մեջ չի նշված դատապարտել այսինչ կոմպոզիտորին նրա հակաժողովրդական հայացքների համար: Ազատ, անկաշկանդ ստեղծագործական միտքը չի բռնադատվել և դրա ակունքները բխում են մեր կոնսերվատորիայից, որը երկար տարիներ ղեկավարել է կոմպոզիտոր Ղազարոս Սարյանը:

Ինչ վերաբերվում է այսօրվա երաժշտական մշակույթի վիճակին, ապա պետք է ասեմ, որ մեծ հնարավորություններ են ընձեռված կոմպոզիտորներին անկաշկանդ ստեղծագործելու համար: Այնպես որ, անկեղծ տաղանդը չի ենթարկվի ոչ մի օրենքի և կտա իր բաղձալի պտուղները:

Երաժշտության մեջ աչքի է ընկնում նաև, այսպես կոչված, շուկայականը, որը դեռևս իր ունկնդիրներն ունի: Իհարկե, ցավալի է, որ կան էժանագին երաժշտության երկրպագուներ, բայց դրա դեմ պայքարի միակ միջոցը մեր կյանքը բարձրարվեստ, բարձրճաշակ երաժշտությամբ հագեցնելն է: Օրենքով, բռնի ուժով ցանկալի արդյունքի չենք հասնի: Մեր խնդիրը պետք է լինի մանկապարտեզում, դպրոցում երեխային տալ երաժշտական ճիշտ դաստիարակություն, որպեսզի հետո նա չվազի շուկայական էժան, անարվեստ երաժշտության հետևից: Էժան երաժշտությունն արգելող օրենք չկա և օրենքով էլ, կրկնում եմ, արդյունքի չենք հասնի, եթե չկարողանանք ազգովի բարձրացնել հայ մարդու ներքին կուլտուրան, պատվաստել իր ազգային երաժշտությունը ունկնդրելու և գնահատելու ճաշակ: Հայաստանում արդեն մանկական և մեծահասակների շատ երգչախմբեր կան, որոնք լծվել են այդ շնորհակալ գործին: Պայմաններ են ստեղծվում նաև դպրոցներում երեխաների երաժշտական դաստիարակությունը բարելավելու ուղղությամբ, մեծ թափ է ստացել ազգային երաժշտության պրոպագանդման գործը, ամուր կապեր են ստեղծվել սփյուռքի հետ և սփյուռքահայ երաժշտության պրոպագանդումը դարձել է մեր գլխավոր խնդիրներից մեկը:

Մեր հնարավորություններն այսօր թույլ են տալիս ունենալու մեծ լսարան և դա պարտավորեցնում է կոմպոզիտորներին, երաժշտության բնագավառի բոլոր երախտավորներին անմնացորդ նվիրվելու այդ մեծ ու շնորհակալ գործին: Երաժշտությունը կարող է ժողովուրդներին արթնացնել, նրան պայքարի կոչել, և մենք դա խորությամբ ենք գիտակցում:

Հայաստանի կոմպոզիտորների միությունը այսօր ազատ, անկախ կազմակերպություն է, որը մշակում է իր ինքնուրույն կանոնադրությունը և պիտի մտնի միութենական կոմպոզիտորների ֆեդերացիայի մեջ՝ պահպանելով իր ինքնուրույնությունն ու անկախությունը: Այդպես է որոշել անցյալ տարի տեղի ունեցած ԽՍՀՄ կոմպոզիտորների միության պլենումը, բոլոր ազգային, հանրապետական կոմպոզիտորների միությունները պայմանագրային կապի մեջ են մտնում համամիութենական կոմպոզիտորների միության հետ: Այսօր մենք լրիվ ազատ ենք մեր ոչ միայն ստեղծագործական ծրագրերն ու մտահղացումներն իրականացնելու, այլև ֆինանսական միջոցները տնօրինելու առումով:



Եվ արդեն դրա շնորհիվ մենք Մոսկվայում ստեղծել ենք Հայաստանի կոմպոզիտորների միության մոսկովյան կամերային երգչախումբ: Նրա կեսից ավելին հայեր են, ինչպես նաև՝ ռուսներ և այլ ազգությունների ներկայացուցիչներ: Կամերային երգչախումբն արդեն տվել է իր համերգները Մոսկվայում, Հայաստանում, մասնավորապես երկրաշարժից տուժած վայրերում: Համերգացանկը բաղկացած է Եկմալյանի, ժամանակակից հայ կոմպոզիտորների, ռուսական և համաշխարհային երաժշտության լավագույն նմուշներից: Գեղարվեստական ղեկավարն է շնորհալի երաժիշտ-խմբավար Նելլի Անդրեասյանը:

Կոմպոզիտորների միությունը ստեղծել է կամերային համույթ, որը ևս տվել է իր առաջին համերգները: Նրա ղեկավարն է կոմպոզիտոր Յուրի Գալստյանը: Կոմպոզիտորների միությունը ձեռնարկել է ստեղծել սեփական հրատարակչությունը, որի աշխատակարգը ծրագրավորելու է ԱՄՆ-ից նվեր ստացած մի հիանալի կոմպյուտերային սարքավորում: Առաջնային խնդիրն է մեր ստեղծագործությունները հասցնել ունկնդրին: Այդ նպատակով լրիվ վերակառուցվում է կոմպոզիտորների տան ինֆորմացիայի և պրոպագանդայի կենտրոնը:

Չմոռանանք նորից, որ ղարաբաղյան շարժումը Ազատության հրապարակում երգով սկսվել է և հենց այդ երգն է, որ վառ է պահում մեր ժողովրդի ազատատենչ ոգու անմար կրակը:

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.— Ձեր միությունը ակտիվ մասնակցություն ունի երկրաշարժից տուժած վայրերի վերականգնման աշխատանքներին: Խնդրում ենք այդ առթիվ մի քանի խոսք ասեք:

ԷԴ. ՄԻՐԶՈՅԱՆ.— Մեր ժողովրդին բաժին հասած այդ աղետին՝ երկրաշարժին, անարձագանք չմնացին նաև կոմպոզիտորները: Կոմպոզիտոր Հրաչիկ Մելիքյանը 12 օր անընդհատ իր ղեկավարած խմբով մասնակցել է փրկարարական աշխատանքներին:

Երկրաշարժից տուժած վայրերի վերականգնման աշխատանքների համար Խորհրդային Միության խաղաղության ֆոնդը հատկացրեց 43 միլիոն ռուբլի: Բացի այդ, Ստեփանավանում կառուցվում է գթության ֆոնդի առողջարան 12 միլիոն ռուբլի արժողությամբ, որից 3 միլիոնը տալիս է խորհրդային խաղաղության ֆոնդը:

Ավելացնեմ նաև, որ բարեգործական շատ համերգներից ստացված հազարավոր ռուբլի եկամուտները նույնպես հատկացվել են երկրաշարժի ֆոնդին: Շատ կոմպոզիտորներ անձնական ներդրումներ ունեն այդ հայրենասիրական գործին: Նման կարգի օգնությունը մեր կողմից շարունակվում է:

Հայրենի ավերված տարածքների վերականգնմանը մասնակցելը յուրաքանչյուրիս պարտքն է: Մեր առաջնահերթ խնդիրն է երգով բարձր պահել մեր ժողովրդի ոգին, նրա անկոտրում կամքը:

---

# ԿՐՈՆԸ ԵՎ ԵԿԵՂԵՑԻՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿՅԱՆՔՈՒՄ

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՄԵՐ ԵՐԿՐԻ սոցիալ-տնտեսական զարգացման ստրատեգիան նախատեսում է սոցիալական ակտիվ քաղաքականության իրականացում, սոցիալիստական արդարության սկզբունքի հետևողական հաստատում, հասարակական հարաբերությունների կատարելագործում, քաղաքական և գաղափարախոսական ինստիտուտների աշխատանքի ձևերի ու մեթոդների նորացում, այն ամենի վճռական հաղթահարում, ինչը կասեցնում է հասարակական առաջադիմությունը: Կուսակցության ստրատեգիական հիմնական խնդիրներից մեկը աշխատավորների սոցիալ-քաղաքական և գաղափարախոսական միասնության ապահովումն է, նրանց գիտամատերիալիստական աշխարհայացքի ձևավորումը, խորհրդային յուրաքանչյուր մարդու մեջ սոցիալիստական գիտակցության ամրապնդումը:

Սոցիալիստական գիտակցության ամրապնդումը, աշխատավորների գիտական աշխարհայացքի ձևավորումը տեղի է ունենում մարդկանց գիտակցության ու վարքագծի մեջ անցյալի վերապրուկների և կրոնական ներգործության դեմ տարվող հակամարտ պայքարի պրոցեսում: Խոսքն այն մասին է, որ չնայած սոցիալիստական հասարակության հասարակական գիտակցության մեջ **գիտամատերիալիստական աշխարհայացքը** դարձել է տիրապետող՝ այնուամենայնիվ, նրա սկզբունքները կայուն ձևով չեն հաստատվել յուրաքանչյուր մարդու գիտակցության մեջ, և ոչ բոլորի համար դարձել աշխատանքային ու հասարակական կյանքի ուղեցույց: Դրա ապացույցը մատերիալիստական աշխարհայացքի հետևողական կողմնակիցների կողքին սպառողական, քաղքենիական, անհատապաշտական հոգեբանության, հակահասարակական մտածելակերպի ու կրոնական համոզմունքների տեր մարդկանց առկայությունն է: Նման երևույթները բնակչության աշխատանքային, բարոյական, իրավական և աթեիստական դաստիարակության մեթոդների ու ձևերի կատարելագործման, կոմունիստական դաստիարակության դերի բարձրացման լուրջ խնդիրներ են առաջադրում:

Աթեիստական դաստիարակության ու հակակրոնական պրոպագանդայի բնագավառում առաջացած արդի դժվարությունները ամենից առաջ կրոնի, եկեղեցու և հավատացյալների նկատմամբ խորհրդային պետության և ԽՄԿԿ-ի մշակած քաղաքականության ոչ ճիշտ կենսագործման արդյունք են: Հայտնի է, որ բնակչության աթեիստական դաստիարակության և կրոնի դեմ տարվող գաղափարախոսական պայքարի խնդիրները միշտ կազմել են ԽՄԿԿ-ի գաղափարադաստիարակչական աշխատանքի անքակտելի մասը: Դեռևս 1905 թվականին գրած «Սոցիալիզմը և կրոնը» հոդվածում Վ. Ի. Լենինը նշել է. «Մեր ծրագիրն ամբողջովին կառուցված է գիտական և այն էլ հատկապես մատերիալիստական աշխարհայեցողության վրա: Ուստի մեր ծրագրի պարզաբանումն անհրաժեշտորեն պարունակում է նաև կրոնական մշուշի իսկական պատմական ու տնտեսական արմատների պարզաբանումը: Մեր պրոպագանդան անհրաժեշտորեն պարունակում է նաև աթեիզմի պրոպագանդա...» (ԵԼԺ, հ. 12, էջ 175): Չնայած այդ ժամանակից ի վեր մեր երկրում և ողջ աշխարհում տեղի ունեցած հսկայական փոփոխությունները հանգեցրել են կրոնի զգալի կերպարանափոխման, այնուամենայնիվ պետք է նկատի ունենալ, որ ամեն մի, այդ թվում նաև մոդեռնացված ձևերում կրոնը տալիս է աշխարհի խեղաթյուրված

*ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ԱՅՎԱԶ ՊԵՏՐՈՍԻ— Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի փիլիսոփայության ամբիոնի ավագ դասախոս*



արտացոլումը, խոչընդոտում բնության և հասարակության մասին գիտական գիտելիքների տարածմանը: Ուստի և աթեիստական գիտելիքների պրոպագանդման, ինչպես միշտ, այսօր ևս կարևոր տեղ է զբաղեցնում ԽՄԿԿ-ի գաղափարախոսական աշխատանքում:

Կրոնական աշխարհայացքի դեմ տարվող պայքարը համարելով կուսակցության ծրագրային խնդիրներից մեկը, Վ. Ի. Լենինը զգուշացնում էր, որ այն երբեք չպետք է առաջին պլան մղվի և միշտ պետք է խուսափել վարչարարությունից, շտապողականությունից, բռնությունից ու երբեք չվիրավորել հավատացյալների կրոնական զգացմունքները: Նա սովորեցնում էր, որ «կրոնական նախապաշարմունքների դեմ պետք է պայքարել չափազանց զգույշ. մեծ վնաս են պատճառում նրանք, ովքեր այդ պայքարի մեջ մտցնում են կրոնական զգացմունքի վիրավորանք: Պետք է պայքարել պրոպագանդայի միջոցով, լուսավորման միջոցով» (ԵԼԺ, հ. 37, էջ 225): Թվում է թե լենինյան այս ցուցումները պետք է ուղեցույց դառնային խորհրդային պետության ու ԽՄԿԿ-ի աթեիստական գործունեության համար: Ցավոք, այդպես չեղավ: Արդեն 20-ական թվականների վերջերին կուսակցության ու կառավարության մի շարք ղեկավարներ (Ի. Վ. Ստալին, Լ. Մ. Կագանովիչ, Ե. Մ. Յարոսլավսկի և ուրիշներ), հեռանալով լենինյան ցուցումներից, կրոնի դեմ տարվող պայքարը համատեղելով կուլակության ու մեր հասարակության նկատմամբ թշնամական ուժերի դեմ մղվող պայքարի հետ, արագ կերպով սկսեցին փակել եկեղեցիները և ոչնչացնել կրոնական պաշտամունքի առարկաները: 20-ական թվականների վերջերին միայն Մոսկվայում փակվեցին ավելի քան 300 եկեղեցիներ, իսկ Վրաստանում, 1921—1929 թվականներին եկեղեցիների թիվը կրճատվելով՝ 1450-ից հասավ 352-ի: Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո Հայաստանում գործում էին ավելի քան 573 եկեղեցի, վանք ու սրբավայր: 30-ական թվականների սկզբներին կրոնի ու եկեղեցու նկատմամբ սկիզբ առած ոչ ճիշտ քաղաքականության հետևանքով հանրապետությունում փակվեցին հարյուրավոր եկեղեցիներ ու վանքեր և մնացին ընդամենը գործող 21 եկեղեցի ու 7 վանք: Ներկայումս հանրապետությունում գործում են 32 եկեղեցի ու 10 վանք: Նման վիճակ է տիրել նաև մյուս հանրապետություններում:

Կրոնի, եկեղեցու և հավատացյալների դեմ հարձակողական պայքարն ավելի սրվեց, երբ 1929 թվականի հունիսին կայացած Մարտնչող անաստվածների համամիութենական II համագումարը հռչակեց «Կրոնի դեմ պայքարը հանուն սոցիալիզմի պայքար է» լոզունգը: Գնահատելով այդ համագումարի արդյունքները, նրա Կենտրոնական խորհրդի նախագահ Ե. Մ. Յարոսլավսկին մեր երկրի կրոնական կազմակերպությունները համարեց որպես արտասահմանյան կապիտալիստական կազմակերպությունների ու Խորհրդային Միության հակահեղափոխական տարրերի կողմից օգնություն ստացող, պաշտպանություն գտնող քաղաքական գործակալություններ և հայտարարեց, թե «կրոնի և կրոնական կազմակերպությունների դեմ տարվող պայքարը կապիտալիստական տարրերի դեմ տարվող դասակարգային պայքարի լուրջ խնդիրներից մեկն է»: Ավելին, Անաստվածների միության II համագումարի կողմից ԽՍՀՄ բոլոր աշխատավորներին, բանվորներին, գյուղացիներին ու կարմիր բանակայիններին ուղղված փաստաթղթերից մեկում ասվում էր, որ «պայքարը հակակրոնական ճակատում՝ աշխատանքի կողմից կապիտալի դեմ տարվող դասակարգային-քաղաքական պայքարի տեսակներից մեկն է միայն»: Սա բացահայտ հարձակում էր կրոնական կազմակերպությունների և մասսաների կրոնական տրամադրությունների վրա, որն արդեն 20-ական թվականներից հանգեցրեց Վ. Ի. Լենինի ու կուսակցության կողմից մշակած աթեիստական պրոպագանդայի բովանդակության լուրջ խեղաթյուրման:

Կրոնի, եկեղեցու և հավատացյալների նկատմամբ այդպիսի բացասական վերաբերմունքը «Եկեղեցին պետությունից և դպրոցը եկեղեցուց անջատելու մասին» (1918 թ.) լենինյան դեկրետի սկզբունքների խախտման արդյունք են: Լենինյան դեկրետը չէր դնում կրոնի ու եկեղեցու դեմ հախուռն պայքար ծավալելու, կարճ ժամանակամիջոցում այն հաղթահարելու պահանջ, այլ սահմանափակում էր կրոնական կազմակերպությունների նախկինում ունեցած որոշակի իրավունքներ ու արտոնություններ և սահմանում խորհրդային պետության քաղաքականության հիմունքները: Անհատի պաշտամունքի տարիներին դեկրետի սկզբունքների ոչ ճիշտ կիրառումը հանգեցրեց կրոնի նկատմամբ վերաբերմունքի լենինյան գծից հեռացման և այն կարծիքի տիրապետությանը, թե իբր մեր երկրի ողջ հոգևորականությունը թաքնված հակահեղափոխական ուժ է, որը խանգարում է սոցիալիզմի կառուցման գործին ու խոչընդոտում նրա առաջընթացը:

Նման վերաբերմունքի հետևանքով հոգևորականներն ու նրանց ընտանիքների անդամները զրկվել են խորհուրդներում դեպուտատներ ընտրելու և ընտրվելու իրավունքից, նշանակալից չափով սահմանափակվել է կրոնական պրոպագանդայի ազատությունը, եկեղեցու քարոզչական ու վարչական գործունեությունը: Թեև հոգևորականների քաղաքացիական իրավունքները 1936 թվականի սահմանադրությամբ հավասարվեցին մյուս քաղաքացիների իրավունքների հետ, այնուամենայնիվ առանձին ղեկավար գործիչների համառ պնդումների հետևանքով եկեղեցականները հետագայում ևս չկարողացան ընտրվել խորհուրդներում: Ավելին, նման քաղաքականության պատճառով բավականին թվով հոգևորականներ հայտնվեցին աքսորավայրերում, բանտերում ու ճամբարներում:

Պետության ու եկեղեցու միջև ստեղծված հարաբերությունների բացասական հետևանքների մասին ժամանակին զգուշացրել են կուսակցական ու պետական ականավոր գործիչներ Մ. Ի. Կալինինը, Ս. Գ. Օրջոնիկիձեն, Պ. Դ. Սմիդովիչը, Պ. Ա. Կրասիկովը, Վ. Դ. Բոնչ-Բրուևիչը, Ա. Ի. Ռիկովը, Ա. Վ. Լունաչարսկին և շատ ուրիշներ: Սակայն նրանց ջանքերը բավարար չեղան կրոնի, եկեղեցու, հավատացյալների նկատմամբ վերաբերմունքի լենինյան սկզբունքներն անշեղորեն կենսագործելու և ստալինյան դիրքորոշումը վերափոխելու համար:

Միայն Հայրենական մեծ պատերազմի տարիներին, երբ դաշնակից պետությունների հասարակական ու կրոնական կազմակերպությունները, համերաշխություն դրսևորելով, իրենց կառավարություններից պահանջեցին արագացնել Եվրոպայում երկրորդ ռազմաճակատի բացումը և մեծացնել ԽՍՀՄ-ին ցույց տրվող օգնությունը, երբ մեր երկրի հոգևորականների հայրենասիրական ջանքերով հսկայական գումարներ հավաքվեցին կարմիր բանակի համար ռազմական տեխնիկա ստեղծելու նպատակով ու ռազմաճակատներից կրոնական կազմակերպություններից ստացվող օգնության մասին Կրեմլ ուղարկվեցին բազմաթիվ նամակներ ու հեռագրեր, Ստալինը ստիպված եղավ մտածել պետության ու եկեղեցու միջև գոյություն ունեցող հարաբերության մեջ փոփոխություն կատարելու մասին:

Հատկապես մեծ նշանակություն ունեցավ 1943 թ. փետրվարին կարմիր բանակի հոբելյանական օրվա առթիվ Ուլյանովսկ քաղաքից միտրոպոլիտ Սերգիի Ստալինին հղած նամակը, որտեղ հայտնվում էր, որ իր և հոգևորականների ջանքերով Դմիտրի Դոնսկոյի անվան տանկային շարասյուն ստեղծելու նպատակով հավաքել են 6 միլիոն ռուբլի, մեծ քանակությամբ ոսկյա ու արծաթյա իրեր և խնդրում են ռուսական ուղղափառ եկեղեցու կողմից ընդունել որպես նվիրատվություն: Սասունցի Դավթի անվան տանկային շարասյուն ստեղծելու նպատակով նման քայլի էր դիմել նաև հայ առաքելական եկեղեցին: Պատերազմական ծանր կացությունը հարկադրեց Ստալինին ընդհանուր թշնամու դեմ տարվող պայքարում միավորել հավատացյալների ու աթեիստների ուժերը և էական փոփոխություններ մտցնել պետության ու եկեղեցու հարաբերությունների միջև: Չնայած 1943 թ. սեպտեմբերին Ստալինի և միտրոպոլիտներ Սերգիի, Ալեքսիի ու Նիկոլայի հետ ունեցած հանդիպումից հետո եկեղեցու գործունեության ոլորտները բավականաչափ ընդարձակվեցին, այնուամենայնիվ լենինյան սկզբունքները լիովին չվերականգնվեցին: Դրանք չվերականգնվեցին նաև հետստալինյան ժամանակաշրջանում, որի հաստատումն են հետևյալ փաստերը. 1950—1964 թթ. ԽՍՀՄ-ում յուրաքանչյուր տարի միջինը փակվել է 420, 1965—74 թթ.՝ 48, իսկ 1975—87 թթ.՝ 22 ուղղափառ եկեղեցի: Նույն բանը տեղի է ունեցել նաև մեր երկրում գոյություն ունեցող այլ դավանանքի կրոնական կազմակերպությունների հետ:

Ներկայումս, երբ պարզվել են անհատի պաշտամունքի և հասարակական կյանքի լճացման իսկական պատճառները, կեղծ է դառնում կրոնը սոցիալիստական հասարակության զարգացման գլխավոր արգելակիչ համարելու դատողությունը: Վերակառուցման կուրսը բացահայտեց, որ այդ պատճառները պետք է փնտրել մեր հասարակության ոչ թե վերնաշենքային, այլ բազիսային հարաբերությունների ոլորտում, որոնք ձևախեղվել են անհատի պաշտամունքի և լճացման տարիներին: Ստեղծված իրադրությունը պահանջում է արմատական փոփոխություն կրոնի, եկեղեցու և հավատացյալների նկատմամբ՝ ինչպես խորհրդային պետության քաղաքականության, այնպես էլ հասարակական կարծիքի մեջ:

Միայն սոցիալիզմի վերակառուցման արդի փուլում, երբ կատարելագործվում են նրա տնտեսական, քաղաքական ու հոգևոր կյանքի բոլոր ոլորտները, հնարավորություն է ստեղծվում լիակատար ձևով վերականգնել կրոնի, եկեղեցու, հավատացյալների նկատմամբ վերաբերմունքի լենինյան սկզբունքները և զգալի փոփոխու-



թյուններ կատարել պետության ու եկեղեցու հարաբերություններում: Առաջին անգամ փորձեր են արվում տալու քաղաքականության և էկոնոմիկայի, դաստիարակության ու կրթության, ընտանիքի և կենցաղի վրա եկեղեցու ունեցած ազդեցության օբյեկտիվ գնահատականը: Այդ բանը հատկապես դրսևորվեց անցյալ տարի Ռուսաստանում քրիստոնեությունը պաշտոնական կրոն ընդունելու 1000-ամյակի տոնակատարության առթիվ ընդունված պետական ու կուսակցական փաստաթղթերում և եկեղեցական գործիչների հետ հանդիպման ժամանակ մեր պետության ու կուսակցության ղեկավարների ունեցած ելույթներում:

Մոսկվայի և համայն Ռուսիո պատրիարք Պիմենի և ռուս ուղղափառ եկեղեցու Սինոդի անդամների հետ հանդիպման ժամանակ, խոսելով եկեղեցու գործունեության մասին, Մ. Ս. Գորբաչովը շեշտեց. «Կոչված լինելով կատարելու զուտ կրոնական ֆունկցիաներ, եկեղեցին չի կարող անմասն մնալ այն բարդ պրոբլեմներից, որ հուզում են մարդկությանը, այն պրոբլեմներից, որ տեղի են ունենում հասարակության մեջ: Ամենաբարձր գնահատականի են արժանի երկրի կրոնական կազմակերպությունների խաղաղարարական գործունեությունը, միջուկային զինաթափման պայքարում նրանց ներդրած ավանդը: Նույնքան էլ բարձր գնահատականի են արժանի հոգևորականության ելույթները հանուն հումանիզմի, ժողովուրդների միջև արդարացի հարաբերությունների, ի պաշտպանություն խորհրդային պետության ներքին ու արտաքին քաղաքականության»: Շեշտելով եկեղեցու և ժողովրդի դարավոր միասնությունը, Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ «մենք ունենք ընդհանուր պատմություն, միևնույն հայրենիքը և միևնույն ապագան» և հույս հայտնեց, որ եկեղեցին ու հավատացյալներն այսուհետ ևս կշարունակեն կատարել իրենց հայրենասիրական ու քաղաքացիական պարտքը:

Ներկայումս պետություն-եկեղեցի հարաբերություններում կատարվող փոփոխությունները կրոնական կազմակերպությունների համար ստեղծում են իրենց գաղափարախոսության և բարոյականության պրոպագանդման լայն հնարավորություններ: Հավատացյալների ու հոգևորականների ձայնն այսօր հնչում է ոչ միայն եկեղեցիներում և տաճարներում, այլև կենտրոնական հեռուստատեսության ու ռադիոյի հաղորդումներում, ժողովրդական դեպուտատների համագումարներում: Խոսվում է պատմության շրջադարձային պահերին ժողովրդի ուժերի համախմբման, նրա մասնատված հողերի միավորման, օտարերկրյա բռնակալների տիրապետության ժամանակ ազգային միասնության պահպանման վերաբերյալ եկեղեցու դրական գործունեության մասին: Հատկապես շեշտվում է նրա դերը ժողովուրդների մշակույթների զարգացման, ճարտարապետության, որմնանկարչության, խճանկարչության, ինչպես եկեղեցական, այնպես էլ աշխարհիկ գրականության թարգմանության ու դպրության գործում: Բարձր գնահատականի են արժանանում Հայրենական մեծ պատերազմի տարիներին հոգևորականության հայրենասիրական կոչերը, պաշտպանության ֆոնդի համար միջոցներ հանգանակելու զանգվածային կամպանիաները: Աստիճանաբար մեծանում է կրոնական գործիչների ակտիվ մասնակցությունը այնպիսի հասարակական կազմակերպությունների աշխատանքին, ինչպիսիք են մշակույթի ֆոնդը, Վ. Ի. Լենինի անվան մանկական ֆոնդը, «Հայրենիք» ընկերությունը: Աճում են խաղաղության, հուշարձանների և բնության պահպանության ֆոնդերին ԽՍՀՄ-ի եկեղեցիների ներդրումները:

Այս ամենը մի կողմ են նետում եկեղեցու՝ որպես մեր հասարակարգի թշնամի, «մութ ռեակցիոն» ուժ լինելու մասին նախկին պատկերացումները: Ներկայումս եզակի չեն դեպքերը, երբ կրոնի պարզունակ, գռեհիկ քննադատությունը տեղիք է տալիս ոչ միայն հավատացյալների, այլև անհավատացյալների ակտիվ ու փաստարկված բողոքի: Մեծանում է խորհրդային մարդկանց հետաքրքրությունը հայրենական մշակույթի պատմության մեջ կրոնի խաղացած դերի և մեր հասարակության հոգևոր կյանքում եկեղեցու գրաված տեղի նկատմամբ: Ստեղծված իրավիճակը պահանջում է շրջադարձ կատարել աթեիստական պրոպագանդիստական աշխատանքում և քննադատաբար վերանայել կրոնի, կրոնական գիտակցության գնահատման ու հավատացյալների նկատմամբ վերաբերմունքի մասին մեր գրականության մեջ հաստատված շատ դրույթներ: Այդ նշանակում է, որ անհրաժեշտ է լրջորեն զբաղվել աթեիզմի պատմությամբ, ճիշտ որոշել նրա տեսական ելակետային նախադրյալները, ցույց տալ կրոնի և եկեղեցու վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների մշակած դրույթների ամեն մի ձևախեղման բացասական հետևանքները և դրա հիման վրա մշակել աթեիստական դաստիարակության վերակառուցման գիտական ուղիները:

# ԻՍԼԱՄԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԸ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԹՈՒՐՔԻԱՅՈՒՄ

**Վ. ԲԱՅԲՈՒՐԴՅԱՆ**

Իր գոյության ութ և կես դարերի ընթացքում Թուրքիայի տարածքում բնակվող մահմեդական բնակչության հոգեբանության ու ավանդույթների մեջ իսլամը նետել է խոր արմատներ։ Հայտնի է, որ միջնադարի և նոր ժամանակների թուրքական երկու ավատական-աստվածապետական միապետությունների՝ Փոքր Ասիայում Սելջուկյան պետության, իսկ ապա օսմանյան հսկայածավալ կայսրության գոյության ողջ ընթացքում սուլթաններն իրենց ձեռքերում կենտրոնացնում էին ինչպես աշխարհիկ, այնպես էլ հոգևոր իշխանությունը, այսինքն էմիրաթն ու իմամաթը։ Իսկ 1517 թ. թուրքերի կողմից Եգիպտոսը նվաճելուց հետո, որտեղ կառավարում էր արաբական խալիֆների վերջին դինաստիան, օսմանյան փադիշահը իր տիտղոսներին ավելացրեց նաև խալիֆի, այսինքն համայն աշխարհի մահմեդականների առաջնորդի կոչումը։

Ինչպես Սելջուկյան պետության, այնպես էլ օսմանյան կայսրության մեջ մահմեդականությունը պետական, պաշտոնական գաղափարախոսություն էր և գերակշռող ազդեցություն ուներ ողջ հասարակական-քաղաքական կյանքի վրա։ Օրենսդրությունը, դատարանը, հարկային համակարգը, բանակը, դպրոցը գործում էին իսլամի սկզբունքների հիման վրա։

Հայտնի է, որ XIX դարի վերջին պանիսլամիզմի կրոնաքաղաքական ուսմունքը լայն տարածում գտավ օսմանյան կայսրությունում, դառնալով սուլթան Աբդուլ Համիդ II-ի պաշտոնական գաղափարախոսությունը։ Այդ հանգամանքն իր հերթին նպաստեց Թուրքիայում իսլամական գործոնի ուժեղացմանը։ Պանիսլամիզմի հիմքում ընկած էր այն կեղծ տեսությունը, որ մահմեդական կրոնն իր հավատացյալների համար ապահովում է վերազգային ու վերդասակարգային ընդհանրություն։ Թուրք պանիսլամականների կողմից առաջ էր քաշվում այն թեզը, թե պատմության մեջ եղած բոլոր պետական ու քաղաքական միավորումներից ամենակատարյալը մահմեդական կրոնապետության սկզբունքներով ստեղծված օսմանյան պետությունն է՝ սուլթան-խալիֆի գլխավորությամբ։ Միաժամանակ պանիսլամիզմի հիմնադրույթներից էր այն, որ սուլթանի իշխանությունը տարածվում էր ոչ միայն Օսմանյան կայսրության հպատակների, այլև համայն աշխարհի մահմեդականների վրա։ Միանգամայն ակնհայտ է, որ պանիսլամիզմի օգնությամբ Թուրքիայի կառավարող շրջանները ձգտում էին իրականացնել ռազմական նվաճողականության քաղաքականություն։ Ընդ որում պանիսլամիստներն առաջին հերթին իրենց հայացքն ուղղում էին դեպի Արևելք՝ Իրան, Աֆղանստան, Թուրքեստան, Հնդկաստան և այլն, երկրներ, որտեղ բնակվում էին միլիոնավոր մահմեդականներ։

Ի սկզբանե պանիսլամիզմը հանդես էր գալիս իբրև հայ ժողովրդի ոխերիմ թշնամի։ Այն ձայնակցելով պանթուրքիզմի ռասայական-ցեղապաշտական գաղափարախոսությանը, քարոզում էր հայերին որպես ազգ վերացնելու հրեշավոր ծրագիրը։ Պանիսլամիզմը նաև մի փորձ էր ընդհանուր մահմեդական ճակատ ստեղծելու՝ ընդդեմ արևմտաեվրոպական երկրների ու Ռուսաստանի։ Այդ նպատակով հրապարակ նետվեց «բոլոր մահմեդականների հետ՝ ընդդեմ անհավատների» կարգախոսը։ Սակայն պանիսլամիզմը Արևմուտքի գաղութատիրական քաղաքականությանը հակադրվում էր հակաառաջադիմական դիրքերից։ Պանիսլամականները իսլամը հակադրում էին քրիստոնեությանը, արևելքի մշակույթն ու քաղաքակրթությունը՝ եվ-

ԲԱՅԲՈՒՐԴՅԱՆ ՎԱՀԱՆ ԱՌԱՔԵԼԻ — *պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, Խ. Աբովյանի անվան Հայկական պետական մանկավարժական ինստիտուտի գիտական աշխատանքների գծով պրոռեկտոր։*



րոպականին, խեղաթյուրում էին իրական կյանքում գոյություն ունեցող դասակարգային ու ազգային հարաբերությունները և այլն։

Առաջին համաշխարհային պատերազմի հետևանքով Օսմանյան կայսրության փլուզումից հետո Թուրքիայում ծայր առած ազգայնական շարժման շրջանում թուրք բուրժուական ազգայնականները՝ քեմալականները, նկատի ունենալով, որ սուլթանը և իր կողմնակիցները լայնորեն օգտագործում են կրոնը ազգային բուրժուազիայի դեմ պայքարում, և նրանց հենարանն է հանդիսանում այսպես կոչված «կարգ ու կանոնի խալիֆաթական բանակը», բացահայտ ու գաղտնի պայքար ծավալեցին սուլթան-խալիֆի դեմ, նրան զրկելով ոչ միայն աշխարհիկ, այլև հոգևոր իշխանությունից։ Այդ պայքարի հետևանքով սուլթանաթը և խալիֆաթը, այսինքն ֆեոդալաաստվածապետական միապետությունը, վերացվեց և 1923 թ. Թուրքիան հայտարարվեց հանրապետություն։

Նպատակ ունենալով թուլացնել մահմեդական հոգևորականության դերը նորաստեղծ պետության մեջ, քեմալականները քարոզում էին, որ դարերի ընթացքում Թուրքիայի առաջադիմության ու զարգացման ճանապարհին ամենախոշոր խոչընդոտը հանդիսացել է իսլամը և նրա վրա խարսխված սկզբունքները։ Որ մահմեդական կրոնը կասեցրել է Թուրքիայի շփումները ժամանակակից քաղաքակրթության արժեքներին և վերջին հաշվով դարձել է Օսմանյան կայսրության անկման պատճառը։ Այս բոլորից եզրակացվում էր, որ իսլամը կարող է արգելք լինել նաև թուրքական հանրապետության զարգացման ճանապարհին։

Երկիրը կրոնի համատարած ազդեցությունից դուրս բերելու և նրա պետական ու հասարակական կյանքը աշխարհիկացման ուղիով տանելու համար Քեմալ Աթաթյուրքը որդեգրեց մի քաղաքականություն, որը հայտնի է լաիցիզմ անունով (հունարեն «լյաիկոս», թուրքերեն «լյաիկլիկ» բառից, որ նշանակում է աշխարհիկ)։ Լաիցիզմը հայտարարվեց քեմալիզմի վեց սկզբունքներից մեկը։ Մնացած հինգ սկզբունքները՝ հանրապետականություն, ազգայնականություն, պետական կապիտալիզմ, պոպուլիզմ և ռեֆորմիզմ, լաիցիզմի հետ միասին ընդգրկվեցին 1924 թ. ընդունված հանրապետական սահմանադրության մեջ, կազմելով նրա հիմնադրույթները։ Ի դեպ, հենց դրանց հիման վրա մշակվեց նաև Քեմալ Աթաթյուրքի ստեղծած ժողովրդահանրապետական կուսակցության ծրագիրը։

Երկիրը ապակենտրոնացնելու և աշխարհիկացնելու նպատակով ընդունվեցին մի շարք օրենքներ, որոնց համաձայն կրոնը անջատվում էր պետությունից, վերանում էին մահմեդական իրավունքի՝ շարիաթի նորմերը, ինչպես նաև կրոնական դատարանները։ Ազգայնացվում էր մահմեդական հոգևոր հիմնարկությունների՝ վակուֆների սեփականությունը, փակվում էին բոլոր կրոնական դպրոցները՝ մեդրեսեները և ստեղծվում էր կրթության աշխարհիկ համակարգ։ Կառավարությունը ցրում էր բոլոր դերվիշական միաբանությունները և կրոնական աղանդների գործունեությունը հայտարարում անօրինական։ Սահմանադրությունից հանվում էր համապատասխան հոդվածն այն մասին, որ իսլամը պետական կրոն է և արգելվում էր ղուրանի ընթերցումը արաբերեն լեզվով։ Արաբական գրությունը փոխարինվում էր լատինականով, մահմեդական տոմարը՝ Գրիգորյան օրացույցով։ Գերագույն հոգևոր առաջնորդը՝ Շեյխ ուլ իսլամը, ինչպես նաև սուլթանական ընտանիքի բոլոր անդամները վտարվեցին երկրից, պրեզիդենտի երդման կրոնական ձևը փոխարինվեց քաղաքացիական ձևով։ Օրենսդրական կարգով հաստատվում էր քաղաքացիների իրավունքը՝ փոխելու իրենց կրոնը, իրավաբանորեն կանանց իրավունքները հավասարեցվում էին տղամարդկանց իրավունքներին, կանայք ստանում էին ակտիվ և պասիվ ընտրական իրավունք, մահմեդական կանանց թույլատրվում էր ամուսնանալու այլադավանների հետ, խստիվ արգելվեց բազմակնությունը և այլն։ Արմատավորվեց նաև զգեստների եվրոպականացում, այսինքն մահմեդական ավանդական զգեստները փոխարինվեցին եվրոպականով։

Թուրքական օրենսդրությունը այսուհետև արգելում էր կրոնական հիմքի վրա կուսակցությունների ստեղծումը, ինչպես նաև քաղաքական նպատակներով հավատացյալների զգացմունքների «շահագործումը»։

Վերոհիշյալ միջոցառումներն իրականացնելուց հետո թվում էր, թե նախ Թուրքիան կտրուկ հեռանում է Արևելքի մահմեդական երկրներից և ընդհակառակն, շեշտակիորեն մերձենում Արևմուտքի երկրներին և ապա Թուրքական Հանրապետությունը կայուն կերպով կանգնում է աշխարհիկ սկզբունքների վրա, իսլամը անդառնալիորեն դուրս մղվում նրա հասարակական-քաղաքական կյանքից և թուրքական

հասարակությունը այսուհետև զարգանալու է բացառապես աշխարհականացման ուղիներով: Սակայն պարզվեց, որ դա բնավ այդպես չէ: Պահպանվեց մահմեդական կրոնի ազդեցությունը թուրքական պետության քաղաքական ինստիտուտների և ժողովրդական լայն զանգվածների վրա: Ժամանակ առ ժամանակ իսլամական գործոնը նույնիսկ բարձրանում էր մինչև պետական պաշտոնական քաղաքականության մակարդակի՝ թե՛ երկրի ներքին կյանքում, թե՛ արտաքին հարաբերություններում:

1938 թվականին, Թուրքական Հանրապետության նախագահ Քեմալ Աթաթյուրքի մահվանից հետո, պետության մեջ կրոնական գործոնի ուժեղացման կողմնակիցները եռանդուն փորձեր սկսեցին կատարել երկիրը աշխարհականացման ուղուց շեղելու համար: 30-ական թթ. վերջերին և 40-ական թթ. սկզբներին Թուրքիայում տեղի ունեցած սոցիալ-տնտեսական տեղաշարժերի հետևանքով տիրապետող դասակարգերի գաղափարախոսության ու հոգեբանության մեջ նկատվեց ավատակրոնական մնացուկների ուժեղացման միտում: Ժողովրդական զանգվածների վրա կրոնի ազդեցության շեշտակի ուժեղացմանը նպաստեց նաև այն, որ երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Թուրքիան պահում էր մեկ միլիոնանոց բանակ և ուժից վեր ռազմական ծախսերի ամբողջ ծանրությունն ընկնում էր աշխատավորների վրա, կտրուկ վատթարացնելով նրանց կենսապայմանները: 1945 թվականին կառավարող ժողովրդահանրապետական կուսակցության ղեկավարները լուրջ զիջումների գնացին հոգևորականության նկատմամբ նաև այն պատճառով, որ Թուրքիայում միակուսակցական համակարգը փոխարինվեց բազմակուսակցականով: Աստիճանաբար թուրքական կառավարող շրջանները սկսեցին իսլամական գործոնն օգտագործել իրենց ներքին քաղաքականության ամենաբազմապիսի բնագավառներում: Օրինակները բազմաթիվ են: Տարրական դպրոցներում վերականգնվեց իսլամի դասավանդումը, բացվեցին հոգևորականներ (իմամներ և խաթիբներ) պատրաստող ուսումնարաններ, Անկարայի համալսարանում սկսեց գործել աստվածաբանական ֆակուլտետ, կրկին արտոնվեց Ղուրանը ընթերցել արաբերեն լեզվով և այլն: 1948 թ. հանրապետության հռչակումից հետո առաջին անգամ թույլատրվեց հավատացյալներին ուխտագնացության մեկնել Մեքքա: 1947 թ. գաղափարական խոր ճգնաժամում գտնվող ժողովրդահանրապետական կուսակցության մեջ ձևավորվեց մի թև, որը հանդես էր գալիս իսլամական հետևյալ կարգախոսներով, մահմեդականությունը արգելք չի հանդիսանում առաջադիմությանը, երկրում բարոյազրկությունը հայտնվել ու տարածում է գտել կրոնը անտեսելու հետևանքով, կոմունիզմի դեմ հնարավոր է պայքարել միայն հավատի օգնությամբ և այլն:

Անտարակույս, այս բոլորը բացահայտ շեղում էր լաիցիզմի կամ աշխարհականացման դիրքերից:

Սակայն կրոնական գործոնի լայն շրջանառության մեջ դնելը կառավարող ժողովրդահանրապետական կուսակցությանը չփրկեց պարտությունից: 1950 թ. մայիսին տեղի ունեցած ընտրությունների հետևանքով վարկաբեկված ԺՀԿ-ն պարտվեց, իշխանությունը զիջելով դեմոկրատական կուսակցությանը («Դեմոքրաթ պարթիսի»), որը նախընտրական կամպանիայի ժամանակ լայնորեն օգտագործում էր ընտրողների կրոնական զգացումները:

Ուղիղ տասը տարի, մինչև 1960 թվականը Թուրքիայում իշխանության ղեկը գտնվում էր դեմոկրատական կուսակցության, այսինքն թուրքական խոշոր բուրժուազիայի մի մասի, նրա հետ կապված կալվածատերերի, ինչպես նաև մտավորականության ձեռքերում, որոնք կողմնորոշվում էին ոչ թե դեպի «էտատիզմը» կամ պետական կապիտալիզմը, այլ՝ մասնավոր կապիտալը, մասնավոր նախաձեռնության խրախուսումը, օտարերկրյա կապիտալի ներգրավումը և այլն: Այդ քաղաքականության հետևանքով խոշոր բուրժուազիան էլ ավելի հարստացավ: Գյուղատնտեսության բնագավառում կալվածատերերը սկսեցին անցնել տնտեսավարման կապիտալիստական մեթոդներին, ուժեղացավ օտարերկրյա մասնավոր ու պետական կապիտալի ներհոսքը Թուրքիա: Այդ երկրի տնտեսության համար մեծագույն չարիք դարձավ նաև սպառազինությունների մրցավազքը: Որպես այդ բոլորի անխուսափելի հետևանք՝ տեղի ունեցավ գների աննախադեպ աճ, դրամի արժեզրկում, գոյացավ արտաքին հսկայական պարտք, բնակչության կենսամակարդակը շեշտակիորեն ընկավ: Բնական է, որ այդ բոլորի ֆոնի վրա տեղի էր ունենում նաև բարոյական արժեքների անկում, փարթամորեն ծաղկում էին կոռուպցիան և գանգագողությունը: Դժգոհությունը համակեց Թուրքիայի ողջ աշխատավորությանը, հատկապես միջին խավերին: Երկրի բնակչության և զորքերի միջև ծայր առան արյունոտ բախումներ:



Հետադիմությունը աննախադեպ կերպով ուժեղացրեց իր գործունեությունը:

Նման պայմաններում, ինչպես հաճախ պատահում է, ժողովուրդը սկսեց կրոնի մեջ որոնել իր սոցիալ-տնտեսական ծանր պայմանները, բարոյական արժեզրկված նորմերը, անկումային տրամադրությունները, բոլոր տեսակի ձախորդությունները հաղթահարելու մի ապեղանի:

Իհարկե, իր հերթին կառավարությունը ևս եռանդուն կերպով ձգտում էր հաղթահարել երկրում ծայր առած տնտեսական և քաղաքական ճգնաժամը, ելք որոնել ստեղծված վիճակից: Նախ նա փորձեց ամբողջ դժբախտությունների մեղքը բարդել կոմունիստների վրա: 1953 թ. հոկտեմբերին Ստամբուլում սկսվեց մեծ աղմուկ հանած, այսպես կոչված, «167»-ի պրոցեսը: Դատվում էին տարբեր ազգությունների պատկանող (թուրքեր, քրդեր, լազեր, հայեր, հույներ) մի շարք առաջադիմական գործիչներ, որոնք մեղադրվում էին Թուրքիայում կոմունիստական կազմակերպություն ստեղծելու փորձի մեջ: Կառավարությունը փորձեց նաև կազմալուծել աշխատավորների ելույթները և դրանք ուղղել շովինիստական հունով: Այսպես, 1955—1957 թթ. Կիպրոսի հարցի կապակցությամբ Ստամբուլում սկսվեցին հակահունական ցույցեր, որոնք ի վերջո, վերածվեցին հույների, հայերի և հրեաների ջարդի: Այդ բոլորի հետ միաժամանակ կառավարությունը ամեն կերպ աշխատում էր ուժեղացնել կրոնի դերը երկրի հասարակական կյանքում: Ըստ այնմ վերացվեցին կամ վերանայվեցին բազմաթիվ օրենքներ, որոնք կոչված էին երկիրը տանել աշխարհականացման շավիղներով: Դեմոկրատական կուսակցության ղեկավարները՝ պրեզիդենտ Ջելալ Բայարն ու վարչապետ Ադնան Մենդերեսը եռանդուն գործունեություն ծավալեցին ազգայնականությունն ու ժողովրդի կրոնական մոլեռանդությունը բորբոքելու համար, սկսեցին կրոնը լայնորեն օգտագործել կոմունիստական գաղափարների դեմ քարոզչության նպատակներով, թուրքական մամուլում հրատարակվեցին բազմաթիվ հոդվածներ, որոնցում հայտնվում էր այն միտքը, որ իսլամը և կոմունիզմը երկու անհաշտ, փոխադարձաբար թշնամական գաղափարախոսություններ են, որ սոցիալիստական կարգերը մահմեդականների համար ընդունելի չեն:

Պատահական չէ, որ դեմոկրատական կուսակցության կառավարման տարիներին (1950—1960 թթ.) Թուրքիայում բացվեցին բազմաթիվ մզկիթներ հոգևոր դպրոցներ (մեդրեսեներ), տարրական և միջնակարգ դպրոցներում իսլամի դասերը դարձան պարտադիր և այլն: Պետական բյուջեից սկսեցին խոշոր հատկացումներ կատարել կրոնական բովանդակությամբ գրքեր հրատարակելու համար: Աննախընթաց ակտիվություն սկսեցին դրսևորել նաև պանիսլամիստները: Նրանք պահանջում էին ոչ միայն իսլամի սկզբունքների հիման վրա վերակառուցել երկրի ողջ հասարական կարգը, այլև իսլամը արմատավորել կենցաղում, առօրեական հարաբերությունների մեջ: Մասնավորապես պանիսլամիստները պնդում էին, որ անհրաժեշտ է վերականգնել շարիաթը, թույլատրել բազմակնությունը, մահմեդականությունը հայտարարել պետական կրոն, հանգստյան օր հայտարարել ուրբաթ օրը, տղամարդկանց պարտադրել կրելու ֆես, չալմա, իսկ կանանց՝ չադրա:

Կառավարությունն օգտագործում էր իսլամը նաև Թուրքիայի արտաքին ռազմաշունչ քաղաքականությունն արդարացնելու համար: 1955 թ. Թուրքիան դարձավ իր իսկ նախաձեռնությամբ կազմավորված «Բաղդադի պակտի» անդամ, որը ըստ էության հանդիսանում էր մերձավորարևելյան մահմեդական ռեգիոնալ մի դաշինք: Թուրքիայի մտնելը Հյուսիսատլանտյան դաշինքի՝ ՆԱՏՕ-ի կազմի մեջ հոգևորականության կողմից պրոպագանդվում էր որպես «աստվածահաճո գործ, որը Թուրքիան փրկեց կոմունիստական սպառնալիքից»:

Այսպիսով, դեմոկրատական կուսակցության կառավարման տարիները նշանավորվեցին նրանով, որ Թուրքիան վերածվեց արևմտյան տերությունների կարևորագույն ռազմական հենակետերից մեկի: Անտարակույս այդ պետությունների հետ սերտ համագործակցությունը անխուսափելիորեն հակասություններ էր ստեղծելու Թուրքիայի և մի շարք մահմեդական երկրների միջև: Այսպես, դեռևս 1949 թվականից սկսած Իսրայելի հետ բարեկամական հարաբերությունների հաստատումը Թուրքիային հակադրեց իսլամական երկրների ճնշող մեծամասնությանը: Դրան նպաստեց նաև այն, որ ՄԱԿ-ում Թուրքիան հանդես եկավ Ալժիրի ժողովրդին անկախություն տրամադրելու դեմ: Այնուհետև 1956 թ. Թուրքիան դատապարտեց Եգիպտոսի որոշումը Սուեզի ջրանցքը ազգայնացնելու վերաբերյալ և հանդիսացավ Մերձավոր ու Միջին արևելքի միակ երկիրը, որը պաշտպանեց այդ պետության դեմ եռյակ՝ անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսիան: 1958 թ. Թուրքիայի տարածքից Լիբանանն ու-

ղարկվեցին ամերիկյան զորքեր: Այդ նույն թվականին Թուրքիան պատրաստվում էր հարձակվել Սիրիայի վրա: Վերջապես 1958 թ., երբ Իրաքում տեղի ունեցավ հեղափոխություն, Թուրքիան պատրաստակամություն հայտնեց մասնակցություն ցուցաբերելու այդ երկրի դեմ նախապատրաստվող հարձակմանը:

50-ական թվականների երկրորդ կեսին Թուրքիայում, ռազմականացման քաղաքականության հետևանքով երկրի տնտեսական վիճակի կտրուկ վատթարացման պայմաններում, դեմոկրատական կուսակցության ղեկավարները է՛լ ավելի վճռականորեն սկսեցին ապավինել կրոնին, որպես իշխանության ղեկի մոտ մնալու վերջին հույսի: Ըստ այդմ էլ հոգևորականությանը և կրոնական ինստիտուտներին հատկացվեցին նոր իրավունքներ և արտոնություններ: Ի նշան դեմոկրատական կուսակցության կառավարության նկատմամբ գոհունակության, 1959 թ. իսլամական քարոզչությունը Մենդերեսին, երբ նա կենդանի մնաց օդային աղետի ժամանակ, հայտարարեց սուրբ:

Հարկ է նշել, սակայն, որ թուրքական բանակի սպայությունը և մտավորականությունը, որոնք առավելապես դաստիարակված էին լաիցիզմի ավանդույթներով, կառավարությանը մեղադրում էին պետության աշխարհիկ սկզբունքներին դավաճանելու, կրոնական խավարամոլներին ընդառաջ գնալու, ինչպես նաև 20—30-ական թվականներին Թուրքիայի կողմից որոշակիորեն յուրացված եվրոպական մշակույթի ձեռքբերումներից հեռանալու մեջ:

Ի վերջո, 1960 թ. մայիսի 27-ին թուրքական բանակը տապալեց դեմոկրատական կուսակցության կառավարությունը: Զինվորականների կողմից ստեղծված Ազգային միասնության կոմիտեի հայտարարության մեջ նշվում էր, որ այսուհետև կրոնը դադարում է հետադեմ քաղաքագետների ձեռքում գործիք հանդիսանալուց: Այդ առթիվ ընդունվեց նաև օրենք, որն արգելում էր քաղաքական նպատակներով կրոնական քարոզչությունն օգտագործելը: Սակայն նման կարգի հայտարարությունները, որպես կանոն, մնում էին թղթի վրա:

Ճիշտ է, թեև 1961 թ. ընդունված նոր սահմանադրությունը պարունակում էր հոդվածներ խղճի ազատության մասին և արգելում էր իսլամի սկզբունքների վրա խարսխված քաղաքականության, ինչպես նաև կրոնական զգացումների օգտագործումը քաղաքական հեղինակություն ձեռք բերելու համար, սակայն այդ բոլորով հանդերձ նրանում տեղ էին գտել մի շարք դրույթներ, որոնք արտացոլում էին կրոնական շրջանների պահանջները: Այսպես, լաիցիզմի սկզբունքների իրագործման նկատմամբ հսկողության իրավունքը դրվում էր կրոնի գործերով զբաղվող վարչության վրա, որտեղ հոգևորականներն ունեին չափազանց մեծ ազդեցություն: Բացի այդ, սահմանադրությունը թույլատրում էր նաև «կրոնական ուսուցումն ու դաստիարակությունը»: Երկրում սկսեցին գործել իսլամական քարոզչության «ուսումնագիտական կենտրոններ» կամ իսլամի ինստիտուտներ, ստեղծվեցին կրոնին աջակցելու ընկերություններ, բազմապիսի հետադիմական կղերական ասոցիացիաներ, ինչպես, օրինակ, «Կոմունիզմի դեմ պայքարի ընկերությունը», «Կանաչ մահիկի ընկերությունը», «Թուրք կրոնականների կոնֆեդերացիան» և այլն:

1960 թ. հեղաշրջումից հետո իշխանության գլուխ անցած նոր կառավարության արտաքին քաղաքականության կարևորագույն խնդիրներից մեկը դարձավ հարևան մահմեդական երկրների հետ հարաբերությունների կարգավորումը: Արաբական երկրներ ուղարկվեցին «բարի կամքի» առաքելություններ, որոնք կոչված էին ռեկլամելու արևմուտքի երկրներից Թուրքիայի «կախում չունենալը» և առաջարկել ընդլայնելու նրանց հետ առևտրատնտեսական ու մշակութային կապերը:

1965 թ. պառլամենտական ընտրությունների ժամանակ հաղթանակ տարավ արդարության կուսակցությունը, որն իր հաջողությամբ մեծ մասամբ պարտական էր միլիոնավոր հավատացյալ ընտրողներին, որովհետև իրեն հայտարարել էր նրանց կրոնական համոզմունքների պաշտպան: Արդարության կուսակցության ղեկավարները ընտրական կամպանիայի ժամանակ ցուցադրաբար դադարեցնում էին իրենց ելույթները աղոթքի արարողություն կատարելու համար, գյուղական բնակչությանը դիմում էին «Յուրաքանչյուր գյուղին՝ իր մզկիթը» կարգախոսով և այլն:

Այսպիսով, 1965 թ. հետո իսլամը շարունակում էր լաիցիզմի նկատմամբ տանել նոր հաղթանակներ: Թուրքիայի այսպես կոչված այդ «նոր քաղաքականությունը» հատկապես լուրջ փորձությունների ենթարկվեց 1967 թ. արաբա-իսրայելական պատերազմի ժամանակ: Նա մի կողմից ձգտում էր սերտ կապեր պահպանել Իսրայելի հետ, իսկ մյուս կողմից՝ ջանում կարգավորել իր հարաբերությունները արաբական



երկրների հետ: Որպես այդ քաղաքականության հետևանք՝ Թուրքիան առաջին անգամ հրաժարվեց Իսրայելին լրիվ և անվերապահ կերպով պաշտպանելու քաղաքականությունից՝ հայտարարելով իր չեզոքության մասին: 1969 թ. Թուրքիան մասնակցեց Ռաբաթում տեղի ունեցած առաջին մահմեդական կոնֆերանսի աշխատանքներին, իսկ այնուհետև մտավ համարյա բոլոր իսլամական կազմակերպությունների մեջ:

Վերջապես 60-ական թվականներին Թուրքիայի քաղաքական կյանքում տեղի ունեցան նաև մի շարք այլ իրադարձություններ, որոնք դարձյալ արմատապես հակասում էին պետության աշխարհականացման կամ լաիցիզմի սկզբունքներին: Այսպես, ստեղծվեցին երկու նոր կուսակցություններ, որոնք բացահայտորեն իրենց պլատֆորմը հայտարարեցին իսլամը: Դրանք էին ազգայնական շարժման և ազգային կարգուկանոնի կուսակցությունները:

Ազգայնական շարժման կուսակցության ղեկավար, պահեստի գնդապետ Արփասլան Թյուրքեշը, որ հայտնի էր պանթյուրքիզմի և պանիսլամիզմի գաղափարների քարոզիչ, միաժամանակ հանդես էր գալիս որպես Թուրքիայի հասարակական-քաղաքական կյանքում իսլամի դերի վերակենդանացման համոզված ջատագով: Նրա կարծիքով «իսլամը չի հանդիսանում թուրք ազգի հետամնացության պատճառ»: Նա առաջարկում էր երիտասարդությանը դաստիարակել «մահմեդական թուրքի հոգևական արժեքներին համապատասխան», պնդում էր միջնակարգ դպրոցներում մտցնել Ղուրանը ուսումնասիրելու պարտադիր ժամեր, քաղաքացիական ամուսնության գրանցումների հետ միաժամանակ կատարել նաև կրոնական ամուսնության գրանցումներ և այլն:

Իր քաղաքական գործելակերպի մեջ ազգայնական շարժման կուսակցությունը ռազմականացված ջոկատների կամ «գորշ գայլերի» միջոցով սկսեց ձախ ուժերի դեմ կիրառել ահաբեկման ու հետապնդումների քաղաքականություն՝ լայնորեն օգտագործելով ազգայնական ու իսլամական ամբոխավարությամբ տոգորված կարգախոսներ: Պատահական չէ, որ հենց Թուրքիայում այդ կուսակցությունը իրավացիորեն անվանեցին ֆաշիստական կուսակցություն:

Ինչ վերաբերում է ազգային կարգուկանոնի կուսակցությանը, ապա նա քարոզում էր հետ վերադառնալ դեպի իսլամական պետությանը, խալիֆաթին ու շարիաթին: Այլ կերպ ասած, նա գաղափարական պատերազմ հայտարարեց քեմալականների ստեղծած աշխարհիկ հանրապետության հիմքերին:

1971 թ. մարտի 12-ին Թուրքիայի քաղաքական կյանքին կրկին միջամտեց զինվորականությունը: Արդարության կուսակցության կառավարությունը հեռացվեց իշխանության ղեկից: Նոր կառավարությունը «ահաբեկչության ու անիշխանության դեմ պայքարի» պատրվակի ներքո հարված հասցրեց ձախ ուժերին, արգելեց Թուրքիայի «Աշխատանքային կուսակցության», «Սոցիալ-դեմոկրատական ընկերությունների ֆեդերացիայի» գործունեությունը, Թուրքիայի Ազգային մեծ ժողովի միջոցով սահմանադրության մեջ մտցրեց հակադեմոկրատական ճշտումներ և այլն:

Թեև սկզբնական շրջանում զինվորական իշխանությունները հանդես էին գալիս լաիցիզմի դիրքերից, սակայն շուտով նահանջեցին: Իրենց հերթին աջ կուսակցությունները շարունակեցին իսլամն օգտագործել քաղաքական պայքարում: Ազգային մեծ ժողովի ընտրությունների նախօրյակին քաղաքական գործիչները հաճախակի այցելում էին մզկիթներ, իրենց ճառերում տեղի և անտեղի հիշատակում ալլահի անունը և առհասարակ ամեն ինչ անում հավատացյալների ձայները շահելու համար:

70—80-ական թվականների սահմանագծում Թուրքիայում քաղաքական պայքարը ծայրահեղորեն սրվեց, որը գլխավորապես երկրի տնտեսական ու ֆինանսական ճգնաժամի աննախընթաց խորացման հետևանք էր: Այդ պայմաններում «Ազգայնական շարժում» կուսակցությունը դիմեց զանգվածային ահաբեկման ու տեռորի տակտիկային, նպատակ ունենալով «հիմնավորել» երկրում դիկտատորական վարչակարգի արմատավորման անհրաժեշտությունը: Մասնավորապես Կահրամանմարաշ քաղաքում «Գորշ գայլեր» ֆաշիստական կազմակերպությունը կազմակերպեց շիա բնակչության արյունոտ կոտորած: Ընդ որում նպատակին հասնելու կարևորագույն լծակ էր դիտվում նաև կրոնը: Թուրքիայում ազգայնական քարոզչությունը և կրոնական մոլեռանդության բորբոքումը ընդունեցին աննախընթաց չափեր: Մամուլում հարանուն կերպով զարգացվում էր այն միտքը, որ իսլամը չի ճանաչում ազգային սահմաններ և մերժում է խաղաղ գոյակցության հումանիստական գաղափարը: Ընդգծվում էր նաև, որ իսլամը քաղաքական պայքարի մի այնպիսի զենք է, որը կոչված

է նպաստելու նաև պանթուրքիզմի գաղափարների իրագործմանը: «Նպատակը՝ Թուրան, ուղեցույցը՝ Ղուրան»,— այսպիսին էր այդ գաղափարի հակիրճ ձևակերպումը:

Միաժամանակ ուժեղացան ազգային փոքրամասնությունների բռնի թուրքացման կոչերը: Մասնավորապես հայերը բնութագրվում էին որպես իսլամի հետևողական թշնամիներ:

70-ական թվականների կեսերին տեղի ունեցած միջազգային-քաղաքական իրադարձությունները հրամայաբար պահանջեցին էլ ավելի խոշոր ճշտումներ կատարել մահմեդական երկրների հետ Թուրքիայի փոխհարաբերություններում: Վառելիքային ճգնաժամի պայմաններում Թուրքիան, որ երկրում օգտագործվող նավթի 80 տոկոսը ներմուծում էր արաբական երկրներից, ստիպված էր 1973 թ. արաբա-իսրայելական պատերազմում որոշակիորեն արտահայտվել իսլամը դավանող արաբական երկրների կողմը դիրքորոշվելու օգտին:

1974 թ. Կիպրոսի Հանրապետության նկատմամբ ագրեսիա իրականացնելուց հետո Թուրքիան սկսեց աջակցություն որոնել իսլամական երկրների մեջ՝ կղզու տարածքում ապօրինաբար հռչակված «Կիպրոսի անկախ թուրքական պետությունը» նրանց կողմից ճանաչելու համար:

1979 թ. Իրանում տեղի ունեցած «իսլամական» հեղափոխությունից հետո մահմեդական աշխարհում նկատվեց կրոնական գործոնի աննախընթաց աշխուժացում կամ «իսլամական պայթյուն»: «Իրանական գործոնը» նպաստեց նաև ամբողջ աշխարհում մահմեդականության նկատմամբ հետաքրքրության մեծացմանը: Այն դարձավ Մերձավոր արևելքի քաղաքականության ու միջպետական հարաբերությունների վճռորոշ գործոններից: Դուրս գալով իր ազդեցության առօրյա շրջանակներից (լուսավորություն, արդարադատություն, կրոնական հիմնարկություններ ու մզկիթներ, հոգևոր կյանք և այլն), մահմեդական կրոնը ենթարկվեց հախուռն քաղաքականացման, այսուհետև կարևորագույն դեր խաղալով նաև իսլամական երկրների հասարակական-քաղաքական կյանքում, պետական կառուցվածքի մեջ, միջազգային հարաբերություններում և այլն:

Անտարակույս, Թուրքիան, որ ավանդաբար հավակնել է ճանաչվելու մահմեդական աշխարհի առաջատար պետություն, անմիջապես գնահատեց «իսլամական պայթյունի» հետևանքով աշխարհում ստեղծված իրադրությունից առավելագույն չափով օգուտներ քաղելու հնարավորությունը: Չպետք է մոռանալ, որ ներկայումս իսլամը համաշխարհային կրոն է: Նա քրիստոնեությունից հետո երկրորդն է հավատացյալների թվով: Համաշխարհային իսլամական լիգայի տվյալներով այսօր մահմեդականների թիվը մոտենում է մեկ միլիարդ մարդու: Աշխարհի ավելի քան 30 երկըրներ մահմեդականությունը հայտարարել են իրենց պաշտոնական գաղափարախոսություն:

Իսլամի ավանդական տարածման երկրները վերջին տարիներս վերածվեցին համաշխարհային քաղաքականության էական գործոնի՝ կազմելով ՄԱԿ-ի անդամների մոտ մեկ երրորդ մասը: Նրանք ընդգրկում են Արևելյան կիսագնդի մի լայնածավալ տարածք՝ Ինդոնեզիայից մինչև Մարոկկո, Իրանից մինչև Արևադարձային Աֆրիկա: Այդ տարածքով են անցնում համաշխարհային նշանակություն ունեցող կարևորագույն ստրատեգիական կոմունիկացիաներ, այնտեղ խաչաձևում են բազմաթիվ պետությունների շահեր և այլն:

Կարևոր է նշել, որ 1979 թ. Իրանի իսլամական հեղափոխությունից հետո ՆԱՏՕ-ի ռազմական խմբավորման համար Թուրքիայի ռազմաստրատեգիական նշանակությունն էլ ավելի մեծացավ: Թուրքական Հանրապետությունը դարձավ Մերձավոր արևելքում արևմտյան աշխարհի հիմնական հենարանը: Չպետք է մոռանալ, որ Թուրքիան ընկած է ասիական և եվրոպական մայրցամաքների հատման կետում և երեք մայրցամաքների՝ Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի միջև կապող օղակ է: Նա 2753 կմ երկարության սահմանագիծ ունի Բուլղարիայի, Հունաստանի, Խորհըրդային Միության, Իրանի, Իրաքի և Սիրիայի հետ: Թուրքիայի տարածքում են գտնվում ռազմաստրատեգիական և միջազգային-քաղաքական առաջնակարգ նշանակություն ունեցող այնպիսի հաղորդակցության հանգույցներ, ինչպիսիք են սևծովյան նեղուցները՝ Բոսֆորը և Դարդանելը: Վերջապես Թուրքիան ընկած է Մերձավոր արևելքի նավթառատ շրջանների հարևանությամբ, որոնք մշտապես գտնվում են արևմտյան տերությունների «կենսական հետաքրքրությունների» ոլորտում:

1980 թ. սեպտեմբերի 12-ի ռազմական հեղաշրջումից հետո իշխանությունն իրենց ձեռքը վերցրած բանակային գեներալները առաջին պահին հայտարարեցին, որ իրենք հավատարիմ են լինելու քեմալիզմի սկզբունքներին և անթույլատրելի են համարում իսլամը քաղաքական նպատակներով օգտագործելը: Նույնիսկ 1982 թ. ընդունված սահմանադրության մեջ մի շարք հոդվածներ արգելում էին քաղաքական կուսակցությունների ու կազմակերպությունների կողմից կրոնական գործոնի օգտագործումը:

Սակայն այս բոլորը դեռևս ոչինչ չէր նշանակում: Գնալով իսլամական գործոնն ավելի ուժգին թափ առավ երկրում: Նահանջ կատարելով աշխարհիկ պետության բնորոշ սկզբունքներից, Թուրքիան վերածվեց մահմեդական աշխարհի խոշորագույն կենտրոններից մեկի: Այսօր Թուրքիայի պետական դպրոցներում շարունակվում է իսլամի դասավանդումը: Ամեն օր ռադիոյով ու հեռուստատեսությամբ կարդացվում են դասախոսություններ կրոնական հարցերի շուրջը, հանդիսավոր կերպով բացվում են նոր մզկիթներ, պրեզիդենտը անձամբ հանդիպումներ է ունենում երկրի կրոնական կենտրոն Կոնյա քաղաքի բարձրագույն հոգևորականության հետ, թուրք ուխտագնացները տասնյակ հազարներով ամեն տարի մեկնում են մահմեդական սրբավայրը՝ Մեքքա և այլն:

Ներկայումս Թուրքիան «իսլամական կոնֆերանս» կազմակերպության անդամ է, որն առաջնորդվում է մահմեդական համերաշխության պանիսլամական ձգտումներով: Այդ կազմակերպությունը առաջ է քաշել այսպես կոչված «իսլամական ազգի» տեսությունը, որի վերջնական նպատակն է հայտարարվում աշխարհում գոյություն ունեցող ուժերի հարաբերակցության փոփոխությունը՝ հօգուտ իսլամի: Ընդ որում այդ տեսության գաղափարախոսները ձգտում են ստեղծել կրոնական սկզբունքի վրա խարսխված ներփակ մի համագործակցություն և դրանով իսկ իսլամական աշխարհը հակադրել մնացած աշխարհին: Ի դեպ, «իսլամական ազգի» տեսության հետ սերտորեն կապված է նաև ընդհանուր «մուսուլմանական հայրենիքի» տեսակետը, որը ժամանակակից պանիսլամիզմի տարատեսակներից մեկն է:

Թուրքական կառավարության կողմից «իսլամական գործոնը», ավելի մեծ եռանդով ու նպատակասլացությամբ օգտագործվում է արտաքին քաղաքականության, տնտեսական ու ռազմական գործունեության բնագավառներում: Այդ կապակցությամբ ավելորդ չէ բերել մի քանի փաստեր: Թուրքիան ստիպված է ավելի կըտրուկ արտահայտություններով դատապարտել Իսրայելի զավթողական քաղաքականությունը և արտահայտվել Պաղեստինի ժողովրդի իրավունքների պաշտպանության օգտին: 1982 թվականին թուրքական կառավարությունը դատապարտեց Լիբանանի դեմ իսրայելական ագրեսիան: Այս և նման քաղաքականությունը Թուրքիային հնարավորություն տվեց նշանակալիորեն բարելավելու հարաբերությունները մի շարք մահմեդական պետությունների հետ, իսկ նրանցից մի քանիսը (Պակիստան, Բանգլադեշ, Մալազիա), նույնիսկ պատրաստակամություն հայտնեցին ճանաչելու այսպես կոչված «Հյուսիսային Կիպրոսի թուրքական հանրապետությունը»:

Ավելորդ չէ նշել, որ Թուրքիայի նման քաղաքականությունը թեև որոշակի վնաս է բերում Իսրայելին՝ ԱՄՆ-ի ստրատեգիական դաշնակցին, սակայն միաժամանակ արևմտյան պետությունների համար ստեղծում է լրացուցիչ հնարավորություններ մահմեդական աշխարհ ներթափանցելու համար: Հենց այդ հանգամանքը նկատի առնելով պրեզիդենտ Թուրղութ Օզալը հայտարարել է, որ Թուրքիան պետք է դառնա «կամուրջ» արևմուտքի երկրների ու իսլամական պետությունների միջև:

1981 թվականին Անկարայում և Ստամբուլում բացվեցին իսլամի պատմության մշակույթի և արվեստի ուսումնասիրության, զարգացման իսլամական բանկին կից վիճակագրական, տնտեսական ու սոցիալական հետազոտությունների կենտրոններ և այլն: Անընդհատ տեղի են ունենում իսլամական երկրների ղեկավարների հանդիպումներ և կոնֆերանսներ, որոնցում մշտապես նախագահում էին Ք. Էվրենը և Թ. Օզալը: Թուրքիան պարտավորվում է օգնություն ցույց տալ Ասիայի և Աֆրիկայի երկրներում գործող իսլամական կենտրոններին և ինստիտուտներին:

Հիրավի, «իսլամական համերաշխության» կոչն այսօր Թուրքիայի համար դարձել է մի խիստ արդյունավետ միջոց մահմեդական երկրներ թափանցելու համար: Թուրքիան այդ երկրներում ձեռք է բերել ծավալուն շուկա իր արդյունաբերական արտադրանքի համար, որոնց սպառումը լուրջ արգելքների է հանդիպում Եվրոպական տնտեսական համագործակցության երկրներում: Թուրքական ֆիրմաների առջև հատկապես լայնորեն բացվել են նավթ արդյունահանող արաբական երկրների դըռները: Անկարան հույսեր ունի նաև, որ այդ երկրներից կստանա մեծ քանակությամբ

նավթ և խոշոր դրամական հատկացումներ: Այսպես կոչված «Զարգացման իսլամական բանկը», որը գտնվում է Սաուդյան Արաբիայի և նավթ արդյունահանող մյուս արաբական երկրների հսկողության տակ, Թուրքիային արդեն սկսել է հատկացնել խոշոր դրամական միջոցներ:

Դեռևս 1985 թ. սկզբին մերձավորարևելյան երկրներում գործում էին ավելի քան 300 թուրքական ընկերություններ, որոնք օգտագործում էին մոտ 200 հազար թուրք բանվորներ: Այդ ընկերությունների թիվը ներկայումս ավելի մեծ է: Նշված երկրներում գործող թուրքական ֆիրմաների եկամուտները և դրամական փոխանցումները այսօր կազմում են Թուրքիայի վալյուտային պաշարների համալրման կարևոր աղբյուրներ:

Գործունեության ազգային սահմանների շրջանակներից դուրս են եկել նաև թուրքական բանկերը: Արտասահմանում առաջին թուրքական բանկը բացվեց 1983 թ.՝ Բեյրութում: Այնուհետև իրար հետևից բանկեր բացվեցին Ջիդդայում, Թեհրանում և այլուր: Թուրքական կառավարությունը չի թաքցնում իր մտադրությունը երկիրը վերածելու իսլամական աշխարհի ֆինանսական կենտրոնի: Նրա կարծիքով դրա համար ստեղծվել է միանգամայն բարենպաստ իրադրություն: Լիբանանը, որը նախկինում Մերձավոր արևելքի խոշորագույն ֆինանսական կենտրոնն էր, ներկայումս կորցրել է իր նշանակությունը: Իրանը և Իրաքը ուղղակի ֆինանսապես հյուծվել են պատերազմի հետևանքով և բնականաբար չեն կարող հավակնել նման դերի, իսկ մի շարք իսլամական պետություններ իրենց պահպանողականության կամ ծայրահեղականության պատճառով վստահություն չեն ներշնչում օտարերկրյա դրամատերերին: Նման պարագաներում Թուրքիայի կոչերը իր տարածքում կապիտալներ տեղադրելու վերաբերյալ արձագանք գտան ինչպես Արևմուտքում, այնպես էլ Արևելքում: Բավական է ասել, որ 1984 թ. միայն Ստամբուլում բացվեց 19-րդ բանկը:

80-ական թվականներին Թուրքիան ընդլայնեց նաև «խառը» ձեռնարկություններ ստեղծելու պրակտիկան, որոնց մեջ ներգրավվում է ինչպես արևմտյան տերությունների, այնպես էլ նավթ արդյունահանող երկրների կապիտալը: Այդ բնագավառում Թուրքիայի հաջողությունները պայմանավորված են նրանով, որ իսլամական աշխարհում գոյություն ունի զգույշ և կասկածամիտ վերաբերմունք «մաքուր» իմպերիալիստական ընկերությունների նկատմամբ և այդ պայմաններում նախապատվություն է տրվում թուրքական ընկերություններին: Այժմ մերձավորարևելյան ռեգիոնում գործում են նաև այնպիսի ընկերություններ, որոնցում միահյուսվում է ամերիկյան, թուրքական և արաբական կապիտալը (դրանցից է, օրինակ, «Միդգալֆ ինտերնեյշընլ թրեդ կոմպանին»):

Թուրքական ղեկավար շրջանները շեշտված դրական վերաբերմունք ունեն նաև «մահմեդական երկրների ընդհանուր շուկա» ստեղծելու գաղափարի նկատմամբ, որն անտարակույս պանիսլամիզմի նորագույն դրսևորումներից մեկն է:

Ներկայումս ԱՄՆ-ի և Թուրքիայի միջև համաձայնություն է ձեռք բերվել Թուրքիայի տարածքում ամերիկացիների օգնությամբ զենքի տարբեր տեսակներ, այդ թվում նաև կործանիչ-խմբակոծիչներ, արտադրելու համար, որոնք նախատեսվում են մատակարարել Մերձավոր արևելքի մահմեդական երկրներին: Բացի այդ, թուրքական «կամրջի» վրայով իսլամական երկրներ է առաքվում մեծ քանակությամբ ռազմական տեխնիկա:

Այսպիսով, իսլամի դրոշի ներքո Թուրքիան ընդլայնում է իր տնտեսական, ռազմական ու քաղաքական համագործակցությունը մահմեդական երկրների հետ: Ընդ որում, նա ոչ միայն ինքն է ներթափանցում այդ երկրները, այլև հանդես գալով որպես միջնորդ՝ նպաստում արևմտյան տերությունների ներթափանցմանը: Կարծիք կա այն մասին, որ ժամանակակից Թուրքիայի խորհրդանիշը կարող է հանդիսանալ մի կամուրջ, որի վրա պլանավորվում է անցկացնել իմպերիալիստական տերությունների խոշոր բիզնեսի, Թուրքիայի և իսլամական երկրների հանդիպում:

Միանգամայն ակնհայտ է, որ առաջիկայում ևս չափազանց հավանական է իսլամի ազդեցության ուժեղացման հավանականությունը Թուրքիայի հասարակական-քաղաքական զարգացման վրա: Այդ ենթադրության համար հիմք է այն իրողությունը, որ Թուրքիայում խիստ ազդեցիկ են այն ուժերը, որոնք պահանջում են վերադառնալ իսլամի նորմերին և պետության ներքին ու արտաքին քաղաքականությունը խարսխել մահմեդական կրոնի սկզբունքների վրա: Բացի այդ, Թուրքիայում իսլամական գաղափարախոսության կենսունակության համար պարարտ հող են ստեղծում սոցիալական հակասությունների սրումը, գործազրկությունը, անգրագիտության բարձր տոկոսը, գյուղացիության կուլտուրական ցածր մակարդակը և նման կարգի այլ գործոններ:



# ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ՊԱՏՐԱ՞ՆՔ, ԹԵ՞ ՔԱՂՔԵՆՈՒ ՆՈՐ ԴՐՍԵՎՈՐՈՒՄ

**ՀՐ. ՇԱՔԱՐՅԱՆ**

ՄԵԾԱԳՈՒՅՆ ՄԻՋՆՈՐՄԸ, որը գոյացել է հասարակական գիտակցության մեջ հետհեղափոխական էնտուզիազմով սրբագործված սոցիալիզմի մոդելի և մեր երկրում նրա կառուցման պրակտիկայի արմատական դեֆորմացիայի միջև, պատմությանը անհայտ XX դարի մարդկային կեցության այդ տրագիկոմեդիան ծնունդ է տվել գոյություն ունեցող գիտատեսական ուսմունքներով դժվար բացատրվող ոչ քիչ սոցիալ-հոգեբանական երևույթների: Դժվարություններ են առաջանում նույնիսկ այն ժամանակ, երբ խոսքը վերաբերում է մարքսիզմի (և ոչ միայն մարքսիզմի) տեսակետից, թվում է, այնքան ակնհայտ միկրոերևույթներին, ինչպիսիք են, ասենք, սեփականության ձևը կամ հասարակության դասակարգային կառուցվածքը: Տխուր տպավորություն է ստեղծվում, թե դադարել են գործել հասարակական կյանքի կենսատնման հանրահայտ օրինաչափությունները: Ոչ համարժեք են թվում հասարակության դասակարգային կառուցվածքի վերաբերյալ պատկերացումների առնչությունը արտադրության միջոցների կամ սոցիալ-տնտեսական արժեքների բաշխման հետ: Առավել տառապալից է ներկայանում հասարակական բոլոր բարիքներ ստեղծողը՝ սահմանադրական պնդումներով հասարակական ողջ հարստության կրողը հորջորջված աշխատավոր ժողովուրդը: Մարդկային բազմաչարչար մտածողության առաջ ծառանում են սոցիալական տեսիլքներ ու արտառոց իրավիճակներ, երբ իրավականորեն մերժված է աշխատանքի շահագործումը, իսկ նրանով ստեղծված արժեքները չքանում են՝ չի իմացվում որտեղ:

Հիրավի, նմանօրինակ, առնվազն դժվար բացատրության տրվող երևույթներին է վերաբերում, թող ներվի այդպես կոչել **խորհրդային քաղքենիությունը:** Դժվար է գտնել մեկ այլ սոցիալական համակարգ, որտեղ քաղքենիությունը այնպիսի ծավալով ու խորությամբ թափանցեր սոցիալական օրգանիզմի բոլոր հիմնական կենսուղիները, ինչպես մեր հասարակության մեջ: Արդեն վերջին տարիներում երկրի յոթանասունամյա իրական պատմության վերականգնումը ցույց է տալիս, թե ինչպես պետական ու կուսակցական գործիչների անհատական շահերը բոլորովին էլ վերջին դերը չեն խաղացել հասարակության էվոլյուցիայի սոցիալ- տնտեսական դրամայում: Իբրև աշխատանքային վարկած իրավասու կլինի պնդել, որ ստալինիզմի, առավել ևս բրեժնևյան դարաշրջանի գլխավոր հերոսն է եղել քաղքենին՝ իր ավանդական և նոր ձեռք բերված հատկություններով հանդերձ:

Պատմության համար այսօրինակ կարճ ժամանակահատվածում ամենազոր դարձած հայրենական քաղքենիության էության բացահայտումը հիրավի կարող է ներկայանալ իբրև մարդկային ոգու ինքնահիմնաստավորման ու ինքնագիտակցման կարևորագույն տարրերից մեկը մեր հասարակության վերափոխման դարաշրջանում: Այդ առավել ևս հրատապ է մեր ժամանակներում, երբ դեռ շարունակվում են հասարակության համակարգաստեղծ արատները պատմական որոշ գործիչների անհատական հատկությունների խորքերը մղելու փորձերը՝ դրանով իսկ պայքարի ողջ կիրքը ուղղելով ավելի շուտ դեպի հետևանքները, քան նրանց ծնող պատճառները:

---

ՇԱՔԱՐՅԱՆ ՀՐԱՉԻԿ ԳՐԻԳՈՐԻ — *Երևանի պետական համալսարանի փիլիսոփայության և տրամաբանության ամբիոնի վարիչ, փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր*

Իբրև սոցիալ-հոգեբանական երևույթ քաղքենիությունը գոյություն է ունեցել միշտ և ամենուր: Բայց սակավ են այն դեպքերը, երբ այն դարձել է համատարած հիվանդություն հասարակության համար և տիրակալ սկզբունք եղել նրա բոլոր դրսևորումներում:

Պատմականորեն քաղքենիությունը դիտվել է իբրև մարդկային **վարքագծի ձև, որին հատուկ են եսասիրությունը, ընչաքաղցությունը, սոցիալ-քաղաքական վեհ իդեալների բացակայությունը և այլն:** Բառարաններում մոտավորապես նույն հատկություններով է բնութագրվում նրա հոմանիշը դիտվող «ֆիլիստեր» հասկացությունը, որը երկար պատմաէթիմոլոգիական կերպարանափոխումներից հետո օգտագործվում է նույն ինքնաբավական, սահմանափակ հետաքրքրությունների տեր, միայն իր անձնական նյութական կեցությունը հոգացող անհատին բնութագրելու համար:

Քաղքենիությունը անձնականին հանգեցնելու բավականին մեծ տարածում ունեցող նմանօրինակ միտումից բացի, սոցիոլոգիական, մասնավորապես մարքսիստական գրականության մեջ այն սահմանվում է նաև որպես **սոցիալ-քաղաքական տատանվողական և հարմարվողական վարվելակերպ,** որը, որպես կանոն, հատուկ է ոչ հետևողական և երկակի բնույթ ունեցող սոցիալական ուժերին, ինչպիսին է, օրինակ, մանր բուրժուազիան: Հատկանշական է, որ ֆրանսերեն լեզվում քաղքենու «պատկերավոր նշանակության» մասին՝ իբրև «նեղ համակերպվելու հակում ունեցող մարդու»,— ուղղակիորեն նշանակում է նաև մանր բուրժուազիա, «միջին դասակարգերից» սերված մարդ:

Մեծապես էական է թվում նաև որոշ ուսմունքներում դավանվող այն համոզմունքը, ըստ որի քաղքենիությունը բնութագրվում է իբրև **անկման դարաշրջանի դասակարգերի սոցիալ-հոգեբանական վարվելակերպ:**

Պահպանվո՞ւմ են արդյոք քաղքենիության այդօրինակ «միջին-դասակարգային», անհատական-հոգեբանական, ինչպես նաև սոցիալ-«անկումային» բնութագրությունները մեր հասարակության մեջ:

Արդեն հասարակական գիտակցության՝ քաղքենիությամբ համատարած ախտահարման ակնհայտ փաստը անկախ հասարակության դասակարգային կառուցվածքի, վկայում է հայրենական քաղքենիության խոր յուրակերպության մասին իբրև բարոյահոգեբանական և սոցիալ-տնտեսական երևույթի:

Բնական հունից դուրս մղված տնտեսական օրենքները ունակ են ծնունդ տալու հասարակության սոցիալ-բարոյական ոլորտի ամենաբազմազան ձևախեղումների: Այդ առավել ևս վերաբերում է մեր հասարակությանը, որտեղ տնտեսական անոմալիաները ստացել են աննախադեպ յուրօրինակ ձևեր: «Դա մի հասարակություն է, որտեղ պետական հորջորջվող (իսկ քաղաքական սքողման համար՝ համաժողովրդական) սեփականության իրական տերն է դարձել անհայտ մի ուժ, որը միայն վերջին ժամանակներս ի հայտ եկավ վարչաբյուրոկրատական ապարատի տեսքով, մի ուժ, որը «ուղղակի շահագրգռված չէ աշխատանքի վերջնական արդյունքով և պատասխանատվություն չի կրում արտադրության միջոցների արդյունավետ օգտագործման համար» (Р. Симонян. Еще раз о том, где находится наша экономика, «Известия», № 68, 9 марта, 1989 г.):

Հասարակական կյանքի առավել ակտիվացված բնագավառում այդ այլանդակ տնտեսական նորագոյացության բնական դրսևորումը քաղաքականության մեջ անսահմանափակ իշխանությունն է, որը օժտված է նույնչափ անսահմանափակ իրավունքով՝ գործնականում առանց որևէ պատասխանատվության: Հենց այդ եղանակով է կազմավորվել մեծապես յուրակերպ ու մեծահզոր սոցիալ-տնտեսական մի երևույթ, որը հասարակության հիերարխիկ կառուցվածքում «աթոռ» է կոչվում: Դժվար թե գտնվի հասարակական մեկ այլ օրգանիզմ, ուր այդչափ բարձր գնահատվեր, գուցե և մշտապես գնահատվող «աթոռ» կոչվածը, առավել բարձր բարոյական և մտային արժեքներից, նույնիսկ սեփականությունից:

Քաղաքակրթության զարգացման բնական օրենքներով հասարակության նյութական ու հոգևոր հարստությունները ձեռք են բերվել աշխատանքով, մտային գործոններով, մարդկային կեցության բարոյական պահանջներով: Այս հասարակության մեջ «աթոռի» հետ են փորձում առնչել բոլոր բարիքների աղբյուրը լինելու բարոյական իրավունքը, շնորհիվ նրան և ոչ թե բանվորի տառապալից աշխատանքով կամ գիտնականի տաղանդով են ստեղծվում հասարակության նյութական ու



հոգևոր արժեքները: Ինչպես ասվել է վերակառուցման ոչ առաջին օրերին, այդ եղել է (արդյո՞ք միայն եղել է) մի հասարակություն, որտեղ բոլորը երկյուղ են ունեցել ղեկավարից, ղեկավարը՝ իր ղեկավարից և այսպես մինչև ամենաբարձր ղեկավարը, որը երկյուղ չուներ ոչ մեկից: Դժվար չէ այս տխուր դատողություններից մակաբերել մարդու վարքագծի հիմնական բանաձևը՝ ձգտել տրված հիերարխիայում այնպիսի տեղ զբաղեցնել, որ քիչ գտնվեն նրանք, որոնցից վախենում ես և շատ ավելի այնպիսիք, որոնք քեզնից են վախենում:

Ինքնին հասկանալի է, որ նմանօրինակ հասարակության մեջ «աթոռը» ոչ միայն իր մեջ մարմնավորում է մեծությունն ու հզորությունը և դրանով իսկ հորդառատ աղբյուր ծառայում անձնապես բնավ չամրապնդված բարվոք կացությանը, այլև միանգամայն բարեբեր միջավայր է ստեղծում ամենաբազմազան սոցիալ-բարոյական հիվանդագին մանրէների բազմացման համար: Հնարավոր է «աթոռների», իսկ քաղաքականության լեզվով՝ «աթոռակրատիայի» այդ հասարակության մեջ հասարակական կյանքի և ոչ մի տարր (այդ թվում նաև աշխատանքը, նույնպես նրա ստեղծագործական տարատեսակը), անկարող է ունենալ այնչափ մարդաստեղծ (գուցե հակամարդաստեղծ) կարողություն, որքան խելահեղ մղումը դեպի «աթոռը» և առավել ևս ինքը՝ «աթոռը»: Ամենից առաջ այստեղ է տրված այս առաջին դեմքերի հասարակության, պատմության մեջ նմանը չունեցող յուրակերպությունը, մի հասարակություն, ուր «աթոռը» ձեռք է բերում այդչափ սոցիալ-բարոյական վճռորոշ նշանակություն, իսկ աստվածայինի դեմ մղվող պայքարը բարեհաջող կերպով ավարտվում է նրան երկրային կեցություն հաղորդելով:

Գուցե և հասարակության սոցիալական կառուցվածքի նմանօրինակ աղավաղումն է հնարավոր դարձրել հասարակական շահերի արմատական տեղաշարժը արտադրական հարաբերությունների ոլորտից դեպի բաշխման հարաբերությունների ոլորտը: Արդյո՞ք այդ հանգամանքը չի պայմանավորել հասարակության մեջ **սկզբունքորեն նյութական նոր անհավասարության** հաստատումը, անհավասարություն, որն իր հիմքում ունի ոչ թե որոշակի սեփականության կամ աշխատանքային գործունեության քանակն ու որակը, այլ հենց իր իսկ «աթոռի» կամ նրա հետ ունեցած առնչության որակը: Արտադրության միջոցների նկատմամբ ավանդական մասնավոր սեփականության պայմաններում իրավականորեն օրինականացված է նյութական անհավասարությունը: Իսկ դեֆորմացված սոցիալիստական հարաբերությունների պայմաններում գոյություն ունեցող նյութական անհավասարությունը զուրկ է տնտեսության համապատասխան կառուցվածքային մակարդակներում ենթադրվելիք համարժեք հիմքերից: Հենց այս հանգամանքն է հնարավոր դարձնում պնդել, որ ոչ ամեն մի անհավասարություն է ծնում սոցիալ-բարոյական զանազանակերպ անոմալիաներ հասարակական կյանքում: Որքան տնտեսապես թույլ է ամրապնդված նյութական անհավասարությունը, այնքան ուժեղ են արտահայտված նրա բացասական սոցիալ-բարոյական երանգները հասարակության բարոյական նկարագրի ձևախեղման գործում:

Հնարավոր է, որ ամենից առաջ հենց այդ պատճառով **բարոյական երևույթ դիտվող քաղքենիությունը երբևէ այնչափ տնտեսապես հիմնավոր չի գտնվել, ինչպես մեր հասարակության մեջ:** Գուցե և այդ պատճառով է այն կորցրել միայն սոցիալական որոշակի խավերի հետ ունեցած իր վաղեմի առնչությունները: Այլ կերպ ասած՝ աննախադեպ տնտեսական խոր արմատներ ունենալու պատճառով մեր հասարակության մեջ քաղքենիությունը կորցրել է իր սոցիալ-դասակարգային տեղայնությունը և ձեռք բերել վերդասակարգային, իսկ առավել ստույգ՝ համընդհանուր բնույթ: Հարմարվողականության ու հպատակության հոգեբանությամբ վարակվել է ողջ մասսայական գիտակցությունը հասարակության սոցիալական կառուցվածքի բոլոր մակարդակներում:

Տնտեսական կախվածությունը հլու-հնազանդ է դարձնում մարդկանց նույնիսկ հոգևոր բարիքների արտադրության բնագավառում, գործունեության մի ասպարեզ, ուր, թվում է, հույժ ակտիվ կերպով կարող է դրսևորվել մարդկային բանականության քննադատական ոգին: Ավելին, մտավորականների մեջ համակերպվելու միտումն անհամեմատ ուժեղ կերպով է արտահայտվել արդեն այն պատճառով, որ նրանք ուղղակի գամված են իրենց նեղ մասնագիտությանը: Էլ չխոսենք այն մասին, որ ավանդաբար խոսքի ուժը շատ ավելի բարձր է գնահատվել, քան նույնիսկ պրակտիկ գործողությունը, որը դրսևորվել է, օրինակ, զանազան միջոցներով այլախոհներին հետապնդելու ձևով: Դրանցից ամենաարդյունավետն է

եղել տնտեսական ճնշումը: Արդարացի է նկատված, թե մտավորականի կենսամակարդակի անկմանը համապատասխան մեծանում է նրա կախվածությունը գործատիրոջից, տվյալ դեպքում պետությունից (տե՛ս այդ մասին А. Севастьянов, Интеллигенция: что впереди?, «Литературная газета», 21 сентября 1988 г. № 58 (5208).

Իսկ հայտնի է, որ Ռուսաստանում մտավորականությունն ավանդաբար առավել էական դեր էր կատարում և հայտնի էր իր հարաբերական անկախությամբ: Ինչպես նկատվել է գրականության մեջ, Ռուսաստանի սոցիալ-քաղաքական կյանքի յուրօրինակ զարգացումը հասցրել է այն բանին, որ մտավորականությունը հարկադրված է եղել «իր ուսերին կրել ազատագրական շարժումը»: Նույնիսկ ինքը «ինտելիգենցիա-մտավորական» հասկացությունն իբրև տերմին ծնունդ է առել Ռուսաստանում անցյալ դարի վերջին տասնամյակներում հասարակության որոշակի խավ նշանակելու համար: Վ. Խորոսի կարծիքով, ինտելեկտուալ-մասնագիտական իմաստից բացի այդ տերմինը ենթադրում է նաև «ստեղծագործական ոգի և գործունեության բարոյական չափանիշ» (Вл. Хорос Интеллигенция всех слоев. «Лит. газета», 25 ноября, 1988 г. № 47 (5217):

Միշտ է, հեղափոխությունից հետո ռուսական մտավորականության մի զգալի մասը հայտնվել է էմիգրացիայում, իսկ մնացածի վրա փորձարկվել են ճնշման ոչ միայն բոլոր ժամանակներում օգտագործվող տնտեսական մեթոդները: Քաղաքակրթության պատմությանը հայտնի ամենաքննադատաբար տրամադրված մտավորական ջոկատներից մեկի՝ ռուսական մտավորականության քաղքենիական այլասերումը դյուրին գործ չի եղել: Նրա վրա փորձարկվել են տվյալ տանքների ամենաանողկալի մեթոդները՝ ինչպես բարոյահոգեբանական, այնպես էլ ֆիզիկական: Այդ ամենի հետևանքով ռուսական մտավորականությունը վերածվել է մտածողության ու գործողության անկախությունից զուրկ, նեղճակատ քաղաքականության կցորդի: Սախարովներն ու Սոլժենիցինները առավելապես պատահականություն, քան թե օրինաչափություն են եղել:

Ինչպես և պետք է սպասել, քաղքենիական հնազանդությունը առավել հիմնավոր ու ակնհայտորեն իրեն զգացնել տվեց մեր հասարակության բյուրոկրատական աստիճանների վրա, որտեղ «մեծ» ղեկավարի աշխատաոճը, գործելակերպը, նույնիսկ բնավորության գծերը դառնում են աներկբայելի մոդելներ առավել փոքր չինովնիկների համար: Եվ որքան նրանք բարձրանում են բյուրոկրատական աստիճաններով, այնքան անկում են ապրում իրենց բարքերում: Այդպիսին է այդ հասարակության կազմավորման բարոյական բանաձևը:

Առավել վտանգավոր է դառնում քաղքենիական հիվանդությունը, եթե այն դադարում է անհատական ֆենոմեն լինելուց և ձեռք է բերում կոլեկտիվ գունավորում՝ սոցիալական, ազգային, երբեմն նաև պրոֆեսիոնալ հողի վրա: Եթե անհատական մակարդակում փայփայված քաղքենիական ինքնասիրահարվածության սկզբունքը (ամենալավը ես եմ, իմ աղջիկը, տունս, նույնիսկ ամուսինս) դառնում է ամենալավ կուսակցություն, ամենալավ հասարակություն, առավել ևս՝ ազգ կամ մասնագիտություն, այդ արդեն վկայում է տվյալ հասարակության խոր հոգևոր ճգնաժամի մասին: Մեր ժողովուրդն ավելի քան ճաշակել է քաղքենիական ինքնասիրահարվածության դառը պտուղները «ամենադեմոկրատական հասարակարգում», «ամենաիմաստուն (առավել ևս միակ) կուսակցության» ղեկավարությամբ, լիուլի ճաշակել է ազգային ինքնագոհության ներդաշնակությունը, որտեղ հանկարծ բոլոր ազգերը բնութագրվել են որևէ ավանդական առավելությամբ, իսկ մեկ ուրիշը, օրինակ, ղազախները, բոլոր այդ առավելություններով՝ միասին վերցված, ինչպիսի կարծիք հայտնվել է տեղական մի հեղինակի գրքույկում: Իսկ «երջանիկ է թուրք լինելը» պանթյուրքիստական լոզունգը շարունակում է վեր խոյանալ անմեղ զոհերից գոյացած բլուրների և «անհավատների» պատմական հուշարձանների թարմ ավերակների վրա:

Ոչ պակաս կործանիչ են գտնվել «ամենալավագույն» գիտությունները, գիտական դպրոցներն ու ուղղությունները, ուսումնասիրության մեթոդները և ստեղծագործական քաղքենիության նման այլ դրսևորումներ:

Իբրև սոցիալ-տնտեսական երևույթ, քաղքենիությունը առավել շեշտված ու ամբողջական ձևով է ներկայացել մարդկային շահերի բարդ գործունեության ֆոնի վրա: Համամարդկային, սոցիալ-դասակարգային, ազգային-հայրենասիրական, կոլեկտիվ-մասնագիտական, անհատական-ընտանեկան շահերի բազմագույն ու բազմերանգ գամայում քաղքենին նախընտրությունը տալիս է վերջիններիս և միայն նրանց: Անհատականը վճռորոշ ելակետն ու միակ չափանիշն է ներկայանում այն ամենի արժեքային-իմացական ու գործնական որպիսությունը բնութագրելու համար, ինչ տեղի է ունենում շրջապատում: Այդ սկզբունքը գործում է անկախ այն բանից, թե ինչպիսի տեղ է զբաղեցնում անհատը հասարակության սոցիալ-քաղաքական կառուցվածքում: Այդ մասին է վկայում քնքշորեն լճացում կոչված դարաշրջանի սոցիալական տրագիկոմեդիայի գլխավոր հերոսի՝ իր իսկ Բրեժնևի օրինակը: Մնում է, որ քաղքենին բնույթից տրված կոլեկտիվիզմի զգացմանը հագուրդ տա նույնքան անձնական գունավորում ունեցող ընտանեկան և խնամիական հարաբերություններում:

Սոցիալ-տնտեսական հարաբերությունների միջանձնայինին հանգեցնելու նմանօրինակ վիճակը ծնունդ է տվել մեր հասարակության մեջ բավականին տարածված բարոյական սկզբունքին՝ «անձնական հարաբերություններից դուրս այլ օրենքներ չկան»:

Համամարդկային, սոցիալ-քաղաքական կամ ազգային հետաքրքրությունների հենգափոխումը անձնականով ենթադրում է ոչ միայն սոցիալական օրգանիզմի հիմքերի խարխլում, այլև նույնքան հիմնավոր կերպով անհատականության աղքատացում, մանրացում և, ըստ էության, կործանում:

Ինքնին հասկանալի է, որ մարդ-արարածը ոչ միայն սոցիալ-տնտեսական, էթնիկական կամ պրոֆեսիոնալ խմբի որևէ միավոր է ներկայացնում, այլև անմիջական արդյունքն է խորապես շեշտված իր յուրակերպ կենսապահանջներն ունեցող և սոցիալապես բավականին ակտիվ որոշակի միկրոմիջավայրի, որը ընդունակ է բոլորովին էլ ոչ վերջին դերը խաղալու հասարակության սոցիալ-քաղաքական կառուցվածքի նույնիսկ ամենաբարձր աստիճաններում հայտնված անհատի գործելակերպում: Հիշենք պալատական բանսարկությունները բոլոր ժամանակներում և բոլոր երկրներում: Նույնիսկ մեր գերսոցիալիզացված ու գերքաղաքականացված հասարակության մեջ, ուր, թվում է, անձնականը չքանում է սոցիալ-քաղաքական բարձրագոչ սկզբունքների աշխարհում, հասարակության հիմնավոր ձևախեղումը երբեմն բացատրվում է հետլենինյան դարաշրջանի կուսակցական-պետական ղեկավարների անձնական-քաղքենիական հողի վրա մղվող անզիջում պայքարով:

Անձնականի անէացումը ոչ միայն անհնար է կենդանի մարդկային գործունեության մեջ, այլև ոչ ցանկալի, եթե չենք փորձում կրկնել անհատականությունը աղքատացնող, նեղացնող, ի վերջո աղավաղող հերթական սխալները: Հասարակության նորմալ կենսագործունեության համար իրավահավասար վիճակում պետք է գտնվեն ոչ միայն սեփականության, այլև մարդկային շահագրգռվածության բոլոր ձևերը: Հասարակական կյանքի ցանկացած ոլորտի բացարձակացումը, լինի դա տնտեսության մեջ, սեփականության հնարավոր ձևերի գործառության բնագավառում (միայն սոցիալիստականը), քաղաքականության ասպարեզում (միայն մեկ կուսակցություն), թե շահերի աշխարհում, անխուսափելիորեն հանգեցնում է միակ հնարավոր հետևանքին՝ ձևախեղմանը: Անձնական շահերը մեծապես տիպական են մարդկային կեցությունը որոշելու համար, երբեմն նույնիսկ առավել հարմարավետ ասպարեզ մարդկային որոշակի հատկությունների համարժեք դրսևորման համար: Բացի իմացական նշանակությունից, անձնական շահերը լրացուցիչ խթան են ծառայում մարդկային գործունեության համար, բնական է, եթե նրանք հակասության մեջ չեն գտնվում մարդկային կեցության ավելի էական, ասենք՝ սոցիալ-էթնիկական, առավել ևս համամարդկային սեռային օրինաչափությունների հետ:

Բոլոր դեպքերում անհատի համակարգում պետք է փնտրել հենց անձնային և սոցիալ-խմբային շահերի հարաբերակցությունում այն հիմնական չափանիշը, որով տարբերակվում է մարդկային ֆենոմենում քաղքենիականը ոչ քաղքենիականից: Ընդ որում քաղքենիական գունավորում են ստանում ոչ միայն հիպերտրոֆիայի ենթարկված զուտ անձնական շահերը, այլև մարդկային կեցության առավել էական պահանջմունքների դեմ ծառացած շահերի ամեն մի հիպերտրոֆիա: Այլ կերպ ասած՝ քաղքենիությունը բոլորովին էլ միայն անձի հետ կապված երևույթ չէ: Սակավ վտանգավոր չեն քաղքենիության դրսևորումները հասարակության սոցիալազգային կամ պրոֆեսիոնալ-խմբային մակարդակներում: Եթե վերանանք մասնավոր-իրավիճակային պահանջներից, օրինակ, ժամանակակից պայմաններում շահերի հիերարխիայում տիրապետող (հետևաբար նաև մարդկայինի չափանիշ) են հանդիսանում մարդու սեռային հատկություններին վերաբերող շահերը: Այդ առավել նշանակալից է արդի պայմաններում, երբ մարդկային սեռի պահպանման համա-

մարդկային շահերը ակնհայտ իմաստ են ձեռք բերել նույնիսկ անձնականի մակարդակում:

Մեծապես հատկանշական է, որ համաշխարհային քաղաքակրթության զարգացման պրոցեսում ժամանակի դժվարագույն քննությանը դիմացել են միայն այն հոգևոր ու նյութական ստեղծագործությունները, որոնցով ակնհայտ կամ թաքնված ձևով գերիշխում են համամարդկային պահանջները և, ընդհակառակը, գեղարվեստական մարմնավորումներում համեմատաբար աղքատիկ են եղել սոցիալական կամ ազգային խմբային շահերը, էլ չխոսելով անձնական հետաքրքրությունների մասին, որոնք, լինեն դրանք նյութական թե բարոյական կարգի, ամուլ են մնում ստեղծագործական տեսանկյունից: Այդ նշանակում է, որ հետաքրքրությունների ու շահերի հարաբերակցության մեջ անձնամետ հակում ունենալու պատճառով քաղքենիությունը, այլ բացերով հանդերձ, հակազդում է հասարակության կարևորագույն հարստության՝ ստեղծագործական կարողության իրականացմանը: Իսկ կոմունիկատիվ տեսակետից, ուղղված լինելով մարդկային կեցության սոցիալ-խմբային էությանը՝ քաղքենիությունը անհնար է դարձնում մարդկանց փոխըմբռնման ու ապրումակցության ընդհանուր էմոցիոնալ ֆոնի ապահովումը, այդ թվում նաև սոցիալ-քաղաքական, ազգային-էթնիկական կամ տեղայնական-կոլեկտիվ մակարդակներում:

Գուցե և սոցիալ-էթնիկական միավորների շահերի քաղքենիական տեղաշարժերի դառն արդյունք է նաև մեր ամբողջ երկիրը համակած ազգային զարթոնքի ոչ սակավ դեպքերում կործանարար ալիքը: Երկրի եզակի հարստություններից մեկի՝ ազգային բազմակերպության անտեսումը, իսկ որպես կանոն՝ նպատակասլաց ոչնչացումը, հանուն սոցիալական միակերպության (քաղքենիական պատկերացմամբ՝ ներդաշնակության) զուտ խոսքային ազատության մեր դարաշրջանում հասցրին մարդկային հոգում բավականին խոր նստած և տասնյակ տարիներ ճնշման տակ պահված ազգային զգացմունքի բուռն պոռթկմանը: Այս դեպքում ևս հասարակության ղեկավարման նեղ քաղքենիական մոտեցման պատճառով ազգային զգացման մեծագույն ստեղծարար ուժն ուղղվեց նույն հասարակության հիմքերի դեմ: Ինքնապահպանման կայսերական բնազդները շղթայեցին բոլոր ժամանակների առաջավոր մտքի մեծագույն նվաճման՝ ազգերի ինքնորոշման իրավունքի բնականոն գործառությունը, իրավունք, որը, ի դեպ, բխում է կեցության առավել հիմնակազմիկ օրենքներից՝ ինքնազարգացման և ինքնադետերմինավորման սկզբունքներից:

Մեծապետական շահերը մի կողմից, նեղ ազգայնականը՝ մյուս, բթացրել են մարդկային սրտի ու հոգու ընկալման կարողությունը, ամենից առաջ, մեր երկրում վերակառուցման դարաշրջանի ազգային զարթոնքի առաջնեկի՝ ղարաբաղյան շարժման նկատմամբ:

Քաղքենիական հոգևոր կուրությունը տարիներ շարունակ զրկել է և շարունակում է զրկել քաղաքագետների և անգամ մտավորականների ոչ մեկ սերունդ լսելու հայոց աշխարհ Արցախի մասին ռեգիոնի հնագույն ժողովուրդների տարեգիրների խոսքը, մի երկրամաս, որտեղ մարդկության պատմությունը մշտապես հայկական օդով է շնչել, մարդկայնացված քարերը պատմել են նաիրի լեզվով, իսկ քաղաքակրթությանը հայտնի բոլոր դարաշրջանները հաջորդել են մեկը մյուսին հայկական մեղեդիների ներքո:

Ի՞նչ քաղքենիություն: Ամեն մի մարդկայինի սահմաններից դուրս է պայքարել քաղաքակրթության բազմադարյան պատմության ու նրա մեծագույն արժեքի՝ ճշմարտության դեմ, պայքարել հայկական հնադարյան հուշարձանները կործանելով կամ նրանք հողածածկ անելով, պայքարել բռնությամբ վտարելով կամ ուղղակի ֆիզիկապես բնաջնջելով հիմնական տեղաբնիկներին՝ պատմության կողմից վաղուց մոռացված բարբարոսության, նույնիսկ մարդակերության եղանակներով:

Պատմության մեղքերի քավությունը հնարավոր է միայն արդարության ու ճշմարտության քավարանում: Ճշմարտությունը ենթակա չէ ո՛չ աստվածայինին (արտահայտվի դա երկնային, թե երկրային ձևով), ո՛չ դասակարգայինին և ո՛չ էլ ազգայինին: Չկա հայկական, ռուսական կամ ադրբեջանական ճշմարտություն և ոչ էլ արդարություն: Բայց կան վեյիկոռուսական, հայկական և ադրբեջանական շահեր, որոնք կարող են հեշտությամբ զրկվել օբյեկտիվ չափանիշներից և դառնալ ամենազանազանակերպ կամայականությունների գործիք, հենց որ դադարեն հիմնավորվել ճշմարտությամբ՝ իբրև համամարդկային տրամաբանական-իմացաբանական արժեքի:

Եվ ոչ միայն ազգային հարաբերություններում է նեղ տեղայնական քաղքենիական ոգին խաթարում համամարդկային իրավական արդարամիտ ու բանական նորմերով ղեկավարվելու հնարավորությունը: Մեր հասարակության խոր ճգնաժամային վիճակը՝ սկսած տնտեսությունից, վերջացրած բարոյական հարաբերություններով, մարդկային առումով ամենից առաջ արդյունքն է քաղքենիության:

Եվ այսպես, լինելով հասարակության սոցիալ-տնտեսական հիմքերի խոր անոմալիայի անմիջական դրսևորում՝ հայրենական քաղքենիությունը էապես երանգավորում է (եթե ոչ ընդգրկում) ոչ միայն միջանձնային, այլև միջխմբային, ազգամիջյան և միջռեգիոնալ հարաբերությունները: Իբրև այդպիսին այն բավականին զգալի արգելակիչ գործոն է հասարակության սոցիալ-տնտեսական և հոգևոր կյանքի նորմալ գործառության համար:

Որքանով մեր հասարակության մեջ քաղքենիությունը չի ներկայանում սոսկ որպես անձի հետ առնչվող բարոյական երևույթ և որքանով որ **ծագումնաբանական առումով բարոյականը պետք է դիտել իբրև օբյեկտիվորեն գործող սոցիալ-տնտեսական հարաբերությունների յուրովի շարունակությունն ու լրացումը, քաղքենիության հաղթահարումը ամենից առաջ ենթադրում է ամբողջ հասարակական օրգանիզմի, մասնավորապես, նրա սոցիալ-տնտեսական օրինաչափությունների բնականոն գործառության վերականգնում:** Այստեղ է տրված մարդկային կեցության նույնքան բնական գործառության բանական սկիզբը, կեցություն, որի որպիսությունը պետք է որոշվի ոչ թե հասարակական օրգանիզմի սոցիալ-քաղաքական հիերարխիայում մարդկանց մեխանիկորեն զբաղեցրած տեղով, այլ հասարակության նյութական ու հոգևոր հարստության բազմապատկման գործում ունեցած անձնական լումայով:

Իսկ նորմատիվ առումով հայրենական քաղքենիության հաղթահարումը ենթադրում է սոցիալ-քաղաքական, ինչպես նաև ազգային, էթնիկական շահերով կոնյունկտուրային մանիպուլյացիաների (եթե ոչ անձնական-խնամիական քմահաճույքի) փոխարեն **հասարակական օրգանիզմի գործառության բնագավառում վճռականորեն ղեկավարվել ժամանակակից քաղաքակրթված հարաբերությունների համամարդկային չափանիշներով:**

Ավելի քան ակնհայտ է, որ մարդկային համակեցության համաշխարհային, սկզբունքորեն նոր ամբողջության կազմավորման մեր դարաշրջանում հազիվ թե հնարավոր լինի ռեգիոնալ շահերի կարգավորումը առանց հաշվի նստելու համամարդկային նորմերի ու հետաքրքրությունների հետ ոչ միայն էկոլոգիայում, այլև մարդկային գործունեության մնացած այլ բնագավառներում: Մասնավորապես, բռնություններից ազատ աշխարհի ստեղծման ժամանակակից պայմաններում խոր ցավով ընկալվեց հողագնդի բոլոր անկյուններում վանդալիզմը Սումգայիթում, Ֆերգանայում և Բաքվում: Նույնքան զգայունակ է գտնվել աշխարհը ռասիստական և բարոյական այլ անոմալիաների նկատմամբ՝ լինեն դրանք Աֆրիկայում կամ Կենտրոնական Ամերիկայում, վերաբերեն մի ամբողջ երկրի, ասենք, չինական իրականության, թե մահմեդական ծայրահեղականների կողմից դատապարտված մի գրողի ճակատագրին:

Ղարաբաղյան ցավի չըմբռնումը մեր երկրում և նրա խոր վերապրումը համաշխարհային հասարակայնության կողմից ակնհայտ վկայություններ են այն բանի, թե բարոյահոգեբանական ինչ աստիճանում է գտնվում մեր հասարակությունը, ինչքան մենք դժվար ենք կողմնորոշվում շահերի ու հետաքրքրությունների աշխարհում և որքան հեռու ենք մնացել մարդկային հարաբերությունների համամարդկային «ստանդարտներից»՝ գերված գտնվելով նահապետական-տեղայնական նախապաշարմունքների շրջանակներում:

Ամենից առաջ նման սոցիալ-տնտեսական և քաղաքական-բարոյական նորմատիվ պահանջներում է տրված մեր դարում անձին բաժին ընկած հոգու ամենաասարսափելի հիվանդություններից մեկի ապաքինման սկիզբը, մարդու մեջ մարդկայինի տառապալից փրկության պրոցեսի սկիզբը:

ցիալական կազմակերպության կապիտալիստական ձևի պայմաններում իբրև իր սոցիալական հետևանքը, առաջ է բերում մտավորականության շարքային շատ ներկայացուցիչների կատարած աշխատանքի արժեզրկում: Այդ բանը հանգեցնում է մտավոր աշխատանքի ներկայացուցիչների շրջանում գործազրկության որոշ աճի և բանվոր դասակարգի դրությանը շարքային մտավորականի դրության մերձեցման որոշակի տարրերի առաջացմանը:

Սոցիալիզմի պայմաններում նույնպես նկատվում է ավտոմատացված արտադրության դարաշրջանում անմիջական արտադրողի աշխատանքի պայմանները ու բովանդակությունը մտավորականության ներկայացուցիչների աշխատանքին մերձենալու պրոցեսը, որն արդյունք է տեխնոլոգիական հեղափոխության, ինչպես նաև մտավոր գործունեության որոշ տեսակների հաջորդաբար օտարումը մարդուց և արհեստական համակարգերին դրանց հանձնումը: Սակայն այստեղ այդ պրոցեսը հագեցված է որոշ աստիճանի այլ սոցիալական բովանդակությամբ: Օրինակ, մտավոր գործունեության որոշ տեսակների հանձնումը մեքենային՝ գործազրկության պրոբլեմի լարվածության ավելի պակաս դրամատիկական պայմաններում, քան Արևմուտքում է, ամենից առաջ դրսևորվում է որպես մի քայլ գործունեության քարացած, սուբյեկտիվ բովանդակությունից զուրկ ձևերից դեպի ստեղծագործական աշխատանք տանող ճանապարհին, որը նպաստում է աշխատանքի սուբյեկտի էությունը բնութագրող ուժերի, նրա հոգևոր կարողությունների ամբողջովին իրականացմանը:

Միևնույն ժամանակ պետք է ասել, որ անմիջական արտադրողի աշխատանքի ինտելեկտուալացումը, իր ընդհանուր ուղղվածությամբ ու վերջնական արդյունքներով համընկնելով մարքսիստական ուսմունքի տեսական կանխադրույթների ու էթիկական դիրքորոշման հետ, իր կենսագործման ձևով սոցիալիզմի պայմաններում նույնպես ոչ միշտ հարթ ու անհիվանդագին բնույթի է: Դա կապված է այն հանգամանքի հետ, որ անմիջական արտադրողի աշխատանքի ինտելեկտուալացումն արտադրական անհրաժեշտություն է, բայց ոչ միշտ անհատական պահանջմունք, և անհատական գիտակցության մակարդակում այդ անհրաժեշտությունը հաճախ փոխակերպվում է անհատի կողմից իր սոցիալական կարգավիճակի նկատմամբ ռեալ սպառնալիքի գիտակցման: Այսինքն՝ կրթական ցենզի մասսայական բարձրացման անհրաժեշտությունը հասարակական գիտակցության մեջ ստանում է բացասական, այլ ոչ դրական մոտիվացիա՝ ձեռք բերելով նշանակալից չափով հարկադրական բնույթ:

Կարելի է ենթադրել, որ ապագայում, տեխնոլոգիական զարգացման և դրա հետ կապված անմիջական արտադրողի կրթական մակարդակի հետագա բարձրացման պահանջներին համապատասխան, այդ պրոցեսի սոցիալական հետևանքները կարող են առավել դրամատիկ բնույթ ձեռք բերել, ընդհուպ մինչև այնպիսի ծայրահեղ ձևը, ինչպիսին է նաև սոցիալիստական երկրներում ոչ բավականաչափ որակավորված աշխատողների կառուցվածքային գործազրկության աճը: Հանդիսանալով աշխատողներ ընտրելու, այսպես կոչված, «մերիտոկրատիկական» («արժանազորության») չափանիշների իրացման ձև, այդ երևույթը, հավանաբար, հասարակական գիտակցությունը կկողմնորոշի կրթական մակարդակի մասսայական բարձրացման անհրաժեշտության միանշանակ ըմբռնմանը:

Հարկ է նկատել, որ կոնվերգենցիայի տեսությունն անկասկած հավակնում է քաղաքակրթության զարգացման որակական փուլերի տարբերակման մարքսիստական սկզբունքի կոնցեպտուալ այլընտրանքի դերին՝ հասարակական պատմական պրոցեսի համակարգման բազային սկզբունքների որոնումները սեփականության հարաբերությունների ոլորտից այլ ոլորտ փոխադրելով: Մեր կարծիքով, սակայն, այդ տեսության բովանդակության մեջ, այնպես, ինչպես արևմտյան որոշ այլ սոցիալ-փիլիսոփայական կոնցեպցիաներում, կարելի է ի հայտ բերել Կ. Մարքսի տեսական ժառանգությունից անգիտակցաբար կախվածության տարրեր: Ինչպես հայտնի է, մարքսիստական ուսմունքի համաձայն, արտադրական գործունեության միջոցների կատարելագործումն այն գործոնն է, որը վերջին հաշվով պայմանավորում է արտադրահարաբերությունների ձևերի պատմական փոփոխությունը: «Փիլիսոփայության թշվառությունը» աշխատության մեջ Կ. Մարքսը նշում է. «Ջեռնաղացը ձեզ տալիս է հասարակություն սյուզերենի գլխավորությամբ, շոգեաղացը՝ հասարակություն արդյունաբերական կապիտալիստի գլխավորությամբ» (Մարքս Կ. և Էն-



գելս Ֆ., Երկեր, Ե., «Հայաստան», 1987, հ. 4, էջ 151): Այսինքն՝ աշխատանքի միջոցների, հետևաբար, նաև արտադրության տեխնիկայի ու տեխնոլոգիայի բնույթը այն նշանակալից գործոնն է, որը որոշում է դարաշրջանի արտադրական հարաբերությունների բնույթը:

Կ. Մարքսի հետքերով ժամանակակից արևմտյան ֆուտուրոլոգները, մասնավորապես կոնվերգենցիայի տեսության ներկայացուցիչները, նյութական արտադրական գործոններն առանձնացնում են իբրև հասարակության զարգացման ցանկացած փուլի բազային բնութագիր: Սակայն պատմական պրոցեսի պարբերացման իրենց փորձերում նրանք հաշվի են առնում սոսկ տեխնիկայի, արտադրության տեխնոլոգիայի, տեխնոլոգիական հարաբերությունների և միայն առանձին դեպքերում էկոնոմիկայի զարգացման դինամիկան: Այլ խոսքով, հաշվի է առնվում հասարակության արտադրողական ուժերը կազմող գործոնների սոսկ մի մասը, ինչպես նաև արտադրության կազմակերպման ձևերը և բացառվում է արտադրական տնտեսական հարաբերությունների դերի մասին հարցը:

Նշենք, որ ժամանակակից արևմտյան հասարակագիտության մարքսիստական ուսմունքից չգիտակցված կախվածության հանգամանքի վրա արդեն ուշադրություն են դարձրել ոչ միայն խորհրդային հետազոտողները (տե՛ս **Румянцев О. М.** Проблемы современной науки об обществе. М., Наука, 1969, с. 36; **Шахназаров Г. Х.** Фиаско футурологии, М., Политиздат, 1979, с. 17), այլև արևմտյան սոցիալական փիլիսոփայության որոշ ներկայացուցիչներ: Այսպես, Օ. Թոֆլերը, երևան բերելով իր ստեղծագործությանը բնորոշ սոցիալական երևույթների ու պրոցեսների օբյեկտիվ հետազոտության ձգտումը, «Կանխատեսումներ և նախադրյալներ» գրքում գրում է. «Եվ, գիտակցաբար, թե՝ ոչ, անգամ մեզանից նրանք, ովքեր ատում են Մարքսին, փաստորեն իրենց վրա կրել են նրա ազդեցությունը, այնպես, ինչպես մենք կրել ենք Նյուտոնի, Դարվինի, Ֆրոյդի և ուրիշ խոշոր ինտելեկտների ազդեցությունը, որոնք ձևավորել են աշխարհի մեր ըմբռնումը»:

Մարքսիստական հասարակագիտության վերաբերմունքը կոնվերգենցիայի տեսության նկատմամբ, ըստ էության, անցել է երեք փուլերի էվոլյուցիա: Սկզբնապես, ինչպես նշվեց վերը, կոնվերգենցիայի տեսությունը գնահատվում էր որպես կապիտալիզմի, այսպես ասած, «գաղափարական դիվերսիայի» մի ձև, այնուհետև մեկնաբանվում էր որպես ռեալ սոցիալիզմի հաջողությունների ստիպված խոստովանություն (տե՛ս օրինակ՝ **Шахназаров Г. Х.** Фиаско футурологии, с. 62): Ներկայումս, հասարակագիտության ապաքաղաքականացման և հասարակական երևույթների օբյեկտիվ վերլուծությանը կատարվող վերադարձի պայմաններում, այլընտրանքն ավելի ու ավելի մեծ ճանաչում է գտնում, որի հեղինակներից մեկն էր Ա. Դ. Սախարովը: Նա այն համոզմանն էր, որ կոնվերգենցիայի տեսությունն արտացոլում է ժամանակակից աշխարհում գոյություն ունեցող ռեալ պրոցեսները, նշանակալի հեռանկարներ ունեցող օբյեկտիվ միտումները:

Ինչպես հայտնի է, վարչահրամայական սոցիալիզմի սոցիալ-տնտեսական ուղու և հոգևոր-բարոյական դիրքորոշման շինծու այլընտրանքությունը հասցրեց տնտեսական ու սոցիալական ողբալի հետևանքների: Ներկա ժամանակվա դրոշն է այդ ուղուց հրաժարվելը, սեփականության որոշակի բազմազանության ներդրումը, շուկայական էկոնոմիկայի զարգացումը և այլն, այսինքն՝ այն կառուցվածքներին դիմելը, որոնք անցյալում համարվում էին հասարակական կազմակերպության սոցիալիստական ձևի հետ անհամատեղելի: Միաժամանակ հանդիպական բարդ որակական կերպարանափոխման պրոցես է տեղի ունենում ժամանակակից ինդուստրիալ կապիտալիստական հասարակությունների զարգացման հիմնական սոցիալական և տնտեսական միտումներում ու պարամետրերում, կերպարանափոխումներ՝ որոնք ապահովում են նրանց էկոնոմիկայում պետական սեկտորի աճը, աշխատանքի արդյունքների հասարակական յուրացման աճը, նշանակալից չափով պետական ծախսեր են կատարում սոցիալական կարիքների համար, իրագործում են սոցիալական բազմաթիվ ծրագրեր, ապահովում սոցիալական երաշխիքներ:

Արդի տեխնոլոգիապես զարգացած հասարակությանը բնորոշ է անմիջական արտադրողի աշխատանքի դասական ըմբռնմամբ շահագործումից հրաժարվելը: Արդյունաբերական խոշոր մեքենայական արտադրության դարաշրջանում աշխատանքի կազմակերպման դասական «քրտնաթոր» սկզբունքը դադարում է տնտեսապես

եկամտաբեր լինելուց և այդ պատճառով վերածվում սոցիալական անարխիայի: Արևմուտքի արդյունաբերորեն զարգացած երկրներում տեխնոլոգիական և սոցիալ-տնտեսական պարամետրերի բազմաթիվ կերպարանափոխումների գիտակցումը կյանքի կոչեց այն միտքը, որն այսօր գոյություն ունի մեր հասարակական գիտակցության մեջ, ըստ որի ժամանակակից արևմտյան աշխարհի հասարակական հարաբերությունների և այլ սոցիալական ու տնտեսական բնութագծերի որակական կերպարանափոխումները սիստեմային, ֆորմացիոն կարգի փոփոխություններ են և իրենցից ներկայացնում են այդ հասարկությունների էվոլյուցիոն սոցիալիզացման պրոցեսների արտահայտությունը:

Այդ գաղափարը ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների I համագումարում արտահայտել է Չինգիզ Այթմատովը, տնտեսագիտական գիտությունների դոկտոր Լ. Լյուբիմովը «Литературная газета»-ի էջերում և ուրիշներ (տե՛ս **Любимов Л.** Какой системе принадлежит США?, «Лит. газета», 1989, 28 июня, с. 15): Այդ քաղաքական հիպոթեզի ողջ պրոբլեմայնության ու վիճելիության պարագայում հավաստի է թվում այն հանգամանքը, որ ժամանակակից աշխարհի համար բնորոշ է տնտեսական, գաղափարախոսական և մշակութային պլյուրալիզմի ու բազմաթիվ սոցիալական կառուցվածքների աճող ընդհանրության դիալեկտիկական միասնությունը՝ հասարակական հարաբերությունների հումանիզացման և սոցիալական համագործակցության ոգու զարգացման ընդհանուր միտումի առկայության պայմաններում:

Այդ երևույթը հնարավորություն է ընձեռում յուրաքանչյուր հասարակության պահպանելու իր դեմքը և, միևնույն ժամանակ, ավելի մարդկային ու ավելի համամարդկային է դարձնում այն: Համապատմական առումով այդ երևույթը դեպի ոչ շահագործողական, ոչ հակամարտ սոցիալ-տնտեսական ձևերը համաշխարհային ընկերակցության հասարակական սիստեմի սկզբունքային շարժման մասին Կ. Մարքսի մակրոսոցիալական կանխատեսման հաստատումն է: Միևնույն ժամանակ, դա Ա. Դ. Սախարովի գաղափարի հաստատումն է այն մասին, որ «Կոնվերգենցիան կապիտալիստական և սոցիալիստական համաշխարհային սիստեմների մերձեցման իրականում տեղի ունեցող պատմական պրոցես է, որն իրագործվում է տնտեսական, քաղաքական, սոցիալական և գաղափարախոսական ոլորտներում հանդիպական պլյուրալիստական փոփոխությունների հետևանքով» (Сахаров А. Д. Конвергенция. В кн.: Опыт словаря нового мышления. М., Прогресс, 1989, с. 17):

---

# ՖԻԶԻԿԱՅԻ ԱՐԴԻ ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՄՈԴԵԼՆԵՐԸ ԵՎ ԴՐԱՆՑ ՕԲՅԵԿՏԻՎՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ

**Գ. ՆԱԶԱՐՅԱՆ**

*ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՏԵՍԱԿԱՆ ՖԻԶԻԿԱՅՈՒՄ, որը մեզ շրջապատող իրականության ռացիոնալ յուրացման առավել զարգացած միջոցներից մեկն է, վերջին հարյուրամյակի ընթացքում ստեղծվել են գիտական մտածողության այնպիսի ձևեր ու մեթոդներ, որոնք արտացոլում են աշխարհի ֆիզիկական պատկերի միանգամայն նոր առանձնահատկությունները: Այդ երևույթը Վ. Ի. Լենինը տեսել ու արձանագրել է XX դարի սկզբին՝ այն ժամանակվա ֆիզիկայի նկատմամբ, որն իր շատ հասկացությունների ու մեթոդների հեղաբեկման մի ժամանակաշրջան էր ապրում (տե՛ս ԵԼԺ, հ. 18, էջ 325—411): Այժմյան ֆիզիկական ճանաչողության առանձնահատկությունները դրսևորվում են ամենից առաջ ռացիոնալ սխեմաների «իրացման» պրոցեսում՝ տեսական (մաթեմատիկական) մոդելավորման մեջ, որն օբյեկտիվ աշխարհի արտացոլման մի առանձնակի ձև է, հատուկ կազմակերպված գիտափորձերի ընթացքում տեսական սխեմաների «առարկայացման», տեխնիկական գործունեության ընթացքում տեսական հնարավորության մարմնավորման մեջ, որն ստեղծում է արհեստական, բայց և միանգամայն օբյեկտիվ մի իրողություն:*

*Վերը նշված առանձնահատկությունների փիլիսոփայական իմաստավորումը մեծ նշանակություն ունի ժամանակակից գիտական ճանաչողության համար, բայց, մեր կարծիքով, դեռևս պատշաճ արտացոլում չի գտել փիլիսոփայության մեջ: Այն ենթադրում է, ամենից առաջ, պատասխան գտնել սկզբունքային նշանակություն ունեցող մի շարք փիլիսոփայական հարցերի, ինչպիսիք են ֆիզիկայի տեսական (մաթեմատիկական) մոդելների օբյեկտիվության հարցը, ֆիզիկական գիտելիքի զարգացման այժմյան մակարդակին ֆիզիկական ռեալության վերաբերյալ փիլիսոփայական պատկերացումների ադեկվատության հարցը: Խոսելով ֆիզիկական ռեալության վերաբերյալ ժամանակակից պատկերացումների առանձնահատկության մասին՝ անհրաժեշտ է հաշվի առնել մարդկային ճանաչողության այն ընդհանուր գծերը, որոնք իրենց աշխատություններում մատնանշել են դիալեկտիկական մատերիալիզմի հիմնադիրները:*

*Կարևորագույն գծերից մեկն այն է, որ ճանաչողությունը ներառում է պրակտիկան: Այս տեսակետից չափազանց էական է, որ սկզբում չմասնատված, կարծես թե գիտակցությանն ընդդիմակայած օբյեկտիվ իրողությունը ճանաչողության օբյեկտ է դառնում մարդու կողմից այն զգայաբար, էմպիրիկ, գործնական յուրացման դեպքում: Ինչպես գրել է Կ. Մարքսը, «Պրակտիկայից մեկուսացող մտածողության իրական կամ անիրական լինելու վեճը զուտ սխոլաստիկ հարց է»:* (Մարքս Կ., Թեզիսներ Ֆոյերբախի մասին, *տե՛ս* Էնգելս Ֆ., *Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը գրքում, Երևան, 1961, թեզիս 2):*

*Մյուս ոչ պակաս կարևոր գիծն այն է, որ օբյեկտիվ իրականության ճանաչողական կերպարը ոչ թե նրա միանշանակ արտացոլումն է գիտակցության մեջ, այլ ընդգրկում է երևակայության ու մոլորության տարրեր. «Մտքի (մարդու) մոտեցումը առանձին իրին, նրանից կաղապար (հասկացություն) հանելը պարզ, անմիջական, հայելային-մեռյալ գործողություն չէ, այլ բարդ, երկատված, զիգզագաձև գործողություն, որը պարունակում է կյանքից ֆանտազիայի կտրվելու և հեռանալու հնարավորություն (Լենին Վ. Ի. ԵԼԺ, հ. 29, էջ 405): Գիտական գիտելիքի օբյեկտիվության հարցն անխզելիորեն կապված է ռեալության բնույթի ըմբռնման հետ, և, ավանդաբար հանդիսանալով փիլիսոփայական կարևորագույն պրոբլեմներից մեկը, իր վրա է բևեռել այնպիսի ականավոր փիլիսոփաների ուշադրությունը, ինչպիսիք են Ռ. Դեկարտը, Ի. Կանտը և Գ. Հեգելը: Այս պրոբլեմի հետազոտման մեջ իրենց մեծ ավանդն ունեն նաև մարքսիզմի դասականները:*

*Լենինյան այն սահմանումը, թե մատերիան, իբրև օբյեկտիվ ռեալություն, տրված է «մարդուն նրա զգայություններին մեջ, որը պատճենվում, լուսանկարվում, արտապատկերվում է մեր զգայություններով, գոյություն ունենալով նրանցից անկախ» (Լենին Վ. Ի. ԵԼԺ, հ. 18, էջ 159), իր կարևոր ճանաչողական նշանակու-*

---

*ՆԱԶԱՐՅԱՆ ԳԱՐԵԳԻՆ ՇԱՀԵՆԻ— ՀԽՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի ասպիրանտ:*

# ԵՐԿՐԱՇԱՐԺԻ ԴԱՍԵՐԸ

Լ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

ԺԱՄԱՆԱԿԸ ՈՐՔԱՆ ՄԵԶ ՀԵՌԱՑՆՈՒՄ է երկրաշարժի օրվանից, այնքան ավելի հստակ է երևում ահավոր աղետի պատճառած հետևանքների պատկերը: Մեծ ուշքի գալով մթագնող ցավի հարվածից, քանի գնում, ավելի ենք գիտակցում մեզ հասած արհավիրքի անչափելիությունը, առավել ուժգնորեն զգում կորստի անամոք տառապանքը:

Այսօր, անկասկած, 1988 թվականի դեկտեմբերի 7-ի ականատեսների համար դժվար կլինեն նկարագրել ահավոր այն պահերը, որոնք տեսել ու ապրել էին իրենք, սակայն ե՞րբ, ինչպե՞ս, ի՞նչ միջոցներով պետք է հիշողություն դառնա մեր պատմության նաև այս դաժան էջը, ցույց կտա նույն ինքը՝ ամենազոր ժամանակը:

Երկրաշարժի բուն գոտում և նրան հարող շրջաններում զգալի կորուստներ են կրել նաև պատմության ու կուլտուրայի հուշարձանները: Ավերվել և լուրջ վնասվածքներ է ստացել հնագիտական, պատմական, ճարտարապետական և արվեստի հուշարձանների մեծ մասը, որոնք վերցված են պետական հաշվառման ու պահպանության տակ՝ ավելի քան 20 քաղաքներում և վարչական շրջաններում: Հատկապես զգալի վնաս է հասցվել Լենինականում, Ստեփանավանի, Սպիտակի, Գուգարքի, Ախուրյանի, Ղուկասյանի, Արթիկի, Անիի, Արագածի, Ապարանի շրջաններում գտնվող հուշարձաններին:

Աղետի գոտում պետական հաշվառման վերցված 7435 հուշարձաններից 113-ը՝ միութենական, 2213-ը՝ հանրապետական և 5109-ը՝ տեղական նշանակության են, դրանցից 671-ը՝ հնագիտական, 2713-ը՝ ճարտարապետական, 988-ը՝ պատմական և 3126-ը՝ արվեստի հուշարձաններ:

Երկրաշարժից անմիջապես հետո, շուրջ մեկ ամսվա ընթացքում, հնագետներից, պատմաբաններից, ճարտարապետներից, կոնստրուկտորներից, երկրաբաններից և այլ մասնագետներից կազմված հատուկ խմբերը աղետի գոտում մանրազնին ստուգեցին հուշարձանների տեխնիկական վիճակը և կազմեցին համապատասխան փաստաթղթեր: Այդ և վերջին մեկ տարվա ընթացքում կատարված ուսումնասիրություններով հնարավոր եղավ ճշտել վթարված հուշարձանների ընդհանուր վիճակը ըստ առանձին վարչական շրջանների տարածքների:

Հրաշքով փրկվել, սակայն լուրջ վնասվածքներ է ստացել հայ միջնադարյան ճարտարապետության գոհարներից մեկը՝ IV—V դարերում կառուցված Երերույքի բազիլիկ տաճարը:

Զնայած կանգուն է մնացել Լենինականից 5 կմ հեռավորության վրա գտնվող արժեքավոր ճարտարապետական կոթողներից մեկը՝ X—XII դարերում կառուցված վանական նշանավոր համալիրը Մարմաշենում, այնուհանդերձ երկրաշարժի ահեղ ցնցումներից խոշոր ճաքեր են առաջացել առանձին եկեղեցիներում, շատ տեղերում թափվել երեսապատման քարերը:

Ամբողջովին ավերվել է Ստեփանավանի մոտ գտնվող Գյուլագարակ գյուղի XIX դարի եկեղեցին: Շուրջ 400 խորանարդ մետր ծավալով փլուզվել է Լոռի բերդի պարիսպների մի հանգույցը: Նույն բախտին է արժանացել Սպիտակի մոտ գտնվող միջնադարյան ժայռափոր կառույցվածքների համալիրը:

Լուրջ վնասվածքներ են ստացել Հայաստանի հյուսիսում գտնվող մի շարք նշանավոր հուշարձաններ: Երկրաշարժի ցնցումներից տուժել են VI դարում կառուցված Օձունի տաճարը, Հաղպատի (X—XIII դդ.), Սանահինի (X—XIII դդ.), Դսեղի Բարձրաքաշ սուրբ Գրիգոր վանքերը (XIII դար): Երկրաշարժը չի խնայել Ախուրյանի շրջանի Մայիսյան գյուղում գտնվող VII դարի եկեղեցին, Արթիկի, Պեմզաշենի եկեղեցիները, Հառիճի վանական համալիրը՝ Արթիկի շրջանում, Կամսարականների ամրոցը՝ Թալինի շրջանում, Ամբերդի ամրոցը՝ Աշտարակի շրջանում, Կեչառիսի վանական համալիրը՝ Հրազդանի շրջանում, Գոշավանքը՝ Դիլիջանում, Կիրանց վանքը՝ Իջևանի շրջանում և այլն:

Երկրաշարժի ահեղ ալիքը աննախադեպ ավերածություններ է կատարել Լենինականում: Այստեղ ամբողջովին քանդվել է հինգ հարկանի 55, ինը հարկանի 90 շենք, կիսավեր վիճակում էր հինգ հարկանի 30 և ինը հարկանի 12 շենք: Փլուզվել է XIX դարի երկրորդ կեսում կառուցված Ամենափրկիչ եկեղեցին, մասնակիորեն քանդվել են Սուրբ Նշան, Սուրբ Աստվածածին եկեղեցիները: Մեծ վնասվածքներ են ստացել ժողովրդական ճարտարապետության հարյուրավոր հուշարձաններ:

Լենինականի կենտրոնը, որն ընդգրկում է շուրջ 700 հեկտար տարածություն, 1980 թվականին Հայաստանի կառավարության կողմից հայտարարվել է պատմաճարտարապետական պետական արգելոց-թանգարան: Բացօթյա այդ թանգարանում հաշվառման են վերցված 1115 հուշարձաններ: Արգելոցին տրվել է պատմական բնակավայրի, «Կումայրի» անունը, որը հիշատակում է դեռևս մ. թ. ա. V դարի հույն պատմիչ Քսենոֆոնը:

Երկրաշարժից անհամեմատ լավ են պահպանվել «Կումայրի» արգելոցի տարածքում գտնվող շենքերը, որոնք հիմնականում XIX դարի երկրորդ կեսին կառուցված մեկ-երկու հարկանի քարաշեն բնակելի տներ են, ժողովրդական ճարտարապետության լավագույն և անկրկնելի հուշարձաններ: Դրանք դիմացել են նաև 1926 թվականին և նրանից առաջ եղած երկրաշարժերին: Եվ պատահական չէ, որ 1988 թվականի դեկտեմբերի 7-ից հետո քաղաքի բնակիչները հաճախ ասում էին՝ «Գյումրին դիմացավ»:

Այնուամենայնիվ արգելոցում պահպանության վերցված շուրջ 890 բնակելի տներ ստացել են տարբեր աստիճանի վնասվածքներ:

Ընդհանուր առմամբ երկրաշարժից տուժած շրջաններում պետական հսկողության և հաշվառման վերցրած 7494 հուշարձաններից վնասվել են 1571-ը, որոնցից 73-ը ավերվել են ամբողջովին, 347-ը կիսավեր ու խիստ վթարային վիճակում են, 1151-ը տեխնիկապես վթարային վիճակում՝ լուրջ վնասվածքներով:

Հրաշքով փրկվել են հայ ժողովրդի դժվարին պատմական ճակատագրի վկաները, նրա քաղաքակրթության տարեգրության էջերը կազմող, կառուցողական, գեղարվեստական-ճարտարապետական կատարելության հասած հազարավոր հուշարձաններ:

Բաց երկնքի տակ գտնվող զարմանահրաշ թանգարանը՝ Հայաստան աշխարհը դարեր շարունակ բազմիցս ենթարկվել է երկրաշարժերի ահեղ ցնցումների, որոնք մեծ մասամբ աղետաբեր հետևանքներ են ունեցել նրա համար:

Հայ ժողովրդի պատմությունը լի է ոչ միայն օտար բռնակալների ավերիչ արշավանքների ու ասպատակությունների, այլև տարբեր ժամանակներում տեղի ունեցած երկրաշարժերի մասին պահպանված հիշատակումներով, որոնք միշտ ուղեկցել, վիշտ ու դառնություններ են բերել նրան: Միջնադարյան հայ պատմիչների ստեղծագործություններում երկրաշարժերի նկարագրությունը սրտանմլիկ, տպավորիչ ու հոգեցունց զգացմունքների մի արտահայտություն էր, որը նույնիսկ խիստ այժմեական է հնչում նաև այսօր:

Բավական է հիշատակել 735 թ. հուլիսի 21-ին Վայոց ձորում տեղի ունեցած երկրաշարժի մասին պատմիչ Ստեփանոս Օրբելյանի ներքոհիշյալ վկայությունը, որտեղ ասվում է. «Հանկարծակի պատահեց երկնքից տիրող պատուհասը և ամբողջ գավառը 40 օր շարունակ պատվեց խավարով, որի հետ եղավ նաև դղրդոց և երկրաշարժ, որովհետև երկիրը եռում էր ահեղ կերպով, ստորերկրյա դղրդյուն առաջանում, անդունդից բարձրանում էր մինչև վեր և նորից, որպես ծովի ալիք, փլուզվում էր, տապալվում էին լեռները, քարերն իրենց հիմքից քանդվում, տներն ու գեղեցիկ ապարանքներն ամենուրեք երերվում էին...»:

Հայկական լեռնաշխարհը հրաբխային և լեռնակազմական ուժերի հետևանքով առաջացած մի ուրույն երկիր է, ֆիզիկաաշխարհագրական մի առանձին շրջան, որը զբաղեցնելով շուրջ 300 հազար քառակուսի կիլոմետր տարածք, վերածվել է մի լեռնային կղզու: Լեռնային այդ կղզին, հատկապես նրա առանձին հանգույցները մշտապես գտնվել են իրենց հաճախականությամբ ամենաինտենսիվ երկրաշարժերի գոտում: Այդ հանգույցների մի զգալի հատվածը զբաղեցնում է խորհրդային Հայաստանի ներկայիս տարածքի գերակշռող մասը:

Հնագույն գրավոր վկայությունների, իսկ նոր ժամանակներում՝ նաև գիտական ուսումնասիրությունների հիման վրա կարելի է ճշտել այդ հանգույցների տարածման սահմանները: Այդ տարածքներից հայտնի են Արարատյան դաշտավայրը և Արարատ լեռանը հարող շրջանները, Շիրակի և Կարսի հարթավայրերը, Սյունիք-Վայոց ձորի շրջանը:

Հայ և օտար պատմիչներից մեզ հասած տեղեկությունների հիման վրա կարելի է հստակորեն ուրվագծել երկրաշարժերի Արարատյան հանգույցի սահմանները, որոնք ձգվում են Երևանից մինչև Նախիջևանը ներառյալ: Ըստ այդ տվյալների այս տարածքում մեզ հայտնի կործանարար երկրաշարժերը տեղի են ունեցել 139, 341, 851, 858, 863, 869, 893, 1319, 1379, 1383, 1679, 1840, 1910, 1931 և 1937 թվականներին: Հատկապես ուշադրության արժանի են Դվինի IX դարի երկրաշարժերը, որոնք մի քանի անգամ հիմնահատակ կործանեցին Հայաստանի հոչակավոր մայրաքաղաքը և տարանտասնյակ հազարավոր մարդկանց կյանք:

---

*ԲԱՐՍԵՂՅԱՆ ԼԱՎՐԵՆՏԻ ԱՇՈՏԻ— Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանության և օգտագործման գլխավոր վարչության պետ։*

դարացի մասնագետները մեկ ամիս աշխատեցին Հայաստանում, և արդեն ավարտում են ամրոցի վերականգնման աշխատանքների նախագծերի կազմումը: Նրանք միաժամանակ ընդառաջ գնալով մեր առաջարկությանը, համաձայնվել են նաև համատեղ վերականգնել Գառնի ամրոցում գտնվող III դարի քաղնիքը:

ԳՖՀ-ի մասնագետները լինելով Հայաստանում և ծանոթանալով աղետի գոտում գտնվող հուշարձանների վիճակին, ցանկություն հայտնեցին համատեղ վերականգնել միջնադարյան Հայաստանի նշանավոր ամրոցներից մեկը՝ Ամբերդը իր դղյակով, որը մեծապես վնասվել էր երկրաշարժից:

Օգտվելով առիթից, ցանկանում ենք մեր երախտագիտության և շնորհակալության խոսքն ուղղել իտալացի մասնագետներին, Բուլղարիայի կուլտուրայի հուշարձանների ազգային ինստիտուտի դիրեկտոր, պրոֆեսոր Տ. Կրիստևին և ԳՖՀ-ի Հեսենի երկրամասի պատմության և կուլտուրայի հուշարձանների պահպանության և վերականգնման կենտրոնի ղեկավար, պրոֆեսոր Գ. Կիզովին: Միաժամանակ նաև շնորհակալություն հայտնել ՅՈՒՆԵՍԿՕ-ի դիրեկցիային, Ֆրանսիայի հայ ճարտարապետների և տեսաբանների միությանը, որոնք հնարավորություն ստեղծեցին իրենց գումարների հաշվին Հայաստանից երեք երիտասարդ ճարտարապետների վերապատրաստման ուղարկել Փարիզի հնադարյան հուշարձանների պատմության և պահպանության բարձրագույն դասընթացների կենտրոն:

Համոզված կարելի է ասել, որ հուշարձանների վերականգնման գործում տարբեր երկրների մասնագետների համագործակցությունը կտա իր ցանկալի արդյունքը: Եվ հեռու չէ այն ժամանակը, երբ վերականգնված յուրաքանչյուր հուշարձանի կողքին որպես երախտագիտության արտահայտություն կկանգնեցվի նաև բարեկամության կոթող, որի վրա կփորագրվեն օգնության ձեռք մեկնած օտարերկրյա պետության ու նրա լավագույն զավակների անունները:

Հայ ժողովուրդը հարատևելու իրավունք ունի: Այդ իրավունքը նա նվաճել է իր ոգու արիությամբ և հայրենասիրությամբ, ասպատակություններին, աղետներին ու արհավիրքներին իր հերոսական դիմադրությամբ, համաշխարհային քաղաքակրթության մեջ ներդրած իր ավանդով: Եվ երբ դարեր շարունակ բնական աղետներից ու արհավիրքներից հետո ավերված Հայաստանը օտարերկրյա զավթիչների կողմից ենթարկվում էր մշտական ասպատակությունների ու ավարառությունների, կրկին թշվառանում ու աղքատանում, կորցնում ձեռք բերածը, ապա այսօր նրա ողբերգությունը բարեկամության և երջանկության նոր կամուրջներ է գցել համայն աշխարհի ժողովուրդների միջև:



# ՄԵԾԱՆՈՒՆ ԳԻՏՆԱԿԱՆԸ

**(ԱԿԱԴԵՄԻԿՈՍ ԳԵՎՈՐԳ ՋԱՀՈՒԿՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)**



ՀԱՅ ԼԵԶՎԱԲԱՆՈՒԹՅԱՆ ԱՆԴԱՍՏԱՆՈՒՄ մեծի համբավ վայելող գիտնականների շարքում իր հաստատուն և ուրույն տեղն ունի Հայկական ԽՍՀ գիտությունների ակադեմիայի Հ. Աճառյանի անվան լեզվի ինստիտուտի դիրեկտոր, ՀԽՍՀ ԳԱ ակադեմիկոս Գևորգ Բեգլարի Ջահուկյանը, որի ծննդյան 70-ամյակը լրացավ վերջերս:

Ջահուկյան գիտնականի համբավը հռչակվեց դեռևս երիտասարդ տարիքում, և նա վերընթաց ուղիով, անշեղ ու համոզիչ քայլերով հասավ գիտության նվիրյալին պատիվ բերող բարձունքների: Դրանում դեր են կատարել նրա բնական տաղանդը, անսահման նվիրվածությունը գիտության իր ընտրած բնագավառին, բազմաթիվ լեզուների իմացությունը և առհասարակ լայն ու հիմնավոր պատրաստվածությունը, զարմանալի աշխատասիրությունը: Գիտնական Ջահուկյանին հատուկ է մի հատկանիշ ևս, որը խոշոր դեր է կատարել նրա գիտական մեծ նվաճումների գործում: Նա կարողանում է գիտության մեջ ավանդականը հմտորեն զուգակցել նորի հետ. դիալեկտիկ մտածող է, միշտ ձգտում է նորի, նորարար է՝ բառիս լայն առումով: Սովորաբար մարդու գիտական համոզմունքները ձևավորվում են որոշ տարիքում, շարունակում են գոյատևել նրա գիտական ողջ գործունեության ընթացքում, և գալիս է մի տարիք, մի շրջան, երբ այդ համոզմունքները որոշ առումով դառնում են կաշկանդող, խանգարող հանգամանքներ իր իսկ՝ գիտնականի առաջընթացին: Գ. Ջահուկյանն այն գիտնականներից է, որոնք համընթաց զարգանում են գիտության հետ, ավելին՝ գնում են առջևից, մեծապես նպաստում նրա զարգացմանը: Եվ յոթանասունամյա Ջահուկյանն այսօր պակաս որոնող ու պակաս նորարար չէ, քան երիտասարդ տարիներին: Այսպիսին է գիտության և նրա իսկական մշակի ուղին:

Հարուստ ու բովանդակալից է Գ. Ջահուկյանի կյանքի անցած ճանապարհը:

Ծնվել է 1920 թ. ապրիլի 1-ին ՀԽՍՀ Կալինինոյի շրջանի Շահնազար գյուղում, աշխատավոր գյուղացու ընտանիքում: 1927—1935 թթ. սովորել է Ստեփանավանի աշխատանքային դպրոցում, այնուհետև ընտանիքի հետ տեղափոխվել է Երևան, ուր և ուսումը շարունակել Շահումյանի անվան միջնակարգ դպրոցում, որն ավարտել է գերազանց առաջադիմությամբ: Բարձրագույն կրթությունն ստացել է Երևանի պետական համալսարանում, որի բանասիրական ֆակուլտետն ավարտել է գերազանցության դիպլոմով: 1924 թ. ընդունվել է Երևանի համալսարանի ասպիրանտուրան ընդհանուր լեզվաբանության գծով, աշակերտել է մեծ լեզվաբան Հ. Աճառյանին: 1942—43 թթ. Գ. Ջահուկյանը ծառայել է խորհրդային բանակում: 1944 թ. վերադառնալով Երևան՝ շարունակում է ասպիրանտական ուսումնառությունը: Այս շրջանից էլ սկսվում է Գ. Ջահուկյանի դասախոսական աշխատանքը համալսարանում և շարունակվում մինչև այժմ: Նա մեծ հարգանք է

վայելում ուսանողության ու դասախոսների շրջանում դասախոսական աշխատանքի իր հմտությամբ, ավանդած գիտելիքների խորությամբ, նյութի բազմակողմանի իմացությամբ: Դասախոսած առարկաների համառոտ թվարկումն իսկ վկայում է նրա, որպես դասախոսի, գիտական հետաքրքրությունների լայն սահմանների մասին: Գ. Ջահուկյանը տարբեր ժամանակներում դասավանդել է ժամանակակից հայոց լեզու, գերմաներեն, լատիներեն, ընդհանուր լեզվաբանություն, հայերենի համեմատական քերականություն, լեզվաբանական ուսմունքների պատմություն, հայ լեզվաբանության պատմություն և այլն: Դասախոսական աշխատանքի հետ միասին Գ. Ջահուկյանը 1948 թվից հաջողությամբ ղեկավարել է Երևանի համալսարանի օտար լեզուների ամբիոնի, իսկ 1957-ից՝ ռոմանագերմանական ամբիոնի աշխատանքները:

Գ. Ջահուկյանի գործունեության տարերքը, այնուամենայնիվ, գիտահետազոտական աշխատանքի բնագավառն է, և մեր մտավորականությունը, գիտական հասարակայնությունը նրան ճանաչում են ամենից առաջ որպես խոշոր գիտնականի: Լեզվաբանության ասպարեզում նրա մեծ վաստակի արժանի գնահատականն են համեմատաբար կարճ ժամանակընթացքում նրան շնորհված գիտական աստիճաններն ու կոչումները. 1947 թ. Գ. Ջահուկյանին շնորհվում է բանասիրական գիտությունների թեկնածուի, 1956-ին՝ դոկտորի աստիճան, 1956-ին՝ պրոֆեսորի, 1965-ին՝ գիտության վաստակավոր գործիչի կոչում: 1968-ին ընտրվում է Հայկական ԽՍՀ ԳԱ թղթակից անդամ, 1974-ին՝ իսկական անդամ:

Նրա աշխատությունների ընդհանուր քանակը պատկառելի թիվ է կազմում. անցնում է 130-ից, որից 30-ը մենագրություններ են: Լայն ու բազմազան են Գ. Ջահուկյանի գիտական հետազոտությունների սահմանները, որոնք ընդգրկում են հայերենագիտության բոլոր բնագավառները, բոլոր գիտաճյուղերը: Ժամանակագրական առումով գիտնականի հետազոտության նյութ է դարձել հայոց լեզուն՝ սկսած նախագրային շրջանից, վերջացրած նրա զարգացման այսօրվա վիճակով: Գ. Ջահուկյանի հետաքրքրության սահմաններն իրենց մեջ ընդգրկում են ընդհանուր լեզվաբանական շատ հարցեր, և քանի որ դրանք նա քննում է լեզվաբանական գիտության արդի մակարդակով, այդ պատճառով էլ Ջահուկյանի անունը դուրս է եկել ոչ միայն Հայաստանի, այլև մեր երկրի սահմաններից և լայն ճանաչման արժանացել ժամանակակից գիտական աշխարհում:

Համառոտակի անդրադառնանք լեզվաբանության տարբեր բնագավառներում Գ. Ջահուկյանի կատարած հետազոտությունների հիմնական արդյունքներին;

Վաղ շրջանում Գ. Ջահուկյանի հետաքրքրությունը սևեռված էր առավելապես հայ լեզվաբանական մտքի պատմության վրա, որին նվիրված էին նրա թեկնածուական և դոկտորական դիսերտացիաները՝ «Քերականական և ուղղագրական աշխատությունները հին և միջնադարյան Հայաստանում» (1954), «Հայ լեզվաբանական միտքը և նոր հայերենի հարցերը XVIII—XIX դարերում» (1955), ինչպես և «Գրաբարի քերականության պատմություն (XVII—XIX դդ.)» (1974) մենագրությունները:

Այս աշխատություններում ուսումնասիրված են հայ լեզվաբանության զարգացման համարյա բոլոր բնագավառները: Առավել ամբողջական ու համակողմանի են ներկայացված հայ լեզվաբանական մտքի սկզբնավորումը և զարգացման վաղ շրջանը: Այս կարգի հետազոտությունները բարձր մակարդակով ստեղծելու համար պետք էր հաղթահարել տարբեր կարգի դժվարություններ, և դա լիովին հաջողվել է գիտնականին: Դրան նպաստել են քերականական աշխատությունների մանրակրկիտ ուսումնասիրությունը, համապատասխան շրջանների հայերենի փաստական նյութի խոր իմացությունը և օտար, մասնավորապես հունական ու լատինական քերականների աշխատությունների մոտիկից ծանոթ լինելը: Ջահուկյանին հաջողվել է հանգամանալից պրպտումների, զուգադրումների միջոցով պարզել ու գնահատել այն նորը, ինքնուրույնը, որ իրենց աշխատություններում առաջ են քաշել ու զարգացրել հայ քերականները: Հետազոտության այս դժվարին ճանապարհին Գ. Ջահուկյանը ոչ միայն խնամքով, այլև անհրաժեշտության դեպքում քննադատաբար օգտագործել է այն արդյունքները, որ թողել են քերականության մեր պատմաբանները: Այս բնագավառում Գ. Ջահուկյանին են պատկանում նոր շատ հարցադրումներ ու լուծումներ, ինչպես և շատ վերանայումներ՝ հիմնավորված անհրաժեշտ փաստական նյութով, գիտական փաստարկումներով: Ի դեպ, հմուտ ու բարեխիղճ գիտնականը հաճախ է խորանում քերականական մտքի ակունքների մեջ և անդրադառնում փիլիսոփայական այն սկզբունքներին, ելակետային այն դրույթներին, որոնք ընկած են այս կամ այն քերականի լեզվաբանական հայացքների հիմքում: Այսպիսի մոտեցումը հնարավորություն է ընձեռում քերականական հայացքների նկարագրության հետ միասին նաև պատճառաբանել դրանք, ցույց տալ դրանց իմացաբանական արմատները:

Ակադեմիկոս Գ. Ջահուկյանի գիտական մեծ վաստակի մեջ պատկառելի տեղ են գրավում հայոց լեզվի պատմությանը և համեմատական քերականությանը վերաբերող ուսումնասիրությունները: Այս հիմնահարցին են նվիրված գիտնականի մի շարք մենագրություններ՝ «Հին հայերենի հոլովման սիստեմը և նրա ծագումը» (1959), «Հայասայի լեզուն և նրա հարաբերությունը հնդեվրոպական լեզուներին» (1964), «Հայոց լեզվի նախագրային շրջանի պատմության ակնարկներ» (1967), «Հայոց լեզվի զարգացումը և կառուցվածքը» (1969), «Հայերենը և հին հնդեվրոպական լեզուները» (1970), «Հայոց լեզվի համեմատական քերականություն» (1982), «Հայոց լեզվի պատմություն. նախագրային շրջան» (1987): «Հին հայերենի հոլովման սիստեմը և նրա ծագումը» մենագրությունը, որ գիտնականի առաջին ծավալուն ուսումնասիրություններից է, հաստատեց նրա հեղինակի գիտական մտքի խորությունը, վերլուծական մտածողության խորաթափանցությունը, առանձին փաստերից ընդհանրացումներ կատարելու, մասնավոր երևույթները լեզվական ամբողջական համակարգի մեջ դիտելու կարողությունը: Սա մենք հատուկ նշում ենք, որովհետև այս հատկանիշները բնորոշ են Ջահուկյան հետազոտողի նաև հետագա բոլոր ուսումնասիրություններին և մեծապես պայմանավորում են նրանց գիտականությունը: Այս մենագրության առաջին բաժնում բնութագրվում են հին հայերենի հոլովման համակարգի յուրահատկությունները, երկրորդում տրվում է նրա պատմահամեմատական բնութագիրը: Փաստական նյութի բազմակողմանի ուսումնասիրությունը Գ. Ջահուկյանին հանգեցրել է հոլովման համակարգի վերադասակարգմանը, բառերի վերաբաշխմանը ըստ հոլովման տիպերի, դրանց օրինաչափությունների գիտական բացահայտմանը: Աշխատության մեջ նորովի են լուսաբանվում հին հայերենի շեշտի յուրահատկությունները, քննվում նրա հնչյունափոխական օրինաչափությունները, մեկնաբանվում դրանց պատմական արմատները: Ավելին, Ջահուկյանը փորձում է որոշել այդ երևույթների ժամանակագրությունը:

Հայոց լեզվի ծագման, կազմավորման հիմնահարցը շատ է զբաղեցրել Գ. Ջահուկյանին: Այդ առնչությամբ նա անդրադարձել է Հայասայի լեզվին, որը գրավել էր հայ (և ոչ միայն հայ) լեզվաբանների ուշադրությունը: Արժե նշել հատկապես Գ. Ղափանցյանի հայտնի մենագրությունը: Գ. Ջահուկյանն այդ հիմնահարցի վերաբերյալ իր առաջին ուսումնասիրությունը հրատարակել է անգլերեն (Չեխոսլովակիայում), ապա խորացնելով ու ընդարձակելով հետազոտության ոլորտը՝ ստեղծել է մի արժեքավոր մենագրություն, որտեղ յուրովի մեկնաբանություն է տալիս Հայասայի լեզվին: Ջահուկյանը անունների և հատկապես տեղանունների ուսումնասիրության հիման վրա հանգում է այն եզրակացության, որ Հայասայի լեզուն պատկանում է հնդեվրոպական լեզուների հին անատոլիական խմբին, չի հանդիսանում հայերենի անմիջական հիմք, այլ նրա մեջ մտնում է որպես լրացուցիչ հնդեվրոպական շերտ:

Հայերենի ծագման ու կազմավորման հիմնահարցի տեսանկյունից կարևոր ուսումնասիրություն է գիտնականի «Հայերենը և հնդեվրոպական լեզուները» մենագրությունը, որտեղ փաստական նյութի հմուտ վերլուծությամբ բացահայտվում են հայերենի և մի շարք հնդեվրոպական հին լեզուների, հատկապես բառական զուգադիպումների տարբեր տիպերը: Այս հարցի քննությունը լույս է սփռում հայերենի և այլ լեզուների ցեղակցության աստիճանի և այդ լեզուներին վերաբերող մի շարք հարցերի լուծման վրա:

Առհասարակ հայոց լեզվի նախագրային շրջանի ուսումնասիրությունը հատուկ կարևորություն է ներկայացնում հայերենի, ուրեմն և հայ ժողովրդի կազմավորման հիմնահարցերի լուծման առումով: Հասկանալի պատճառով հայերենի այդ շրջանի ուսումնասիրությունը կապվում է որոշակի դժվարությունների հետ, որոնց հաղթահարումը պահանջում է հնագույն լեզուների ու ժողովուրդների պատմության խոր իմացություն, հետազոտական հատուկ կարողություններ: Այս հիմնահարցին նվիրված «Հայոց լեզվի նախագրային շրջանի պատմության ակնարկներ» աշխատության մեջ հեղինակը քննում է հայերենի այդ շրջանի պատմության և համեմատական քերականության մի քանի կարևոր հարցեր: Բաղաձայնական համակարգի պատմահամեմատական ուսումնասիրությամբ Գ. Ջահուկյանը բա-

տաբանություն և բառակազմություն» աշխատության մեջ առաջ քաշված հարցերի քննարկումը հիմնված է հեղինակի համընդհանուր լեզվաբանական կաղապարի վրա: Քննում է հայերենի արմատների ձևի ու բովանդակության փոխհարաբերությունները, տալիս արմատների իմաստային վերլուծությունները՝ դրանք խմբավորելով ըստ արմատական բառերի խոսքիմաստային պատկանելության: Բառակազմությանը նվիրված բաժնում հանգամանորեն և իրեն հատուկ խորությամբ քննում է բառակազմական կաղապարները իրենց երկու հիմնական տեսակետներով՝ բառածանցում և բառաբարդում: Ածանցման հիմքերը դասակարգվում են ըստ խոսքիմաստային հատկանիշի, ամեն մեկի համար առանձնացվում են համասեռ և տարասեռ կաղապարներ: Նաև կարևոր են գրքում ներկայացված արմատների ու ածանցների ցանկերը:

Ակադեմիկոս Գ. Ջահուկյանը գիտության հմուտ կազմակերպիչ է: Այս հարցում նպաստում են հատկապես երկու հանգամանք՝ բարեխղճությունն ու պատասխանատվության զգացումը և գիտական հեղինակությունը: Նա զարմանալիորեն կարողանում է բարեխղճորեն կատարել իր պարտականությունները բազմաթիվ գիտական խորհուրդներում, պարբերականների խմբագրական մարմիններում, ժողկրթության մինիստրության ուսումնամեթոդական խորհրդում, տերմինաբանական կոմիտեում, որպես նախագահի տեղակալ, ամենուրեք, ուր նա ստանձնել է որևէ պարտականություն: Ամենադժվարին ու վիճելի հարցերի քննարկման ժամանակ Ջահուկյանի հեղինակավոր խոսքը սովորաբար դիտվում է որպես հարցի ընդունելի լուծում:

Նրա գիտակազմակերպչական ձիրքն ու եռանդը դրսևորվեցին ու դրսևորվում են հատկապես Հ. Աճառյանի անվան լեզվի ինստիտուտում, ուր նա շուրջ երեսուն տարի աշխատում է որպես տնօրեն: Այդ ժամանակաշրջանում ինստիտուտը համարյա եռապատկվել է, և սա սոսկ քանակական ցուցանիշ չէ, այլ բխում է գիտական հաստատությունում նոր հիմնահարցերով զբաղվելու անհրաժեշտությունից՝ պայմանավորված լեզվաբանական գիտության զարգացման ժամանակակից պահանջներով: Գ. Ջահուկյանի ղեկավարության տարիներին, նրա եռանդի շնորհիվ, ավելի բարձրացավ լեզվի ինստիտուտի, որպես հայերենագիտության կենտրոնի, հեղինակությունը: Դրա լավագույն ապացույցներն են հայերենագիտության միջազգային գիտաժողովների կազմակերպումը Երևանում, ըստեղծված գիտական սերտ կապերն ու համագործակցությունը աշխարհի տարբեր երկրների հայագետների հետ: Այս հարցերում մեծ է ակադեմիկոս Ջահուկյանի անձնական գիտական ու կազմակերպչական ներդրումը:

Ակադեմիկոս Գ. Ջահուկյանն այսօր էլ ունի ծրագրեր, մտահղացումներ, որոնք վերաբերում են թե՛ իր իսկ գիտական գործունեությանը, թե՛ ինստիտուտի հետագա աշխատանքներին: Նա լի է եռանդով, ավյունով՝ իրականացնելու դրանք:

**ՍԵՐԳԵՅ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր**

*«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 7, 1990 թ.: Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն:*

*Հանձնվել է շարվելու 14.06.1990 թ.: Ստորագրվել է տպագրելու 09.08.1990 թ.: Ֆորմատ 70×108 1/16: Թուղթ՝ տպագրական № 2: Օֆսեթ տպագրություն: 8,4 պայմանական տպագրական մամուլ: 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ: Տպաքանակը՝ 7832: Պատվեր՝ 658: Գինը՝ 25 կոպ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.